ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ 1969

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении

# Բովանդակություն

Содержание








Մ. Ս. ՄԵԼՔՈՆՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի քարտուղար


# ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՈՊԵՐԱՏԻՎ ՊԼԱՆԻ ԻՐԱԳՈՐԾՈՒՄԸ

Սովետական ժողովուրդը, սոցիալիստական հզոր ճամբարի աշխատավորները, աշխարհի բոլոր երկրների առաջադիմական և հեղափոխական ուժերը 1967 թվականի նոյեմբերին մեծ հանդիսավորությամբ տոնեցին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հիսունամյա պանծալի հոբելյանը։ Մեր երկրի բոլոր մարդիկ, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը դիտում են որպես մարդկության պատմության մեջ տեղի ունեցած ամենախոշոր իրադարձությունը, նոր դարագլխի սկիզբը։

Մեր հայրենիքի աշխատավորությունը Վ. Ի. Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ իր կեսդարյա պայքարի ու անձնվեր աշխատանքի շնորհիվ վերափոխեց ու վերակառուցեց ագրարային հետամնաց երկիրը, այն դարձնելով զարգացած արդյունաբերության և մեքենայացված գյուղատնտեսության, առաջավոր գիտության ու տեխնիկայի երկիր։

Սովետական իշխանության տարիներին իրականացված սոցիալ-տնտեսական վիթխարի վերափոխումների մեջ կարևոր ու վճռական տեղ է գրավում մեր երկրի գյուղատնտեսության սոցիալիստական հիմունքներով վերակառուցումը։ Դա ամենից բարդ ու դժվար խնդիրն էր պրոլետարիատի կողմից իշխանությունը գրավելուց հետո։

Հայտնի է, որ նախքան հեղափոխությունը մեր երկիրը առավելապես ագրարային էր և բնակչության գերակշռող մասը գյուղացիությունն էր։

Ծանր է եղել աշխատավոր գյուղացիության վիճակը ցարական Ռուսաստանում։ Զրկված լինելով ապրուստի գլխավոր աղբյուրից՝ հողից, նա միշտ եղել է զրկանքի ու թշվառության մեջ, ենթարկվել բռնության ու կեղեքման։ 1905 թվականին, 10,5 միլիոն գյուղացիական տնտեսություններ ունեին 75 միլիոն դեսյատին հող, իսկ 30 հազար խոշոր կալվածատերեր՝ 70 միլիոն դեսյատին։ Կալվածատերերին ու կուլակներին էր պատկանում գյուղատնտեսական գործիքների և քաշող անասունների հիմնական մասը։ Վ. Ի. Լենինն իր՝ «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում» հռչակավոր աշխատությունում նշում է, որ Օրյոլի նահանգի Ելեցկի և Տրուբչևսկի գավառների գյուղացիական տնտեսությունների 22,9 տոկոսը ձիազուրկ են եղել, իսկ 33,5 տո-

կոսն ունեցել են միայն մեկ ձի։ Վիճակը գրեթե նույնն է եղել ռուսական միապետության բոլոր նահանգներում ու երկրամասերում։ Արորն ու գութանը, մանգաղն ու գերանդին են հանդիսացել հողի մշակման ու բերքահավաքի գործիքները։ Հողի պակասը աշխատավոր գյուղացիներին ստիպել է ստրկական պայմաններով վարձակալել կալվածատերերի հողը, որի համար ամեն տարի վճարել են 500 միլիոն ռուբլի։

Աշխատավոր գյուղացիությունը հողի և ազատության համար անդադար պայքար է մղել ցարական դաժան կարգերի դեմ։ Այդ համառ մաքառումը հաղթանակով պսակվեց միայն բանվոր դասակարգի հետ սերտ դաշինքի և բոլշևիկյան կուսակցության դրոշի ներքո նրա համախմբման շնորհիվ։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից անմիջապես հետո ամենից շատ շահեց մեր երկրի գյուղացիությունը։ Հեղափոխության առաջին իսկ օրերին Սովետների համառուսաստանյան II համագումարը Վ. Ի. Լենինի առաջարկով դեկրետ ընդունեց հողի ազգայնացման մասին, ըստ որի վերացվեցին հողի մասնավոր սեփականությունը և առուծախը։ Ավելի քան 150 միլիոն հեկտար հողատարածություն անվճար տրվեց գյուղացիներին։ Հեղափոխությունը գյուղացիությանը փրկեց մշակության համար կալվածատերերից վարձակալությամբ հողատարածություններ վերցնելուց և հողամասեր գնելուց, որը տարեկան կազմում էր ավելի քան 700 մլն ռուբլի (ոսկով)։

Սակայն հեղափոխությունից հետո էլ գյուղացիությունը շարունակում էր վարել անհատական, մասնավոր տնտեսություն։ Տնտեսական բնույթով գյուղացիությունը մնում էր տատանվող. նա, մի կողմից, որպես աշխատավոր, ձգտում էր սոցիալիզմին, իսկ մյուս կողմից, որպես մանր սեփականատեր՝ կապիտալիզմին։ Սովետական գյուղացիությանը այդ երկակի վիճակից սոցիալիստական ուղու վրա դնելու բարդ խնդիրը իրականացվեց Վ. Ի. Լենինի, ամբողջ կուսակցության կողմից պրոլետարիատի և գյուղացիության ամուր դաշինքի ստեղծման շնորհիվ, որը հնարավորություն տվեց գյուղացիությանը հետզհետե ձերբազերծվել հին աշխարհի հոգեբանությունից և առաջ ընթանալ բանվոր դասակարգի ղեկավարությամբ։

Կազմակերպական և գաղափարական-քաղաքական հսկայական աշխատանք պահանջվեց կուսակցությունից, որպեսզի սոցիալիզմի կառուցման լենինյան գաղափարները մատչելի դառնային ո՛չ միայն բանվոր դասակարգին, այլև գյուղացիական լայն մասսաներին։ Անհրաժեշտ էր հաղթահարել մանր սեփականատիրական դարավոր սովորությունը գյուղացու գործելակերպում, նրան պարզաբանել նոր կյանքի առավելությունները։ Գյուղացի-սեփականատիրոջ հոգեբանության մեջ կատարվեց այդ շրջադարձը։ Միլիոնավոր գյուղացիության, դեպի սոցիալիզմ կատարած շրջադարձի մեջ ակնեբևաբար դրսևորվեցին մարքս-լենինյան ուսմունքի վերափոխիչ մեծ ուժը, մեր կուսակցության ունակությունը՝ համոզելու մասսաներին և նրանց տանելու իր ետևից։

Անհրաժեշտ էր 25 միլիոն մանր ու փոշիացած մասնավոր գյուղացիական տնտեսությունները, որոնք ընդգրկում էին երկրի բնակչության մոտ 80 տոկոսը, փոխադրել սոցիալիստական ուղու վրա։ Պատմական այդ վիթխարի խնդրի իրականացման հիմքում դրվեց Վ. Ի. Լենինի կոոպերատիվ պլանը։ Դրա էությունը կայանում է նրանում, որ պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում երկրում ստեղծվող հզոր արդյունաբերության բազայի հիման վրա, որը ի վիճակի է մեքենայացնել և էլեկտրիֆիկացնել գյուղատնտեսությունը, սոցիալիստական շինարարության ոլորտն ընդգրկել գյուղացիությանը՝ կոոպերատիվ հիմունքներով։



Կոոպերացումը, սկզբում՝ սպառողական, մատակարարող-առաքող, ապա հասարակ արտադրական միավորումների և, վերջապես, գյուղատնտեսական արտելների ձևով, պետք է մատչելի, համոզիչ կերպով ցույց տային խոշոր կոլեկտիվ տնտեսության առավելությունները։ Վ. Ի. Լենինը գիտականորեն ձևակերպեց կոոպերատիվ պլանի հիմնական դրույթները, բազմակողմանիորեն մշակեց գյուղատնտեսությունը սոցիալիստական ուղու վրա փոխադրելու միջոցներն ու մեթոդները։ Նա հատուկ ուշադրություն դարձրեց կոոպերացման կամովիության և հաջորդականության, գյուղում սոցիալիստական շինարարության նկատմամբ բանվոր դասակարգի ամենօրյա օժանդակության անհրաժեշտության վրա։

Կոմունիստական կուսակցությունը կենսագործեց լենինյան կոոպերատիվ պլանը։ Նրա ղեկավարությամբ գյուղատնտեսությունը սոցիալիստական ուղու վրա փոխադրելն իրականացվեց երկու էտապով. առաջին էտապում (1917—1929 թթ.) հիմքեր ստեղծվեցին մասսայական արտադրական կոոպերացման համար, երկրորդ էտապում (1929—1934 թթ.)՝ անցկացվեց համատարած կոլեկտիվացում, որի հաջողությունները կանխորոշվեցին նրա նախապատրաստական շրջանում. կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը, քաղաքական-մասսայական աշխատանքին զուգընթաց, օգնեցին աշխատավոր գյուղացիությանը կազմակերպելու արտադրական միավորումներ, արտելներ, որոնց հատկացվեցին գյուղատնտեսական տեխնիկա և վարկեր։ Գյուղացիությունը աստիճանաբար գիտակցեց հողի կոլեկտիվ մեքենայացված մշակության ակնհայտ առավելությունները և սկսեց կամովին ընդգրկվել տարբեր ձևի կոոպերատիվներում։ Եթե 1918 թվականին երկրում կար ընդամենը 1500 գյուղացիական արտադրական կոոպերատիվ, ապա 1925 թվականին դրանց թիվը հասավ մոտ 22 հազարի, իսկ 1928 թվականին՝ 33,300-ի։ Այսպիսով, գյուղացիությունը նախապատրաստված էր համատարած կոլեկտիվացմանը։ Արդեն 1932 թվականի սկզբներին կոլտնտեսություններում ընդգրկված էր գյուղացիական ընտանիքների 61,5 տոկոսը։ Կոլտնտեսություններին էր պատկանում երկրի ցանքատարածությունների 77,7 տոկոսը։ Հատկանշական է, որ այդ տարում մթերված հացահատիկի 75 տոկոսը հանձնել էին կոլտնտեսություններն ու սովխոզները։

1934 թվականին երկրում համատարած կոլեկտիվացումը հիմնականում ավարտված էր։ ՍՍՀՄ գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխումը հանդիպեց դասակարգային թշնամու, առաջին հերթին՝ կուլակության համառ դիմադրությանը։ Մեր երկրի այդ վերջին շահագործող դասակարգը դիմում էր պայքարի ամեն տեսակ դաժան ու նենգ միջոցների, սկսած հակասովետական պրոպագանդայից ու դիվերսիաներից՝ վերջացրած գյուղական ակտիվիստներին տեռորի ենթարկելով։ Համատարած կոլեկտիվացման ընթացքում կուլակությունը, որպես դասակարգ, լիկվիդացվեց։

Կոլտնտեսային կարգի հաղթանակը ՍՍՀՄ-ում նշանակում էր երկրի գյուղատնտեսության արմատական վերափոխում։ Հսկայական թվով մանր սեփականատերերի փոխարեն երկրում ստեղծվեցին խոշոր, բարձր արտադրողական տնտեսություններ՝ կոլտնտեսություններ ու սովխոզներ։

Այժմ Սովետական Միությունում յուրաքանչյուր կոլտնտեսություն հանդիսանում է գյուղատնտեսական խոշոր ձեռնարկություն, որն ընդգրկում է

միջին հաշվով 420 գյուղացիական տնտեսություն, ունի ավելի քան 6 հազար հեկտար օգտագործելի հողատարածություն (որից մոտ 3 հազար հեկտար վարելահող), 40 տրակտոր (15 ձիաուժանոց), ավելի քան 1000 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, մեծ թվով ոչխարներ, խոզեր և թռչուններ։ Կոլտնտեսությունների և սովխոզների տրակտորային պարկը 1928 թվականի 27 հազարից 1965 թվականին հասավ 1 միլիոն 650 հազարի, հացահատիկային կոմբայնների թիվը համապատասխանաբար՝ 2 հազարից 520 հազարի, բեռնատար ավտոմեքենաներինը՝ 700-ից մինչև 982 հազարի։ Եթե 1920 թվականին մեքենայական քաշող ուժին գյուղատնտեսության մեջ բաժին էր ընկնում աշխատանքների 28 տոկոսը, ապա ներկայումս այն հասնում է համարյա 100 տոկոսի։ Գյուղատնտեսության արտադրության մեքենայացման և էլեկտրիֆիկացման շնորհիվ անհամեմատ թեթևացել է գյուղացու աշխատանքը։ Գյուղատնտեսության մեջ աշխատանքն այժմ իր տեխնիկազինվածությամբ դառնում է արդյունաբերության մեջ կատարվող աշխատանքի տարատեսակը։ Սոցիալիստական գյուղատնտեսությանը ներկայումս սպասարկում են մեծ թվով գիտահետազոտական ինստիտուտներ, փորձակայաններ և լաբորատորիաներ, որոնցում աշխատում են տասնյակ հազարավոր գիտնականներ ու մասնագետներ։ Ցարական Ռուսաստանում նրանց թիվը հազիվ հասնում էր 250-ի։ Իսկ այսօր, Սովետական Միությունում, գյուղատնտեսական արտադրության մեջ անմիջականորեն աշխատում են ավելի քան 500 հազար գյուղատնտեսության մասնագետներ՝ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ։ Կոլտնտեսային կարգի հաղթանակով մեր երկրում վերջ տրվեց գյուղի աղքատությանը և կուլտուրական հետամնացությանը։

Գյուղատնտեսությունը հնարավորություն ստացավ զարգանալու ընդլայնված վերարտադրության սոցիալիստական օրենքներին համապատասխան, որով գյուղում բոլոր օբյեկտիվ հիմքերը ստեղծվեցին ո՛չ միայն արտադրության զարգացման, այլև մարդկանց հոգևոր և կուլտուրական պահանջմունքների բավարարման համար։

Մեր երկիրը գործնականում ցույց տվեց, որ գյուղացիության կոլեկտիվացումը ամենահուսալի և հաստատ ուղին է գյուղատնտեսության զարգացման համար։ Այն օրինակ հանդիսացավ սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական կուսակցություններին իրենց երկրներում գյուղատնտեսությունը սոցիալիստական սկզբունքներով վերակառուցելու համար։

Կոլտնտեսությունների կենսունակության հզոր ուժը առանձնապես դրսևորվեց Հայրենական մեծ պատերազմի տարիներին։ Երկրի կոլտնտեսությունները և սովխոզները առանց ընդհատումների ռազմաճակատը և թիկունքն ապահովեցին պարենամթերքով, իսկ արդյունաբերությունը՝ հումքով։

Կոլտնտեսային կարգն իր կենսունակության հզոր ուժը ցուցադրեց նաև հետպատերազմյան տարիներին, երբ սովետական ժողովրդի առջև խնդիր դրվեց կարճ ժամանակամիջոցում բուժելու պատերազմի հասցրած վերքերը, վերականգնելու քայքայված տնտեսությունները։ Գերմանա-ֆաշիստական զավթիչները հսկայական վնաս հասցրին գյուղատնտեսական արտադրությանը։ Թալանվել ու քայքայվել էին 98 հազար կոլտնտեսություն, 1876 սովխոզ, 2890 մեքենատրակտորային կայան։ Ֆաշիստների կողմից ոչնչացվել և տարվել էին 17 միլիոն գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 7 միլիոն ձի, միլիոնավոր ոչխարներ և խոզեր։ Հիտլերականները ոչնչացրել և հրդեհել էին մոտ 70 հազար գյուղ և բնակավայր։



Մասնավոր սեփականության պայմաններում այդօրինակ ավերածությունները, անշուշտ, կարող էին հասցնել գյուղատնտեսության կատաստրոֆիկ անկման։ Սակայն այդ տեղի չունեցավ կոլտնտեսային մեր գյուղերում։ Մի քանի տարվա ընթացքում իսպառ վերացվեցին պատերազմի ծանր հետևանքները և ապահովվեց գյուղատնտեսության արտադրության հետագա հզոր զարգացումը։

Կոմունիստական կուսակցությունը միշտ չթուլացող ուշադրությամբ ղեկավարել է գյուղատնտեսության զարգացումը։ Մեր կուսակցության համագումարները և պլենումներն իրենց որոշումներում սահմանել են գյուղատնտեսության հետագա զարգացման ձևերն ու մեթոդները, միջոցառումներ մշակել կոլտնտեսությունների և սովխոզների նյութատեխնիկական բազայի ամրապնդման և ընդարձակման համար։

Գյուղատնտեսության արտադրության բազայի ընդարձակման, նրա հետագա զարգացման գործում խոշոր դեր խաղացին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան (1953 թ.) և մարտյան (1965 թ.) պլենումների որոշումները։ Դրանց կենսագործումը հնարավորություն տվեց երկրի գյուղատնտեսությունը դուրս բերելու շեշտակի վերելքի նոր, լայն ճանապարհ։ Բավական է նշել, որ երկրի կոլտնտեսությունների դրամական եկամուտները 1967 թվականին 1960 թվականի մակարդակը գերազանցեցին ավելի քան 6 անգամ, կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերն այդ նույն ժամանակամիջոցում ավելացան 7 անգամ, իսկ համախառն եկամուտը՝ 1967 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելացավ մոտ 3 անգամ։

Կոլտնտեսություններն իրենց արտադրական գործունեության բարելավման և եկամուտների ավելացման շնորհիվ հնարավորություն ստացան ավելի շատ հիմնական միջոցներ տրամադրելու արտադրական բազայի ամրապնդման համար, որը, ինչպես հայտնի է, հանդիսանում է գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման հիմքը։ Միայն վերջին 3 տարում այդ նպատակի համար առանձնացվող միջոցներն ավելացան 40 տոկոսով, իսկ 1958 թվականի համեմատությամբ՝ 2,5 անգամ։

Կապիտալ միջոցների ներդրումների ավելացման շնորհիվ տարեցտարի հզորանում է կոլտնտեսությունների և սովխոզների մեքենատրակտորային պարկը, որտեղ 1968 թվականի սկզբին հաշվվում էր 1 միլիոն 740 հազար տրակտոր (ֆիզիկական), 553 հազար հացահատիկային կոմբայն, ավելի քան 1 միլիոն բեռնատար ավտոմեքենա և տասնյակ միլիոնավոր այլ գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ։ Առանձնապես արագ թափով է ավելանում հանրային անասունների գլխաքանակը և բարձրանում նրանց մթերատվությունը։ Միայն վերջին երեք տարվա ընթացքում երկրի կոլտնտեսություններում և սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների թիվն ավելացել է 6,7 միլիոն գլխով, ընդ որում կովերինը՝ 1,8 միլիոն, իսկ ոչխարներինը՝ 10,3 միլիոն գլխով։

Սոցիալիստական շինարարության ողջ ժամանակաշրջանում Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը կարևոր նշանակություն են տվել սովխոզների կազմակերպմանը և նրանց արտադրական-տնտեսական գործունեության բարելավմանը։

Սկզբնական շրջանում սովխոզներ ստեղծվեցին ազգայնացված և այլ հողատարածությունների բազայի վրա։ Հետագայում, հատկապես վերջին

տասնամյակում, գյուղատնտեսության ինտենսիֆիկացման նպատակով, այդ-
պիսիք կազմակերպվեցին նոր ոռոգվող հողատարածությունների վրա։ Այս-
պես, 1965 թվականին եղած 5134-ի փոխարեն, 1967 թվականին սովխոզների
թիվը հասավ 12800-ի, որոնք ունեն 292 միլիոն հեկտար գյուղատնտեսական
օգտագործելի հողատարածություն։ Անցյալ տարի սովխոզները կատարեցին
90 միլիոն հեկտար ցանք։ Դա կազմում է երկրի ամբողջ ցանքատարածու-
թյունների ավելի քան 43 տոկոսը։ Այժմ սովխոզներն ունեն 25,7 միլիոն խո-
շոր և 56,4 միլիոն մանր եղջերավոր անասուն։

Արտադրվող գյուղատնտեսական մթերքների ընդհանուր ծավալում հե-
տըզհետե ավելանում է սովխոզների արտադրանքի տեսակարար կշիռը։ Երկ-
րում գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի մոտ 40 տո-
կոսը տալիս են սովխոզները։

Գյուղատնտեսության արտադրության զարգացմանը զուգընթաց բարե-
լավվում են կոլտնտեսականների և սովխոզների բանվորների նյութական ու
կենցաղային պայմանները։ Կոլտնտեսականների մեկ աշխատանքային օրվա
վարձատրության չափը 1967 թվականին, 1953 թվականի համեմատությամբ,
ավելացավ երկու անգամ։ Սովխոզների բանվորների միջին ամսական աշխա-
տավարձը 1960 թ. համեմատությամբ, 1967 թ. ավելացավ 55 տոկոսով։

Բնակչության կենսամակարդակի և նյութական բարեկեցության բարձ-
րացման անառարկելի և կարևոր ցուցանիշ են ռեալ եկամուտները։ Սովետա-
կան իշխանության տարիներին մեր երկրի գյուղացիության ռեալ եկամուտ-
ներն այն չափերով են ավելացել, որի մասին նույնիսկ չի կարող երազել կա-
պիտալիստական ոչ մի երկրի աշխատավոր գյուղացի։ 1967 թ. գյուղատնտե-
սության մեջ յուրաքանչյուր աշխատողի ռեալ եկամուտը, նախահեղափոխա-
կան Ռուսաստանի համեմատությամբ, առանց հարկերի և այլ վճարումների,
ավելացել է 7,5 անգամ։ Եկամուտների նման աճը հիմնականում տեղի է ունե-
ցել հանրային արտադրության հաշվին։ Ռեալ եկամուտների ավելացումը
միաժամանակ տեղի է ունեցել ի հաշիվ գյուղացիությունից գանձվող հարկերի
կրճատման, գյուղատնտեսական մթերքների գների կարգավորման, անվճար
ուսման և բուժման, թոշակների և այլ վճարումների հաշվին։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը և սովետա-
կան կառավարությունը գյուղի աշխատավորության նկատմամբ ամենօրյա
հոգատարություն են ցուցաբերում ո՛չ միայն նրանց նյութական բարեկեցու-
թյան, այլև կուլտուր-կենցաղային մակարդակի բարձրացման համար։
խնդիր է դրված մոտ ապագայում վերացնելու գյուղի և քաղաքի տարբերու-
թյունը այդ բնագավառում։ Այդ նպատակին հատկացվում են հսկայական
միջոցներ։ Դրա վառ վկայությունն այն է, որ 1914 թվականին գյուղում գոր-
ծող 109,1 հազար դպրոցների թիվը հասել է մոտ 170 հազարի։ Ընդ որում
միջնակարգ դպրոցների թիվը 104-ից հասել է մոտ 17 հազարի, իսկ սովո-
րողներինը՝ 7,4 միլիոնից՝ 24,2 միլիոնի։ Եթե 1913 թվականին գյուղական
վայրերում հաշվվում էր ընդամենը 100 ակումբ, ապա ներկայումս ոչ մի
գյուղ կամ բնակավայր չկա, որ չունենա իր ակումբը։

Գյուղական գրադարանների թիվը նույն ժամանակամիջոցում 11 հազա-
րից հասել է 90 հազարի։ 1913 թվականին գործող 140 կինոկետերի փոխա-
րեն ներկայումս գյուղական բնակավայրերում գործում են ավելի քան 123
հազար կինոկետեր և մոտ 13 հազար շարժական կինոսարքեր։

Իր գոյության առաջին տարիներից սովետական կառավարությունը հոգ-



տարավ ամբողջ բնակչության առողջության համար, այն համարելով համա-
պետական կարևոր գործ։ Ներկայումս գյուղական բնակչության բուժսպա-
սարկման համար ստեղծված է հիվանդանոցների, ծննդատների և բուժկա-
յանների լայն ցանց։

Գյուղական բնակչության կենսամակարդակի բարձրացման վառ ապա-
ցույցն է նաև պետական և կոոպերատիվ առևտրի ապրանքաշրջանառության
աճը։ Եթե 1924 թվականին գյուղական վայրերում ապրանքաշրջանառությու-
նը կազմում էր 74 միլիոն ռուբլի, ապա այն 1967 թվականին հասավ ավելի
քան 27 միլիարդ ռուբլու։ Մեկ շնչի հաշվով ապրանքաշրջանառությունը 1924
թվականի 6,9 ռուբլուց 1965 թվականին կազմեց 228,3 ռուբլի։ Գյուղական
վայրերում ընդլայնվում է նաև հասարակական սննդի ցանցը։ Տարեցտարի
ավելանում է կուլտուր-կենցաղային ապրանքների վաճառքը։ Ներկայումս
գյուղում տարեկան վաճառվում է ավելի քան 230 հազար սառնարան, 900
հազար հեռուստացույց, 1,9 միլիոն ռադիոընդունիչ, 7,7 միլիոն ժամացույց,
700 հազար կարի մեքենա և մեծ քանակությամբ այլ ապրանքներ։

Հիմնովին վերափոխվել է գյուղերի տեսքը։ Կոլտնտեսականները և սով-
խոզների բանվորները կառուցել և կառուցում են միլիոնավոր նոր բարեկարգ
առանձնատներ։ Սովխոզներում և պետական այլ գյուղատնտեսական ձեռ-
նարկություններում մեծ քանակությամբ բնակելի տներ են կառուցվում պե-
տական կապիտալ ներդրումների հաշվին։ Բարեկարգվել և գեղեցիկ տեսք են
ընդունել գյուղական բոլոր բնակավայրերը, նրանց մեծ մասն ունեն կեն-
ցաղային սպասարկման անհրաժեշտ տաղավարներ։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIII համա-
գումարի դիրեկտիվներով նախատեսվում է ընթացիկ հնգամյակի վերջին՝
1970 թվականին գյուղատնտեսության մեջ աշխատողների եկամուտը ընդ-
հուպ մոտեցնել բանվորների և ծառայողների եկամուտներին։ Այսպիսով մի
նոր, վճռական քայլ կկատարվի գյուղի և քաղաքի բնակչության կենսամա-
կարդակների մոտեցման, գյուղի և քաղաքի միջև եղած տարբերությունների
վերացման ուղղությամբ։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հոկտեմբերյան (1968 թ.) պլենումը,
քննարկելով մեր երկրում գյուղատնտեսության հետագա զարգացման հար-
ցը և ըստ արժանվույն գնահատելով գյուղատնտեսության արտադրության
բնագավառում ձեռք բերած հաջողությունները, միաժամանակ նշեց, որ երկ-
րում մի շարք մթերքների արտադրության աճի ներկա մակարդակը չի համա-
պատասխանում հնգամյա պլանով սահմանված առաջադրանքներին։ ՍՄԿԿ
Կենտկոմի հոկտեմբերյան պլենումը մշակեց գյուղատնտեսության արտա-
դրության նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդման, նրա հա-
մակողմանի քիմիացման, հողերի մելիորացման և գյուղատնտեսության ար-
տադրության կոմպլեքսային մեքենայացման մեծ ծրագիր, որի կենսագոր-
ծումը մի նոր, հզոր առաջընթաց քայլ կլինի մեր երկրում պարենամթերքների
առատության ստեղծման և կոմունիստական հասարակարգի կառուցման
գործում։

Սովետական իշխանության տարիներին անճանաչելիորեն փոխվել է
նաև Հայաստանի գյուղը։ Գյուղատնտեսության արտադրությունն արմատա-
կանորեն վերափոխվել է, ստեղծվել են սոցիալիստական տիպի խոշոր տըն-
տեսություններ, որոնք զինված են առաջնակարգ տեխնիկայով և մի շարք
հնարավորություններ ունեն գյուղատնտեսական մթերքների արտադրությու-

նը մեծ չափերով ավելացնելու համար։ Նախասովետական Հայաստանում
գյուղատնտեսությունը իրենից ներկայացնում էր մանր, փոշիացած, հետա-
մնաց նատուրալ տնտեսություն։ Գյուղատնտեսության վարման կուլտուրայի
մասին կարելի է դատել հետևյալ փաստերով։ Արտադրության հիմնական
միջոցներն էին գութանը և չութը (այն էլ ոչ բավարար քանակությամբ)։ 1913
թվականին յուրաքանչյուր 100 գյուղացիական ընտանիքի ընկնում էր 2,5
գութան և 32 չութ։ Արտադրական և փոխադրման աշխատանքները կատար-
վում էին բացառապես կենդանի քաշող ուժի միջոցով, հանքային պարար-
տանյութեր բոլորովին չէին օգտագործվում, իսկ գոմաղբը օգտագործվում էր
որպես վառելիք։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը չափազանց ցածր
էր։ 1909—1913 թվականներին տարեկան միջին բերքատվությունը եղել է
հեկտարից հացահատիկային կուլտուրաներինը՝ 5,8 ցենտներ, բամբակինը՝
8,8 ցենտներ։ Գյուղատնտեսության վիճակը վատացավ առաջին համաշ-
խարհային պատերազմի և, մասնավորապես, դաշնակների անփառունակ
տիրապետության տարիներին (1918—1920 թթ.)։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից անմիջապես հետո
գործնական միջոցներ ձեռնարկվեցին ամբողջ ժողովրդական տնտեսության
և, մասնավորապես, գյուղատնտեսության վիճակի բարելավման համար։
1920 թվականի դեկտեմբերին Հայաստանում դեկրետ ընդունվեց հողի ազ-
գայնացման մասին և 2—3 տարվա ընթացքում մոտ 1,5 միլիոն հեկտար
հողատարածություն բաժանվեց գյուղացիներին։ 1929 թվականից Հայաս-
տանում սկսվեց գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխումը։
Հանրապետության գյուղի աշխատավորները կոմունիստական կուսակցու-
թյան ղեկավարությամբ հաջողությամբ իրականացրին լենինյան կոոպե-
րատիվ պլանը և 175 հազար մանր ու փոշիացած մենատնտեսները միավոր-
վեցին 1074 կոլտնտեսություններում։ Արդեն 1936 թվականին գյուղացիա-
կան ընտանիքների մոտ 90 տոկոսը և ցանքատարածությունների 93 տոկոսը
կենտրոնացված էր կոլտնտեսություններում և սովխոզներում։ Արագ թափով
ծավալվեցին հողերի ոռոգման աշխատանքները, որի շնորհիվ զգալիորեն
ընդարձակվեց այն։ 1913 թվականի 97 հազար հեկտար ջրովի հողերի դիմաց
1967 թվականին ունեինք 274 հազար հեկտար։

Խոշոր միջոցներ են հատկացվել գյուղատնտեսության մեքենայացման
նպատակներին։ 1928 թվականին հանրապետությունում հաշվվում էր ընդա-
մենը 166 տրակտոր՝ 1800 ձիաուժ հզորությամբ, իսկ 1968 թվականին կոլտն-
տեսություններում և սովխոզներում աշխատում էին 15 հազար տրակտոր (15
ձիաուժանոց), ավելի քան 2000 հացահատիկային և սիլոսի կոմբայններ,
8 հազար բեռնատար ավտոմեքենաներ, գյուղատնտեսական հազարավոր
այլ մեքենաներ ու գործիքներ։ Ներկայումս կոլտնտեսություններում և սով-
խոզներում վարի աշխատանքները մեքենայացված են 97 տոկոսով, հացա-
հատիկի ցանքինը՝ 86 և բերքահավաքինը՝ 80 տոկոսով։ Հանրապետության
բոլոր կոլտնտեսությունները և սովխոզները էլեկտրիֆիկացված են։ Մի-
այն 1967 թ. հանրային դաշտերի պարարտացման համար օգտագործվեց
185 հազար տոննա հանքային պարարտանյութ։

Սովետական իշխանության տարիներին, մինչև 1968 թվականը, հան-
րապետության գյուղատնտեսության մեջ ներդրվել է մոտ 1 միլիարդ ռուբլի
պետական կապիտալ միջոցներ։



Ներկայումս կոլտնտեսությունների և սովխոզների արտադրության մեջ
աշխատում են բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մոտ 5 հազար գյու-
ղատնտեսական մասնագետներ։ Հայաստանում գործող գյուղատնտեսական
գիտահետազոտական ինստիտուտներում, լաբորատորիաներում և փորձա-
կայաններում աշխատում են ավելի քան 550 գիտնականներ։ Հանրապետու-
թյան գյուղատնտեսական արտադրության սոցիալ-տնտեսական վերակա-
ռուցումը հանգեցրել է արտադրության զգալի բարձրացման։ Հացահատիկա-
յին կուլտուրաների բերքատվությունը ներկայումս, նախասովետական ժա-
մանակաշրջանի համեմատությամբ, ավելացել է 2 անգամ, կարտոֆիլինը՝
1,6, բանջարեղենինը՝ 1,8 անգամ։ Սովետական իշխանության տարիներին
գյուղատնտեսության արտադրության մեջ ներդրվեցին մինչև այդ չմշակվող
այնպիսի բարձր եկամտաբեր կուլտուրաներ, ինչպիսիք են ծխախոտը, շա-
քարի ճակնդեղը և խորդենին, որոնք մեծ չափերով ավելացրին գյուղատըն-
տեսության եկամտաբերությունը։ Կոլտնտեսային կարգի հաղթանակից հե-
տո ակներև արագ զարգացավ հանրային անասնաբուծությունը։ 1919 թվա-
կանի համեմատությամբ, 1968 թվականին հանրապետությունում խոշոր եղ-
ջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 2,4 անգամ, մանր եղջե-
րավոր անասուններինը՝ 4,7, խոզերինը՝ 15 և թռչուններինը՝ 7 անգամ։

Խաղողագործությամբ և պտղաբուծությամբ Հայաստանում զբաղվել են
հնագույն ժամանակներից, սակայն դրանք արագ թափով զարգացան միայն
սովետական իշխանության տարիներին։ Հանրապետության խաղողի և պըտ-
ղատու այգիների տարածությունը հասել է մոտ 75 հազար հեկտարի, կամ
1913 թվականի համեմատությամբ ավելացել է 6,1 և 1919 թվականի համե-
մատությամբ՝ 12 անգամ։

Սովետական Հայաստանում առավելապես նոր իրացված և պակաս ար-
դյունավետ օգտագործվող հողատարածությունների բազայի վրա կազմա-
կերպվել են մասնագիտացված խոշոր սովխոզներ՝ խաղողի, պտուղների,
բանջարեղենի և անասնաբուծական մթերքների արտադրության համար։
Հանրային արտադրության ծավալում դրանց տեսակարար կշիռը կազմում է
մոտ 40 տոկոս։

Մեր հանրապետության գյուղատնտեսության արտադրության համա-
խառն արտադրանքը 1967 թվականին կազմեց մոտ 386 միլիոն ռուբլի, 1913
թվականի 68 միլիոն ռուբլու դիմաց (համադրելի գներով), կամ աճը՝ մոտ
5,5 անգամ։ Շնորհիվ գյուղատնտեսության արտադրության տեխնիկական
հագեցվածության, աշխատանքի արտադրողականությունն ավելացել է մոտ
7 անգամ։

Գյուղատնտեսական արտադրության աճը և մթերքների արտադրության
ավելացումը նյութական բազա հանդիսացան գյուղացիության կուլտուրա-
կան մակարդակի բարձրացման համար։ Ներկայումս գյուղում լուծվում է
ընդհանուր միջնակարգ կրթության խնդիրը։ Անճանաչելիորեն փոխվել է հայ
գյուղի պատկերը։ Միայն նախորդ յոթնամյակի տարիներին հանրապետու-
թյան գյուղերում ավելի քան 100 հազար ընտանիքներ փոխադրվեցին նոր
բարեկարգ բնակարաններ։

ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներին համապատասխան հանրա-
պետության կոլտնտեսությունները և սովխոզները նախատեսել են գյուղա-
տնտեսության արտադրության բարձր տեմպեր։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության միջին տարեկան աճը

նոր հնգամյակի տարիներին կկազմի 35 տոկոս։ Անցած 3 տարիների ընթացքում՝ 1965—1967 թթ., նախորդ 3 տարիների համեմատությամբ, հանրապետությունում գյուղատնտեսության համախառն արտադրանքն աճեց 21 տոկոսով։

Հանրապետության գյուղի աշխատավորները 1967 թվականին, հաղթահարելով կլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով ստեղծված դժվարությունները, հասան գյուղատնտեսական մթերքների արտադրության բարձր ցուցանիշների։ Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության, անասունների մթերատվության և մթերքների համախառն արտադրության մակարդակով հանրապետության կոլտնտեսությունները և սովխոզները գերազանցեցին նախորդ բոլոր տարիների ամենաբարձր ցուցանիշները և հաղթող դուրս եկան գյուղատնտեսության աշխատողների համամիութենական մրցության մեջ։ Դրա շնորհիվ հանրապետությունը շահեց ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ դրոշը։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը բարձր գնահատեցին Սովետական Հայաստանի կոլտնտեսային գյուղի աշխատավորների նվաճումները։ Առաջավոր տնտեսությունների, տասնյակ հազարավոր կոլտնտեսականների և մեխանիզատորների, սովխոզների բանվորների ու մասնագետների ջանքերի շնորհիվ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման բնագավառում ձեռք բերած խոշոր նվաճումների համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով 1958 թվականի դեկտեմբերին Սովետական Հայաստանը պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Անցյալ տարի նոր բերկրանք ապրեց Հայաստանի աշխատավորությունը, տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում հանրապետության աշխատավորների ձեռք բերած հաջողությունների համար Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը երկրորդ անգամ պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Հայաստանի գյուղի աշխատավորները մեծ առաջնորդի հոբելյանի պատվին ստանձնել են բարձր պարտավորություններ, այն հաշվով, որպեսզի մինչև 1970 թվականի նոյեմբերի 7-ը կատարվի գյուղատնտեսական բոլոր մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի հնգամյա առաջադրանքները։ Կասկած չկա, որ նրանք պատվով կկատարեն ստանձնած պարտավորությունները և արժանավույն նվաճումներով կնշեն Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը։



Ս. Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

# ԼԵՆԻՆԻԶՄԸ ՄԵՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԴՐՈՇՆ Է

Կոմունիստական հասարակարգի կառուցման ասպարեզում սովետական ժողովրդի ծավալած հերոսական պայքարը, ձեռք բերած պատմական հաղթանակները անխզելիորեն կապված են Վ. Ի. Լենինի անվան հետ։

Վ. Ի. Լենինը հանդիսացավ Մարքսի-Էնգելսի գործի անմահ շարունակողը։ Լինելով մարքսիզմի խոշորագույն տեսաբան, նա հեղափոխական տեսությունը անմիջականորեն շաղկապեց պրոլետարիատի պրակտիկ հեղափոխական գործունեությանը, մշակեց սոցիալիստական հեղափոխության ստրատեգիայի և տակտիկայի հարցերը, ստեղծեց առաջին նոր տիպի մարքսիստական կուսակցությունը, որի ղեկավարությամբ հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը։

Վ. Ի. Լենինը սովետական պետության հիմնադիրն է, սոցիալիզմի համար աշխատավորական զանգվածների պայքարի կազմակերպիչն ու ոգեշնչողը։ Միջազգային և ներքին չափազանց բարդ կացության պայմաններում Վ. Ի. Լենինի հանճարը լուսավորեց երիտասարդ սովետական պետության դժվարանց ուղին, մշակեց սոցիալիստական շինարարության հիմնական սկզբունքները, կոմունիստական կուսակցությանը զինեց նոր հասարակարգի կառուցման համապարփակ ծրագրով։

Անշեղորեն ղեկավարվելով մեծ Լենինի պատգամներով, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիությունը և մտավորականությունը պատմական կարճ ժամանակամիջոցում վերականգնեցին երկրի քայքայված ժողովրդական տնտեսությունը, հաջողությամբ լուծեցին ինդուստրացման, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման և կուլտուրական հեղափոխության կենսական խնդիրները։

Պատմության մեջ առաջին անգամ ստեղծվեց մի հասարակարգ, որտեղ շահագործող դասակարգերի վերացման շնորհիվ հնարավոր դարձավ հասա-

րակության բոլոր խավերի և բոլոր ազգությունների աշխատավորների սերտ, եղբայրական համագործակցությունը։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը Լենինի անմահ գաղափարներով դաստիարակեց, կոփեց ու գոտեպնդեց ամբողջ սերունդներ, որոնք զերծ են բուրժուական ինդիվիդուալիզմի եսապաշտական արատներից, որոնց առաջմղիչ ուժը հասարակության գերագույն շահն է, կոմունիստական ապագայի կառուցումը։

Նոր հասարակարգի և նոր մարդու ստեղծման բնագավառում կուսակցության տիտանական ջանքերի փայլուն հաղթանակի վկայությունը հանդիսացավ սովետական հասարակության բարոյաքաղաքական միասնությունը, որն իր լուրջ քննությունը բռնեց հայրենական պատերազմի ծանր տարիներին։

Հիսունմեկ տարի է անցել Հոկտեմբերյան հեղափոխության փոթորկաշունչ օրերից։ Պատմության անկանգ երթուղում կես դարը համեմատաբար փոքր ժամանակահատված է, սակայն, վերջին հիսունամյակը մարդկության տարեգրության մեջ կմտնի որպես նրա ամենախիմաստալից և ամենանշանավոր գլուխներից մեկը։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակով սկսվեց աշխարհի սոցիալիստական վերափոխությունը։ Առաջին սոցիալիստական պետությունը դարձել է երկրագնդի ամենաառաջնակարգ տերությունը, որի օրինակը ոգեշնչության անսպառ աղբյուր է կապիտալիստական երկրների աշխատավորների համար, իսկ հզորությունը՝ բարոյական և նյութական հուսալի պատվար իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում։

Կապիտալիստական աշխարհին դեմ առ դեմ հառնել է սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, որն օր ավուր ամրապնդվում և հզորանում է։

Մահացու հարված է տրվել իմպերիալիստական գաղութատիրությանը։ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի բազմաթիվ ժողովուրդներ փշրել են գաղութատիրության շղթաները և հաղթահարելով իմպերիալիստական տերությունների կողմից ստեղծվող բազմաթիվ դժվարություններ, բռնել են ինքնուրույն զարգացման ուղին։

Օր ավուր հզորանում և ամրապնդվում է կապիտալիստական երկրների աշխատավորական մասսաների պայքարը սոցիալական ազատության և խաղաղության համար, ընդդեմ շահագործող դասակարգերի և նրանց միլիտարիստական դիտավորությունների։

Լենինիզմը իր փրկարար դրոշմն է դրել մարդկության զարգացման առաջընթացի վրա, որն իրավամբ համարվում է ամբողջ աշխարհի հեղափոխական ուժերի պայքարի դրոշը։

Վ. Ի. Լենինը և նրա կուսակցությունը վճռեցին մարդկային հասարակության ամենակնճռոտ պրոբլեմներից մեկը՝ ազգային հարցը։ Դասակարգային շահերի ընդհանրության բազայի վրա ստեղծվել, կոփվել ու անհաղթահարելի բարոյաքաղաքական ուժ է դարձել սովետական ժողովրդի եղբայրական բարեկամությունը։

Սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում ավելի քան 48 տարի է, ինչ իր նոր կյանքն է կառուցում հայ ժողովուրդը։

Մեր ժողովրդի աննախընթաց վերածնունդը, էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման բնագավառներում նրա ձեռք բերած պատմական հաղթանակները անխզելիորեն կապված են Լենինի անվան հետ, սովետական



կարգերի, կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության
անմիջական արդյունքն են, սովետական ժողովուրդների եղբայրական փոխ-
օգնության արգասիքը։
Սովետական իշխանության տարիներին Հայաստանի բնակչությունը
700 հազարից հասել է 2 միլիոն 350 հազարի, բանվորների թիվը՝ 4000-ից
400 հազարի։ Բարձրացել են բազմաթիվ նոր քաղաքներ՝ հոյաշեն ճարտարա-
պետական կոթողներով, արմատապես վերափոխվել է գյուղը, որը հաղորդա-
կից է ժամանակակից քաղաքակրթության նվաճումներին, ձևավորվել է սո-
վետահայ մտավորականության մի պատկառելի բանակ։
Հանրապետությունում իրականացվում է ընդհանուր պարտադիր տասն-
ամյա ուսուցումը։ Արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսու-
թյան, գիտության և մշակույթի նվաճումներով Սովետական Հայաստանը
դուրս է եկել առաջավոր բնագծեր։
Վ. Ի. Լենինի անունը անսահմանորեն թանկ է հայ ժողովրդին, որովհետև
մեծ առաջնորդի գաղափարների հաղթանակի շնորհիվ միայն նա ստացավ
ազգային վերածննդի հնարավորություն, ստեղծեց իր պետականությունը, մո-
խիրներից բարձրացրեց, շենացրեց ու բարեկարգեց իր բազմաթիվ քաղաքներն
ու գյուղերը, և սովետական իրավահավասար ժողովուրդների եղբայրական ըն-
տանիքում կերտում է առավել երջանիկ իր ապագան։
Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստության այս օրերին,
Սովետական Հայաստանի աշխատավորները լայն մրցություն են ծավալել
սիրելի առաջնորդի և ուսուցչի հոբելյանը հասարակական կյանքի բոլոր բնա-
գավառներում նոր հաղթանակներով դիմավորելու համար։ Արդյունաբերական
ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզ-
ներում, գիտական կազմակերպություններում, ստեղծագործական միություն-
ներում մշակվել և իրականացվում են կոնկրետ միջոցառումներ, ծավալվել է
իսկապես համաժողովրդական շարժում։ Արդյունաբերության աշխատողները
պարտավորվել են հնգամյա պլանը կատարել 1970 թ. նոյեմբերի 7-ին։ Գյուղի
աշխատավորները խնդիր են դրել գյուղատնտեսական մթերքների վաճառքի
1970 թ. պլանները կատարել ու գերակատարել մինչև նոյեմբերի 29-ը։
Կոնկրետ առաջադրանքներ են սահմանվել շինարարության, տրանսպոր-
տի, բնակչության սպասարկման բնագավառներում։
Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի
1968 թվականի դեկտեմբերյան պլենումը քննության առնելով «Վլադիմիր
Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստության և հանրապետու-
թյան կուսակցական կազմակերպությունների խնդիրների մասին հարցը»,
մշակեց գործունեության կոնկրետ ծրագիր, հաստատեց մեծ առաջնորդի հո-
բելյանի նախապատրաստության հիմնական միջոցառումների պլանը։ Պլե-
նումի որոշումներում առանձնահատուկ նշանակություն տրվեց մասնավորա-
պես բնակչության շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական և
պրոպագանդիստական աշխատանքի հարցերին։
Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որո-
շումից հետո Հայաստանի կուսակցական, արհմիութենական, կոմերիտական
կազմակերպությունները, գաղափարական բնագավառի աշխատողները լայն
գործունեություն են ծավալել մեծ առաջնորդի գաղափարական ժառանգու-
թյան, Սովետական Միության կոմունիստական կուսակցության քաղաքակա-

նության և ՍՍՀՄ ժողովուրդների պատմական հաղթանակների պրոպագանդման մարզերում։

Արմատավորվել են քաղաքական-գաղափարական աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ, ընդլայնվել է ընդգրկման ոլորտը, բարելավվել իրագործվող միջոցառումների բովանդակությունը։ Քաղաքական աշխատանքում ներգրավվել են հարյուրավոր կուսակցական և սովետական աշխատողներ, դասախոսներ, գիտության ու մշակույթի գործիչներ։ Որոշակի աշխատանք են ծավալել հանրապետական ու շրջանային մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը։

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի կապակցությամբ տարվող աշխատանքը նոր թափ պիտի ստանա ընթացիկ տարում։ Այն պետք է ավելի նպատակասլաց դառնա, կարողանա բավարարել բնակչության աճող գաղափարական ու քաղաքական պահանջները, առավել արդյունավետ և գործուն լինի։

Հենց այդ նպատակով պրոպագանդիստական աշխատանքում պետք է ներգրավվեն մեր ամենագիտակ և կարող ուժերը, մարդիկ, ովքեր ի վիճակի են լենինյան գաղափարներով ոգևորվելու, նոր սխրանքների կոչելու աշխատավորներին, էլ ավելի խորացնելու նրանց հավատը Լենինի գործի նկատմամբ։

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ծավալված քաղաքական աշխատանքում հիմնական ուշադրությունը պետք է կենտրոնացվի Սովետական Միության կոմունիստական կուսակցության տիտանական գործունեության բազմակողմանի պրոպագանդման, կոմունիստական շինարարության բոլոր ճակատներում լենինյան գաղափարների հաղթանակի լուսաբանման հարցերի վրա։

Կոմունիզմի իսկական մարտիկ կարող է լինել նա, ով զինված է մարքսիզմ-լենինիզմի իմացությամբ, ում համար Վ. Ի. Լենինի գաղափարական ժառանգությունը գիտելիքների կենսական աղբյուր է, պրակտիկ գործունեության մարտական ծրագիր։

Վ. Ի. Լենինի աշխատությունները խորապես պետք է ուսումնասիրեն կուսակցական, սովետական, կոմերիտական, արհմիութենական և տնտեսական աշխատողները, պրոպագանդիստները, նրանք, ովքեր պարտավոր են հաճախակի հանդես գալ աշխատավորության առջև քաղաքական զեկուցումներով և հաղորդումներով։ Կուսակցական ուսուցման սիստեմում անհրաժեշտ է առանձնահատուկ ուշադրություն նվիրել Լենինի աշխատությունների պրոպագանդմանը։ Կոմունիստները ավելի մեծ ջանասիրությամբ պետք է ուսումնասիրեն Լենինի գործերը։

Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության պրոպագանդան պետք է սերտորեն շաղկապել սովետական ժողովուրդների այսօրվա գործերի և խնդիրների հետ, ամբողջությամբ ծառայեցնել մեր մարդկանց, մասնավորապես երիտասարդության կոմունիստական դաստիարակության նպատակին։ Դրա համար կենսականորեն անհրաժեշտ է ապահովել տարվող աշխատանքի հանրամատչելիությունը։ Հատկապես պահանջկոտ պետք է լինել թեմաների ընտրության և հետաքրքրական մատուցման հարցերում։ Երբեք չպետք է հանդուրժել, որ լենինյան թեմաներով հանդես գան պատահական, անիրազեկ մարդիկ, արծարծվեն անմշակ հարցեր, սպրդեն էժանագին մանրամասներ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն որոշում է ընդունել քաղաքական-մասսայական աշխատանքի արդյունավետության բարձրացման մասին։ Այդ որոշման նպատակն է ավելի մատչելի ու արդյունավետ դարձնել քաղաքական աշխատանքը, ընդլայնել աշխատավորների քաղաքական հետաքրքրու-



թյունների շրջանակները, հասնել այն բանին, որ իրագործվող միջոցառումները անջնջելի հետք թողնեն մարդկանց սրտերում ու գիտակցության մեջ, որ այդ միջոցառումներին մասնակցելն իրոք դառնա կենսական պահանջ և անհրաժեշտություն։ Բյուրոյի որոշման այդ դրույթները առավել կարևոր են Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստության առթիվ ծավալված աշխատանքում։ Այդ թեմայով յուրաքանչյուր հոդված, զեկուցում ու դասախոսություն պետք է մշակվեն ու մատուցվեն բարձր պատասխանատվության զգացումով, բարեխղճորեն։ Անհրաժեշտ է ընդլայնել կուսակցական կազմակերպությունների քաղաքական աշխատանքների ընդգրկման ոլորտը, դրանից դուրս չթողնել ոչ մի աշխատավորի, երիտասարդ բնակչի։ Պլանավորված աշխատանք պետք է տարվի երիտասարդության շրջանում, տնային տնտեսուհիների և բնակչության մյուս խավերի համար։

Ամենօրյա քաղաքական ներգործության կարևոր լծակներից են քաղինֆորմատորների և ագիտատորների կոլեկտիվները։ Անհրաժեշտ է խոստովանել, որ կուսակցական օրգաններն ու կազմակերպությունները դեռևս պատշաճ ուշադրություն չեն դարձնում վերջինների գործունեության ղեկավարությանը։ Մասնավորապես անբավարար է քաղինֆորմատորների հետ տարվող աշխատանքը։ Եվ այդ այն դեպքում, երբ այժմ քաղինֆորմատորը հանդիսանում է ագիտացիոն աշխատանքի կենտրոնական դեմքը։

Վերջերս պրոպագանդիստների հանրապետական խորհրդի նախագահությունում լսվեցին ՀԿԿ Լենինականի քաղկոմի և Ալավերդու շրջկոմի հաղորդումները՝ քաղինֆորմատորների գործունեության մասին։ Քննարկումը ցույց տվեց, որ կուսակցական կազմակերպությունները դեռևս ինչպես հարկն է չեն ղեկավարում մասսայական պրոպագանդայի այս կարևոր օղակը, ավելորդ զգուշություն են հանդես բերում քաղինֆորմատորների ինստիտուտի արմատավորման գործում, անհրաժեշտ աշխատանք չեն տանում նրանց հետ։

Անհրաժեշտ է վճռականորեն բարելավել ցուցադրական ագիտացիայի վիճակը հանրապետության բոլոր բնակավայրերում և իրականացնել միջոցառումներ Լենինի ծննդյան 100-ամյակի կապակցությամբ ցուցադրական ագիտացիայի վերակառուցման ու ծավալման ուղղությամբ։ Կուսակցության քաղկոմ-շրջկոմները պետք է գլխավորեն այդ գործը, դրանում ներգրավեն շնորհալի նկարիչներին, քանդակագործներին և ճարտարապետներին, բացառել անճաշակությունն ու խալտուրան։

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստության նպատակով տարվող քաղաքական աշխատանքում առաջնակարգ նշանակություն պետք է տալ սովետական ժողովուրդների լենինյան բարեկամության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի պրոպագանդման հարցերին։ Հատկապես վերջին տարիներին Հայաստանի կուսակցական, սովետական և կոմերիտական կազմակերպությունները մեծ կարևորություն տալով կենդանի կապերի ամրապնդմանը, զգալի աշխատանք են տանում եղբայրական հանրապետությունների ու սոցիալիստական երկրների մշակույթների փոխադարձ տասնօրյակների և օրերի, համատեղ գիտական սեսիաների և այլ հանդիպումների կազմակերպման, եղբայրական հանրապետությունների քաղաքների և շրջանների հետ սոցիալիստական մրցության ծավալման ասպարեզում։ Այդ կապերը էապես լրջորեն նպաստում են բարեկամության պրոպագանդային։

Անցյալ տարվա աշնանը մեր հանրապետությունում ընթացան ղազախական կուլտուրայի և գրականության օրերը, որոնք վերածվեցին իսկա-

կան եղբայրության բերկրալի տոնի։ Սովետական Հայաստանի աշխատավոր-
ները ջերմ հանդիպումներ ունեցան սոցիալիստական Հունգարիայի կուսակ-
ցական աշխատողների, արվեստի ու գրականության գործիչների հետ, որոնք
մեզ մոտ էին եկել բարեկամության պատասխան այցով։

Դժվար է գերագնահատել այս միջոցառումների նշանակությունը։

Մեր խնդիրն է՝ այսուհետև էլ քաղաքական ներգործության բոլոր միջոց-
ներն օգտագործել ժողովուրդների լենինյան բարեկամության ամրապնդման,
աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործի հետագա բա-
րելավման համար։ Այդ աշխատանքը պետք է սերտորեն զուգակցվի ազգային
սահմանափակության և սնապարծության դրսևորումների, ինչպես և անցյա-
լի իդեալականացման փորձերի դեմ մղվող պայքարի հետ, փորձեր, որոնք
դանդաղեցնում են մեր հոգևոր մշակույթի զարգացման պրոցեսը, խանգարում
հոգևոր հարստությունների բազմապատկմանը։

Դժբախտաբար, մեզ մոտ դեռևս կարելի է հանդիպել մարդկանց, ովքեր
սպեկուլյատիվ նպատակներով չարաշահում են հայ ժողովրդի ողբերգական
անցյալից սերող ցավագին զգացմունքները, անպատասխանատու կերպով
խաղում են դրանց հետ, մոռանալով իրենց պարտքը ժողովրդի և նրա ապա-
գայի նկատմամբ։ Դժվար չէ հասկանալ, որ այդ քաղքենիական նվնվոցները
կամ թեթևսոլիկ, դոնքիշոտյան հոխորտումները ոչինչ ընդհանուր բան չունեն
սովետական հայրենասիրության հետ։

Իսկական հայրենասիրությունը անձնուրաց աշխատանք է, քարը քարի
վրա դնելը, շենացումը, ժողովրդի բարեկեցության ու կուլտուրայի բարձրա-
ցումը, ժամանակակից մշակույթի անընդմեջ զարգացումը։ Իրավամբ հպար-
տանալով մեր դարավոր մշակույթի գլուխգործոցներով, մենք երբեք չպետք է
մոռանանք, որ մեր ժողովրդի հերոսագործությունը չի սահմանափակվում
միայն անցյալի ժառանգությամբ։ Յուրաքանչյուր ժողովրդի կենսունակության
չափանիշը նրա ձգտումն է ապրել ժամանակի հոգսերով, ստեղծել ժամանա-
կին վայել գործեր, բազմապատկել եղածը։ Մենք խորին ակնածանքով ենք
վերաբերվում Սարդարապատում զոհված մարտիկների հիշատակին, հարգան-
քի տուրք ենք տալիս ցեղասպանության նահատակներին։ Սակայն մենք չենք
ցանկանում, որ մեր երիտասարդության սրտում մշտապես մխա անցյալի
ցավը։ Ցավն ամեն տեղ և ամենուրեք խանգարում է երջանկությանը։ Սովե-
տական Հայաստանի աշխատավորները, նրանց հետ միասին Սովետական
Միության բոլոր ժողովուրդները մեծ հանդիսավորությամբ նշեցին Երևանի
2750-ամյակը։ Այդ հոբելյանը վերածվեց բերկրալից տոնի, ժողովրդական
ցնծության։ Մենք հպարտանում ենք մեր մայրաքաղաքով, որն ամբողջու-
թյամբ սովետական իրականության արդյունք է։ Սակայն մենք լավ հայրենա-
սերներ չէինք լինի, եթե խոսելով Երևանի գեղեցկության և կառույցների մա-
սին, մի վայրկյան անգամ մոռանայինք քաղաքի հետագա զարգացման, գե-
ղեցկացման, կառուցապատման հոգսերը, որոնք աշխատանք, աշխատանք և
դարձյալ լարված աշխատանք են պահանջում։ Մենք արժանապատվության
զգացումով ենք խոսում հանրապետության էկոնոմիկայի, գիտության և մշա-
կույթի աննախընթաց զարգացման մասին։ Սովետական Հայաստանի աշխա-
տավորները ուժ ու եռանդ չեն խնայել իրենց սոցիալիստական հանրապետու-
թյան զարգացման համար։ Սակայն մենք երբեք չպետք է մոռանանք, որ Սո-
վետական Հայաստանի ժողովրդական տնտեսության բուռն վերելքը հնարա-
վոր եղավ ապահովել սովետական բոլոր ժողովուրդների անգնահատելի, եղ-



բայրական փոխօգնության ու համագործակցության շնորհիվ միայն։ Մենք
լավ հայրենասերներ չէինք լինի, եթե հպարտության զգացումը վերաճերվեր
սնապարծության, եթե մենք բազմապատկված եռանդով ձեռնամուխ չլինեինք
կոմունիստական շինարարության հերթական խնդիրների իրականացմանը,
խնդիրներ, որոնք նոր շենացում ու բարգավաճում են բերում մեր հանրապե-
տության։ Հետևությունը մեկ է։ Ազգային սահմանափակության և սնա-
պարծության տրամադրությունները իրենց էությամբ ոչ միայն սնամեջ են,
հակահայրենասիրական, այլև վտանգավոր, որովհետև անփորձ մարդիկ,
հատկապես քաղքենիորեն մտածողները, հաճախ չեն կարողանում տարբերել
հայրենասիրությունը՝ հայրենասիրության մասին շաղակրատանքից։

Դժբախտաբար, մեր մամուլի առանձին օրգաններում և որոշ հրատարա-
կություններում երբեմն սպրդում են այնպիսի մտքեր կամ դատողություն-
ներ, որոնք վկայում են առանձին մարդկանց մոտ պետական մտածողու-
թյան բացակայության, ժողովրդի բախտի նկատմամբ թեթևսոլիկ վերաբեր-
մունքի ցավալի իրողության մասին։ Հայ ժողովրդի պատմական ճակատագրի
և ժամանակակից գոյավիճակի նույնիսկ առերևույթ բաղդատումը, ինքնըստ-
ինքյան բավական է համոզվելու համար, թե որքան առարկայազուրկ են
անցյալի իդեալականացման՝ ցավոք հարատևող միտումները։

Սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամությունը նրանցից
յուրաքանչյուրի, այդ թվում հայ ժողովրդի ապահովության, երջանկության և
բարգավաճման միակ երաշխիքն է, այն անխորտակ ուժը, որին ապավինած
նրանք իրենց նախընտրած ուղիով վստահորեն ընթանում են պայծառ գա-
լիքին ընդառաջ։

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստության առթիվ տար-
վող քաղաքական աշխատանքում կարևոր տեղ պետք է տրվի լենինյան գա-
ղափարների հաղթանակի շնորհիվ հայ ժողովրդի ազգային վերածննդի, հան-
րապետության էկոնոմիկայի և մշակույթի աննախընթաց վերելքի իրողու-
թյան պրոպագանդային։ Պատմության իմպերիալիստական և դաշնակցական
կեղծարարները ապարդյուն փորձեր են անում անտեսել մեր հանրապետու-
թյան իսկական բախտորոշ նվաճումները, տեղի ունեցած արմատական վերա-
փոխումները նրանք ջանում են վերագրել մարդկության առաջադիմության
ընդհանուր «օրինաչափ» տենդենցին, նպատակ ունենալով ժխտել սոցիալիս-
տական հասարակարգի, սովետական ժողովուրդների եղբայրական համա-
գործակցության դերը հանրապետության էկոնոմիկայի և մշակույթի հուժկու
վերելքի գործում։ Իսկապես անհեթեթ ու ծիծաղելի են մեր քաղաքական ու
գաղափարական հակառակորդների այս պնդումները։ Մի՞թե այդ պարոնները
կարծում են, թե մարդիկ, որոնց մտքերը պղտորելու հավակնություն ունեն
իրենք, զուրկ են մտածելու, կշռադատելու և համեմատելու կարողությունից։
Չէ՞ որ մարդկության առաջադիմության տենդենցը ընդհանուր է բոլոր երկր-
ների համար։ Այդ դեպքում ինչո՞վ բացատրել, որ ժամանակին նախասովե-
տական Հայաստանի մակարդակին գտնվող պետությունները շարունակում են
խարխափել հետամնացության ճիրաններում, իսկ Սովետական Հայաստանը
դարձել է առաջավոր էկոնոմիկայի, գիտության ու մշակույթի հանրապետու-
թյուն։ Այժմ նույնիսկ դժվար է մեր հանրապետության ցուցանիշները համե-
մատել հարևան Իրանի և Թուրքիայի ցուցանիշների հետ։ Այժմ բնակչության
մեկ շնչին ընկնող արտադրանքի չափանիշով Սովետական Հայաստանը հա-
ջողությամբ մրցակցում է աշխարհի զարգացած կապիտալիստական երկր-

ների հետ։ Կարո՞ղ էին, արդյոք, այդ բանը անել պարոնայք ընդդիմախոսները
50 տարի առաջ։ Աշխարհում գործող երեք խոշորագույն էլեկտրոնային արա-
գացուցիչներից մեկը գտնվում է Երևանում։ Հայաստանում աշխատում են
9568 գիտնականներ, որոնցից 77-ը ակադեմիկոսներ են, 335-ը գիտություն-
ների դոկտորներ։ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետու-
թյան գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ Վ. Համբարձումյանը ըն-
տրվել է գիտնականների համաշխարհային համաժողովի նախագահ։ Տեղին
չէ՞ հիշեցնել պատմության պարոն կեղծարարներին, որ 1920 թվականին Հա-
յաստանում ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն չկար։ Մինչև
Հայաստանում սովետական կարգերի հաստատումը խավարի, աղքատության
և համաճարակների ճիրաններում գտնվող հայ գյուղացին այսօր սանձել է
բնությունը, կառուցել Արզնի—Շամիրամի, Արտաշատի, Կոտայքի և բազմա-
թիվ այլ ջրանցքներ, Ապարանի, Մանթաշի և տասնյակ ուրիշ ջրամբարներ,
Մխչյանի, Այգր լճի և հարյուրավոր այլ ջրհան կայաններ, մեքենայացրել ու
քիմիացրել է արտադրությունը, տնտեսությունը վարում է գիտական հի-
մունքներով։

Հանրապետության աշխատավորները, Սովետական Միության մյուս ժո-
ղովուրդների օգնությամբ իրականացնում են Արփա գետի ջրերը Սևան բերելու
հոյակապ նախագիծը և արդեն լեռնաշղթաների միջով անցնող մոտ 50 կիլո-
մետրանոց թունելի մեկ երրորդը պատրաստ է։ Կարիք կա՞ արդյոք հիշեցնել
մեր քաղաքական հակառակորդներին, որ մեր հարևան երկրներում նահապե-
տական չութն ու արորը դեռևս մնում են որպես արտադրության հիմնական
միջոց, իսկ, ասենք, ջրաշինարարության մեր մասնագետները հրավիրվում են
շատ զարգացած երկրներ կոնսուլտացիաների և օգնության համար։ Այսպի-
սին է պատմական իրողությունը և մենք ինչպես հարկն է պետք է պրոպագան-
դենք եղբայրական ժողովուրդների ընտանիքում, նրանց զարգացմանը համ-
ընթաց բարգավաճող Սովետական Հայաստանի նվաճումները, դրանք հա-
կադրենք մեր քաղաքական ու գաղափարական հակառակորդների չարանենգ
ոտնձգություններին, ցույց տանք, թե ինչ տվեցին Լենինը և Հոկտեմբեր-
յան հեղափոխությունը դարերից եկող, ճակատագրի ահավոր փորձություն-
ներով անցած աշխատավոր հայ ժողովրդին։ Մենք պետք է ավելի մեծ հմտու-
թյամբ և բազմակողմանիորեն լուսաբանենք Սովետական Միության համաշ-
խարհային-պատմական հաղթանակները էկոնոմիկայի, գիտության ու մշա-
կույթի բոլոր ասպարեզներում, աշխատավորների, հատկապես երիտասար-
դության լայն շրջաններում արմատավորենք և ամրապնդենք սովետական ժո-
ղովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթները,
վճռական հակահարված տանք սերունդները միմյանց հակադրելու թշնամա-
կան փորձերին։

Կուսակցական կազմակերպությունների քաղաքական-պրոպագանդիս-
տական ողջ գործունեությունը պետք է նպատակամղվի կոմունիստական շի-
նարարության հերթական խնդիրների հաջող իրականացմանը, կուսակցու-
թյան XXIII համագումարի որոշումների կատարմանը։

Սովետական մարդկանց քաղաքական և աշխատանքային բարձր ակտի-
վությունը կուսակցական կազմակերպությունների գործունեության հաջողու-
թյան գրավականն է, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի կապակցությամբ
քաղաքական-պրոպագանդիստական նպատակասլաց աշխատանքի կազմա-
կերպումը՝ կուսակցական կազմակերպությունների պատվի խնդիրը։

Հ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

# ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՊԱՅՔԱՐԸ ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՕՐԵՆՔՆ Է

Սովետական Միության կոմունիստական կուսակցության, եղբայրական
մյուս կուսակցությունների փորձը ցույց է տալիս, որ մարքսիստական կու-
սակցության ուժն ու անպարտելիությունն իր շարքերի ամրակուռ միասնու-
թյան մեջ է, մարքսիզմ-լենինիզմի՝ հավերժ կենդանի հեղափոխական այդ ուս-
մունքին հավատարմության, իր անդամների գաղափարական զինվածության,
բարձր գիտակցականության և կարգապահության մեջ։

Վ. Ի. Լենինը վճռական նշանակություն էր տալիս կուսակցության կամքի
և գործողությունների միասնությանը։ Նա միանգամայն անթույլատրելի էր
համարում այդ միասնությունը խախտող որևէ «կոչ»՝ ինչպես կուսակցական
ժողովներում, այնպես էլ մամուլում։

Միասնության լենինյան սկզբունքների անտեսումն անխուսափելիորեն
հանգեցնում է կուսակցության, նրա ղեկավար դերի թուլացմանը։ Այդ տեղի
ունեցավ Չեխոսլովակիայի կոմկուսակցությունում, որտեղ աջ ուժերը ոտնա-
հարում էին դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքները, ձգտում
կուսակցությունը վերածել անդեմ, անգործունակ կազմակերպության, յուրա-
տեսակ դիսկուսիոն ակումբի։ Կուսակցության միասնության դեմ է ուղղված
Մաո Ցզե-դունի ավանտյուրիստական խմբի պառակտիչ գործունեությունը
Չինաստանում։

ՍՄԿԿ միշտ հավատարիմ է եղել կուսակցության միասնության մարք-
սիստական-լենինյան գաղափարներին։ Կուսակցական շարքերի միասնու-
թյան պահպանումը եղել է և է մեր կուսակցության, նրա բոլոր ջոկատների
հոգսը։ Նրանք միշտ անխնա և անողոք են եղել ֆրակցիոնության ամեն տե-
սակ դրսևորումների դեմ, բոլոր նրանց նկատմամբ, ովքեր դուրս են եկել կու-
սակցության կանոնադրության շրջանակներից, խեղաթյուրել լենինիզմի ոգին։
ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման անհրաժեշտ նախապայմանը հակա-
լենինյան բոլոր խմբավորումների, թշնամական բոլոր կուսակցությունների
դեմ տարած հաղթանակն էր, նրանց գաղափարական ջախջախումը։ «Իր գըլ-
խավոր գիծը,— ասված է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխու-

*թյան 50-ամյակին նախապատրաստվելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի 1967 թ.*
*հունվարի 4-ի որոշման մեջ,— կուսակցությունը պաշտպանել է տրոցկիստ-*
*ների, մանրբուրժուական ավանտյուրիստների, աջ օպորտունիստների, ուկ-*
*լոնիստների և հակալենինյան այլ հոսանքների ու խմբերի դեմ մղված ան-*
*հաշտ պայքարում» («Սովետական Հայաստան», 8 հունվարի 1967 թ.)։*

1

*Իր կազմավորման առաջին իսկ օրից մեր կուսակցությունը շրջապատ-*
*ված է եղել թշնամիներով և, Լենինի արտահայտությամբ, գրեթե միշտ հար-*
*կադրված է եղել ընթանալ նրանց կրակի տակով։ Լենինյան կուսակցությունը*
*հետևողական, անխնա և անզիջում պայքար է մղել իր շարքերի միասնության*
*և համախմբվածության համար։*

*Պայքարը կուսակցության միասնության համար մինչհոկտեմբերյան ժա-*
*մանակաշրջանում պայքար էր ընդդեմ լեգալ մարքսիստների, «էկոնոմիստ-*
*ների», էսեռների, մենշևիկների, որոնք աղավաղում էին կոմունիստական*
*կուսակցության վերաբերյալ մարքսիստական ուսմունքը, ժխտում կուսակ-*
*ցության կազմակերպական և գաղափարական միասնության անհրաժեշտու-*
*թյունը, դրվատում խմբակայնությունն ու անարխիզմը, անկազմակերպվա-*
*ծությունն ու անկարգապահությունը։*

*Պայքարը կուսակցության միասնության համար հետհոկտեմբերյան շըր-*
*ջանում, պայքար էր ընդդեմ «ձախ» և աջ օպորտունիստների՝ տրոցկիստների,*
*զինովևականների, բուխարինականների, որոնք ժխտում էին մեր երկրում սո-*
*ցիալիզմի կառուցման հնարավորության լենինյան ուսմունքը, դեմ էին կու-*
*սակցության միասնությանը, պաշտպանում էին խմբակայնությունն ու ֆրակ-*
*ցիոնականությունը կուսակցության ներսում, տարընթացությունը՝ կազմա-*
*կերպական հարցերում։*

*Կուսակցության ներսում հնարավո՞ր են գաղափարական հակասություն-*
*ներ, տատանումներ ու տարաձայնություններ։*

*Այո՛, հնարավոր են։*

*Կուսակցության զարգացման, պրոլետարիատի դասակարգային պայքա-*
*րի ընթացքում անխուսափելի են ներկուսակցական սկզբունքային տարաձայ-*
*նությունները։ Մեր կուսակցության պատմությունը նրանում եղած հակասու-*
*թյունների պատմությունն է, այդ հակասությունները հաղթահարելու միջոցով*
*նրա շարքերն ամրապնդելու պատմությունը։ «Ըստ երևույթին,— ասել է*
*Էնգելսը,— ամեն մի բանվորական կուսակցություն կարող է զարգանալ մի-*
*այն ներքին պայքարում, լիովին համապատասխան ընդհանրապես դիալեկ-*
*տիկական զարգացման օրենքներին» (*К. Маркс и Ф. Энгельс. Избран-
ные письма, Госполитиздат, М., 1953, стр. 358*)։*

*Որո՞նք են ՍՄԿԿ շարքերում եղած տարաձայնությունների, տատանում-*
*ների և թեքումների հիմնական պատճառները։*

*Բուրժուազիայի, բուրժուական գաղափարախոսության ազդեցությունը*
*պրոլետարիատի, նրա ավանգարդի՝ կուսակցության վրա. ահա, ամենից*
*առաջ, կուսակցության մեջ եղած հակասությունների և տարաձայնություն-*
*ների պատճառը։ Կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանում ծավալվում*
*է դասակարգային կատաղի պայքար մի կողմից՝ պրոլետարիատի ու նրա դաշ-*
*նակիցների, մյուս կողմից՝ տապալված, բայց չոչնչացված բուրժուազիայի ու*
*նրա գործակիցների միջև։*



*Այդ պայքարն իր արտացոլումն է գտնում նաև ներկուսակցական կյան-*
*քում։ Դասակարգային պայքարի արտահայտություն էին զանազան հակա-*
*կուսակցական օպոզիցիոն խմբերի և ֆրակցիաների ելույթները կուսակցու-*
*թյան ներսում։ Աջ և «ձախ» բնույթի հակալենինյան ֆրակցիաներն ու խըմ-*
*բավորումները,— ասված է ՍՄԿԿ բազմահատոր պատմության նախաբա-*
*նում,— արտահայտում էին մանրբուրժուական տարերայնությունը, որը տի-*
*րապետում էր երկրի էկոնոմիկայի մեջ և որը չէր կարող չազդել կուսակցու-*
*թյան վրա։*

*Մանրբուրժուական տարրերը, թափանցելով կուսակցության մեջ, դեռևս*
*չյուրացնելով պրոլետարական գաղափարախոսությունը, այնտեղ սերմանում*
*էին տատանման, օպորտունիզմի, քայքայման ու անվստահության ոգի, հան-*
*դիսանում ֆրակցիոնության և կազմալուծման աղբյուր, հաճախ հանդես գա-*
*լիս որպես աջ և «ձախ» օպորտունիզմի արտահայտիչներ։*

*Սոցիալիստական շինարարության տարիներին, պրոլետարիատի դիկտա-*
*տուրայի պայմաններում, կուսակցության ներսում տարաձայնությունների*
*և տատանումների գլխավոր աղբյուրը կապիտալիստական շահագործող-*
*կան դասակարգերի մնացորդների առկայությունն էր։ Ռուսաստանը հիմնա-*
*կանում ոչ-պրոլետարական բնակչություն ունեցող երկիր էր։ Մանրբուրժուա-*
*կանում ոչ-պրոլետարական բնակչություն... օպորտունիզմի համար սնուցիչ*
*զիայի ստվար զանգվածի առկայությունը օպորտունիզմի համար սնուցիչ*
*միջավայր էր կուսակցության ներսում։ Սովետական իշխանության առաջին*
*տարիներին կուսակցության շարքերն էին թափանցել մանրբուրժուական տար-*
*րեր— նախկին մենշևիկներ ու էսեռներ, գաղափարապես անկայուն մարդիկ,*
*կարիերիստներ ու մորթապաշտներ։*

*Ինքնին հասկանալի է, որ նման պայմաններում ավելի դժվարանում էր*
*երկրի բովանդակ կյանքի ղեկավարության գործը, պահանջվում էր ուժերի*
*գերլարում հակառակորդների դիմադրության հաղթահարման համար։ Այդ*
*առթիվ ՌԿ(բ)Կ XI համագումարի բանաձևում ասված է. «Պրոլետարիատի*
*հաղթանակն ամրապնդելու և նրա դիկտատուրան քաղաքացիական ամենա-*
*սուր պատերազմում պաշտպանելու համար պրոլետարական ավանգարդն*
*ստիպված եղավ կազմակերպության ազատությունից զրկել այն բոլոր քաղա-*
*քական խմբավորումներին, որոնք թշնամի էին սովետական իշխանությանը։*
*Ռուսաստանի կոմունիստական կուսակցությունը մնաց միակ լեգալ քաղա-*
*քական կուսակցությունը երկրում... Իրենց ուժերի գործադրման ասպարեզ*
*փնտրելով, անխուսափելիորեն միակ լեգալ քաղաքական կուսակցության շար-*
*քերը նետվեցին այնպիսի խմբեր ու խավեր, որոնք այլ պայմաններում կգըտ-*
*նըվեին ոչ թե կոմունիստական կուսակցության շարքերում, այլ սոցիալ-դե-*
*մոկրատիայի կամ մանրբուրժուական սոցիալիզմի մի այլ տարատեսակու-*
*թյան շարքերում» (ՍՄԿԿ-ն բանաձևերում ու որոշումներում, մաս I, էջ*
*791—792)։*

*Հայտնի է, այնուհետև, որ բանվոր դասակարգը, մանավանդ սովետական*
*իշխանության առաջին տարիներին, միատարր չէր, միատարր չէր նաև գի-*
*տակցականության մակարդակով, կազմակերպվածության աստիճանով։ Բան-*
*վորների մեջ կային անկազմակերպ, ոչ-պրոլետարական տարրեր՝ հասարա-*
*կության բուրժուական և մանրբուրժուական խավերից, որոնք իրենց հետ բե-*
*րում էին հետամնաց տրամադրություններ, սովորույթներ, մանրբուրժուական*
*հոգեբանություն։ Պատահական չէ, որ հակալենինյան հայացքներն ավելի*
*շատ տարածում գտան կուսակցության այն անդամների, հատկապես ինտե-*

լիգենցիայի շրջանում, որոնք առավել չափով կրել էին բուրժուական գաղափարախոսության ազդեցությունը։

Ներկուսակցական սուր պայքարում էր վճռվում մեր երկրում սոցիալիզմի լինել-չլինելու հարցը։ Լենինը, առաջ քաշելով և հիմնավորելով բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերաճելու տեսությունը, ապացուցեց, որ սոցիալիստական հասարակարգ կառուցելու համար մեզ մոտ բոլոր հնարավորությունները կան։ Այդ հարցի շուրջն է պայքար ծավալվել, մի կողմից՝ Լենինի և լենինյանների, մյուս կողմից՝ բոլոր օպորտունիստների, հակակուսակցական խմբերի ու ֆրակցիաների միջև։

Մեր երկիրը սոցիալիզմ էր կառուցում դժվարին պայմաններում։ Կապիտալիստական շրջապատը, տեխնիկա-տնտեսական հետամնացությունը, բնակչության մանրբուրժուական խմբերի առկայությունը, կապիտալիստական տարրերի դիմադրությունը սոցիալիստական հարձակմանը— այս ամենը, ինչպես և սոցիալիստական շինարարության աճը, չէին կարող տատանումներ չհարուցել մանրբուրժուական, ինչպես և այլ անկայուն տարրերի շրջանում։ Այդ տատանումները, նշվեց կուսակցության XVI կոնֆերանսում, իրենց արտահայտությունն են գտնում նաև կուսակցության առանձին միջնախավերում, որոնք ենթարկվում են մանրբուրժուական տարրերի ներգործությանը, հեռանում կուսակցության գլխավոր գծից, հակվելով կուսակցության քաղաքականությունը բուրժուական իդեոլոգիային հարմարեցնելու կողմը։

Սոցիալիզմի կառուցումը Սովետական Միությունում տեղի էր ունենում տապալված շահագործողական դասակարգերի կատաղի դիմադրության, իմպերիալիստական շրջապատման և զինված ինտերվենցիայի մշտական սպառնալիքի պայմաններում։ Դա մի ժամանակաշրջան էր, երբ լուծվում էր «ով ում»-ի հարցը, երբ հարձակումը գյուղի և քաղաքի կապիտալիստական տարրերի վրա սրեց դասակարգային պայքարը երկրում։ Այդ պայքարն առանձնապես ծավալվեց համատարած կոլեկտիվացման և դրա հիման վրա կուլակությունը որպես դասակարգ լիկվիդացնելու կապակցությամբ։ Երկրի սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման կուսակցության վարած քաղաքականությունը դիմադրության էր հանդիպում հակակուսակցական այլ և այլ խմբերի ու թեքումների կողմից։

Դժվարությունները, որոնք կուսակցությունը հաղթահարում էր այդ քաղաքականությունն իրագործելիս, մեծանում էին նաև նրանով, որ Սովետական Միությունը սոցիալիզմ էր կառուցում միայն սեփական միջոցներով, մինչդեռ երկիրը ժառանգել էր հետամնաց և ավերված տնտեսություն, որը վերականգնելու և զարգացնելու համար հարկավոր էին մեծ ջանքեր, զոհողություններ։ Սովետական Միությունը միակ երկիրն էր, որ մարդկության համար ուղի էր հարթում դեպի սոցիալիզմ՝ կապիտալիստական թշնամական շրջապատման պայմաններում։ Թշնամիները ՍՍՀՄ էին ուղարկում մեծ թվով լրտեսներ ու դիվերսանտներ, նպատակ ունենալով քայքայել սոցիալիստական հասարակարգը։

Ներքին և արտաքին անխուսափելի դժվարություններն իրենց ազդեցությունն էին գործում կուսակցության մեջ եղած անկայուն տարրերի վրա, հարուցում սխալ ըմբռնումներ, հակակուսակցական հայացքներ։ Տուրք տալով մանրբուրժուական գաղափարախոսությանը, նրանք չէին հասկանում, որ սոցիալիզմը հնարավոր չէր կառուցել առանց պայքարի, առանց դժվարություն-



ների հաղթահարման։ Պետք էր նկատի ունենալ նաև կոմունիստների մի մասի գաղափարական անբավարար կոփվածքը, նրանց քաղաքական ցածր մակարդակը։

Կուսակցության միասնությանը մեծագույն խոչընդոտ են հանդիսացել ազգային հարցում եղած երկու թեքումները՝ մեծապետական շովինիզմը և տեղական նացիոնալիզմը։ Այնպիսի բազմազգ երկրում, ինչպիսին Ռուսաստանն էր, բուրժուական նացիոնալիզմը, սնվելով շահագործող դասակարգերի կողմից, սպառնում էր թունավորել աշխատավորների գիտակցությունը, պառակտել նրանց դասակարգային համերաշխությունը։

Սրանք են, ահա, ՍՄԿԿ շարքերում եղած տարաձայնությունների և տատանումների հիմնական պատճառները։

Բուրժուական պատմագրությունը փորձում է ժխտել մեր կուսակցության ներսում ձևավորված ֆրակցիոն խմբերի գոյության փաստը, խմբեր, որոնց պլատֆորմը սկզբունքորեն հակադրվում էր կուսակցության գլխավոր գծին։

Բուրժուական կեղծարարները, աջ և «ձախ» ռևիզիոնիստները ոչ մի ջանք ու միջոց չեն խնայում, այսպես կոչված՝ «հետազոտություններ» կատարելու, որոնց նպատակն է կեղծել իսկությունը, աղավաղել մեր հասարակության, կուսակցության պատմությունը, ամեն կերպ փառաբանել Ռուսաստանի՝ վաղուց սնանկացած և պատմության թատերաբեմից դեն շպրտված մանրբուրժուական կուսակցությունները, օպորտունիստական խմբերին և հակալենինյան հոսանքներին, անտեսել ՍՄԿԿ հսկայական պայքարը դրանց դեմ։ Եվ պատահական չէ, որ վերջին տարիների ընթացքում արտասահմանում մասսայական տիրաժներով լույս են ընծայում Տրոցկու աշխատությունները։

Հակակոմունիզմի ջատագովները կեղծել ու կեղծում են լենինիզմի տակտիկան և ստրատեգիան, ձգնում են նսեմացնել մեծ Հոկտեմբերի պատմական վիթխարի նշանակությունը և անտեսել Լենինի վճռական ղեկավար դերը նոր հասարակարգի կառուցման գործում։ Նրանք ջանք չեն խնայում լենինիզմը նույնացնել տրոցկիզմի հետ։ Նրանց նպատակն է հակակոմունիստական թույն ներարկել մասսաներին, նրանց հեռու պահել հեղափոխական պայքարից։

Բանը հասնում է բացարձակ զրպարտության։ Ժամանակակից ռեակցիոն պատմաբան Լեոնարդ Շապիրոն իր Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը գրքույկում ձգնում է ապացուցել, որ, իբր, Տրոցկու գաղափարները «համընկնում են» լենինիզմին, որ, իբր, Տրոցկին նույնպես կողմնակից է եղել բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերաճելու քաղաքականությանը։ Մինչդեռ, նա իրականում ժխտում էր այն, առաջ քաշելով «առանց ցարի, կառավարությունը բանվորական» լոզունգը, որը խստորեն քննադատում էր Լենինը։

Դեռևս 1909 թ. Լենինը գրում էր. «Տրոցկու հիմնական սխալը՝ հեղափոխության բուրժուական բնույթի անտեսումն է։ Այդ հեղափոխությունից սոցիալիստական հեղափոխության անցնելու հարցի վերաբերյալ հստակ մտքի բացակայությունը» (ПСС, т. 17, стр. 381)։

Շապիրոն Լենինին զրպարտում է նաև այլ հարցերում. այսպես. նա փորձում է ապացուցել, որ Լենինը համամիտ է Տրոցկու՝ գյուղացիության վերաբերյալ ունեցած տեսակետին, բացասելով նրա հեղափոխական դերը։ Հայտնի է, սակայն, որ Լենինը, ինչպես և Մարքսն ու Էնգելսը, ճիշտ են գնահատել գյուղացիության դերը։ Կոմունիստական կուսակցությունը, Լենինը աշխատա-

վոր գյուղացիությանը համարել են բանվոր դասակարգի դաշնակիցը, նրանց դաշինքը դիտել որպես պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունք, սոցիալիզմի կառուցման վճռական նախապայման։

Բուրժուական պատմաբանները փորձել և փորձում են միասնության համար մեր կուսակցության սկզբունքային պայքարը ներկայացնել որպես առանձին խմբավորումների անսկզբունք պայքար կուսակցության ներսում, պայքար՝ «իշխանության համար»։ Անվիճելի է, որ անձնական մոմենտը չէր տրոցկիզմի դեմ պայքարի էությունը։ Այդ պայքարը մղվում էր Տրոցկու, տրոցկիստների և մեր կուսակցության բացարձակ մեծամասնության, երկու հակադիր գաղափարախոսությունների միջև. կամ պետք է կուսակցությունն ընդուներ տրոցկիստների տեսակետը, որն ավանտյուրիստական էր, և երկիրը տանում էր դեպի կործանում, կամ պետք է հավատարիմ մնար լենինյան ուսմունքին և ընթանար առաջադիմության ու սոցիալիզմի ուղիով։ Ուրիշ ելք չկար։ Եվ կուսակցությունը հաստատ ընթացավ վերջին ուղիով։

Տրոցկուն և տրոցկիզմն արդարացնելու բացարձակ փորձեր եղել են Չեխոսլովակիայում։ Այսպես. «Պատմությունը և արդիականությունը» հանդեսը տպագրեց պատմաբան Վացլավ Վեբերի Լև Դավիդովիչ Տրոցկի խորագիրը կրող հոդվածների շարքը, որի ներածականում ընդգծված էր. «Լ. Դ. Տրոցկու մասին մինչև վերջերս խոսվում էր քիչ թե շատ աղճատված» և հետո՝ «ներկայումս ոչ լրիվ, ոչ էլ ճիշտ կարելի է համարել այդ դատողությունները» (К событиям в Чехословакии, М,. 1968, стр. 37)։ «Ռևիզիոնիզմի մասին», «Ռեպորտյորում» հրապարակված հոդվածում Ստանիսլավ Բուդինն արտահայտել է իր քաղաքական հավատամքը։ «Ներկայումս մոդա չէ տրոցկիստ անվանելով որևէ մեկին հայհոյելը, քանի որ տրոցկիզմը վաղուց դադարել է վտանգավոր լինելուց»։

Աջ, հակասոցիալիստական ուժերը և իմպերիալիստական լագերից նրանց ոգեշնչողները կատաղի հարձակումներ են գործում Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության, նրա գաղափարական և կազմակերպական սկզբունքների դեմ։ Այսպես, չեխ գրող Յան Պրոխազկան Ֆրանս պրես գործակալության թղթակցին տված ինտերվյուի ժամանակ ուղղակի հայտարարեց, թե «ես չեմ պատկերացնում դեմոկրատիզացիա, առանց օպոզիցիայի»։

Մեկ ուրիշ հրապարակախոս՝ Ի. Գաեկն, ավելի հեռուն էր գնում։ Նա առաջարկում էր կանոնադրությունից հանել կուսակցությունում ֆրակցիաների և խմբավորումների անթույլատրելիության վերաբերյալ կետը (տե՛ս Ս. Սելյուկի հոդվածը Կուսակցությունների ուժը լենինյան միասնության մեջ է, «Правда», 25 հուլիսի 1968)։ Այն, ինչ իր ժամանակին պահանջում էին տրոցկիստները։ Դժվար չէ կռահել, որ դեմոկրատական ցենտրալիզմի, կուսակցության դեմոկրատացման պատրվակով արվող նման առաջարկությունները հետապնդում են մարքսիստական կուսակցությունների դեմոկրատական սկզբունքները խեղաթյուրող, նրանց միասնությունը քայքայող նպատակներ։

Տրոցկիզմի դեմ պայքարի հարցի շուրջ, մասնավորապես Ստալինի անձի պաշտամունքի քննադատությունից հետո, արտասահմանում աղմկեց նաև դաշնակցական մամուլը։ Դաշնակ կեղծարարները, կասկածի տակ առնելով մեր կուսակցության սկզբունքային պայքարը տրոցկիզմի և, առհասարակ, հակալենինյան հոսանքների և խմբավորումների դեմ, ցանկանում են նսեմացնել տարիների և տասնամյակների այն մեծ գործը, որ կատարել է ՍՄԿԿ-ն իր շարքերի համախմբվածության և ամրապնդման համար։



Հիմա էլ դեռ դաշնակները «քննադատում են» ՌԿ(բ)Կ X համագումարի որոշումները, այն համագումարի, որը մշակեց կուսակցության միասնության լենինյան ծրագիրը։ Նրանք մեկ անգամ չէ, որ հայտարարել են, թե ՌԿ(բ)Կ X համագումարը «վերացրեց կուսակցական դեմոկրատիան» (տե՛ս «Յուսաբեր», 17 հուլիսի, 1963 թ.)։

Դաշնակների հասկացողությամբ կուսակցության ներսում կազմալուծիչ ֆրակցիաների և խմբավորումների արգելակումը դեմոկրատիայի վերացում է. ճիշտ այդպես էին դատում նաև տրոցկիստները։ Դաշնակները հարձակումներ են գործում ՍՄԿԿ կառուցման լենինյան սկզբունքների դեմ, հուսադրում իրենց, թե կոմունիստական կուսակցությունները, ինչպես և ՍՄԿԿ, հարկադրված կլինեն իրենց շարքերում հանդուրժելու ֆրակցիաների ազատություն, որ այդ կուսակցությունները, վերջ ի վերջո, կվերափոխվեն աջ սոցիալ-դեմոկրատական «ընկերավարական կուսակցություններու», թե ՍՍՀՄ-ում բացառված չէ մեկից ավելի կուսակցությունների երևան գալը։ Դաշնակների օրգանի էջերում կարդում ենք. «Եթե բոլշևիզմը խորապես հանդուրժելի և ընդունելի համարեր... քննադատությունը... թույլ կտար, եթե ոչ երկրորդ քաղաքական կուսակցություն մը, առնվազն ընդդիմադիր ճակատի մը կազմությունը՝ նույնինքն համայնավար կուսակցության ծոցին մեջ» («Յուսաբեր», 19 հոկտեմբերի, 1962 թ.)։

Իր շարքերի միասնության համար ՍՄԿԿ պայքարի պատմությունը ծուռ հայելու մեջ է ներկայացված Լևոն Մարտիրոսյանի Դասակարգային կռիվներու գիծը ազգերու պատմության մեջ գրքում (Բեյրութ, 1963 թ.)։

Անտեղյակ իրողությանը, դաշնակ գրչակները փորձում են խեղաթյուրել պատմությունը, բամբասանքն ու առեկոսները ներկայացնել որպես փաստարկ։ Նրանք իրենց տերերի նման մոռանում են, որ Լենինը միշտ արժանի հակահարված է տվել Տրոցկուն, վերջինիս մերկացնելով որպես բոլշևիկների հակառակորդ, ֆրակցիոներ և պառակտիչ։

«...Տրոցկին,— գրել է Լենինը,— իրեն պահում է որպես ստորագույն կարիերիստ և ֆրակցիոներ... Շաղակրատում է կուսակցության մասին, իսկ իրեն պահում է բոլոր այլ ֆրակցիոներներից ավելի վատ» (ПСС, т. 47, стр. 188)։

Իրական փաստերն, այսպիսով, անհերքելիորեն ցույց են տալիս, որ ՍՄԿԿ պայքարն ընդդեմ օպոզիցիոն խմբերի և խմբավորումների ուներ սկզբունքային նշանակություն։

2

Հեղափոխական մարքսիստական կուսակցությունը կարո՞ղ է լռությամբ անցնել իր միջավայրում ծագող սկզբունքային տարաձայնությունների կողքով, չհաղթահարել դրանք։

Ո՛չ, չի կարող։

Էնգելսն ասում էր, որ կուսակցության ներսում հակասությունները երկար ժամանակով կոծկելն անհնար է, որ այդ հակասությունները պայքարով են լուծվում։

Պատմությունն անհերքելիորեն ցույց է տվել, որ ոչ մի հեղափոխական կուսակցություն չի կարող գոյություն ունենալ, առավել ևս զարգանալ, եթե նա իր շարքերում հանդուրժում է անսկզբունք խմբակայնությունն ու ֆրակցիոնականությունը։ Թույլ տալ ֆրակցիոն խմբերի և խմբավորումների ազա-

տուցյուն, այդ նշանակում է կուսակցությունը տրոհել առանձին կենտրոնների, թուլացնել, վերջին հաշվով, քայքայել այն։

«Սեփական շարքերում,— ասում է Լենինը,— ունենալով մենշևիկներ, ռեֆորմիստներ, չի կարելի հաղթել պրոլետարական հեղափոխության մեջ, չի կարելի պաշտպանել այն» (Երկեր, հ. 31, էջ 479)։ Մեր կուսակցությանը հաջողվեց ստեղծել միասնություն և համախմբվածություն այն բանի շնորհիվ, որ իր շարքերը մաքրեց օպորտունիստներից, լիկվիդատորներից և մենշևիկներից։

Պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում օպոզիցիոն, հակալենինյան խմբերի դեմ պայքարը օբյեկտիվ անհրաժեշտություն է, դասակարգային պայքարի արտահայտություն։ Լենինն իր Մի քայլ առաջ, երկու քայլ ետ աշխատության մեջ գրում է, որ կուսակցության «...զարգացումն իրոք ընթանում է դիալեկտիկական ուղիով, հակասությունների ուղիով» (Երկեր, հ. 7, էջ 530)։

Նոր իմաստ ստացավ միասնության գաղափարը, երբ կոմունիստական կուսակցությունը կանգնեց իշխանության գլուխ և երկրի, ժողովրդի բախտը վերցրեց իր ձեռքը։ Միասնության շնորհիվ լենինյանները բռնեցին պատմության դաժան քննությունը։ Ռուսաստանում գործող մյուս բոլոր կուսակցությունները չդիմացան ժամանակի փորձությանը և հեռացան պատմական թատերաբեմից։ Կոմունիստական կուսակցությունը մնաց միակը երկրում։ Այդպիսի մենաշնորհային դիրքը հղի էր կուսակցության համար մեծ վտանգներով, եթե այն չամրապնդեր, չհամախմբեր իր շարքերը, չվտարեր նրանց, ովքեր դեմ էին իր գլխավոր գծին։

Լենինը գտնում էր, որ պետական իշխանությանը տիրելու համար անհրաժեշտ է կուսակցությունից անպայման վտարել ոչ միայն մենշևիկներին, ռեֆորմիստներին, այլ կարող է նույնիսկ օգտակար լինել այն հիանալի կոմունիստների հեռացումը, որոնք ընդունակ են տատանվելու և ցուցաբերում են տատանումներ ռեֆորմիստների հետ «միասնության» կողմը, նրանց հեռացումը բոլոր պատասխանատու պոստերից։ Լենինն ասում էր, որ լինում են մոմենտներ, առանձնապես հեղափոխության նախօրյակին և նրա հաղթանակի համար մղած պայքարի ժամանակ, երբ կուսակցության ներսում փոքրագույն տատանումներն ընդունակ են կործանելու ամեն ինչ, վիժեցնելու հեղափոխությունը, իշխանությունը խլելու պրոլետարիատի ձեռքից, որովհետև այն դեռևս կայուն չէ։ «Եթե տատանվող առաջնորդները մի կողմ են հեռանում այդպիսի ժամանակ, դա ո՛չ թե թուլացնում, այլ ուժեղացնում է... հեղափոխությունը» (Երկեր, հ. 31, էջ 481)։

Մեր կուսակցությունը ո՛չ միայն համախոհների, այլև միասնաբար գործողների կուսակցություն է. իսկ գործողությունների միասնությունն անհնար է, առանց կուսակցության շարքերում ամրակուռ կարգապահության։ Կուսակցական և պետական կարգապահության խախտումը մեծ չարիք է, որը վնաս է հասցնում կուսակցությանը։ Կուսակցական կարգապահության ժխտումը Լենինը հավասարազոր էր համարում պրոլետարիատի լիակատար զինաթափմանը՝ հօգուտ բուրժուազիայի։

Կարգապահությունը կուսակցությանն անհրաժեշտ է ո՛չ միայն պրոլետարական հեղափոխության և սոցիալիստական հասարակարգի հաստատման



ժամանակ, այլև պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումից հետո, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ընթացքում։

«Փորձն անհերքելիորեն ուսուցանում է,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— որ գիտակցական ամուր կարգապահությունը կուսակցությանը հարկավոր է թե՛ այն ժամանակ, երբ նա մասսաներին տանում է դեպի հեղափոխություն, թե՛ այն ժամանակ, երբ նա մասսաների գլուխն անցած պայքարում է սոցիալիստական հասարակարգի ստեղծման համար, թե՛ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում» (տե՛ս «Սովետական Հայաստան», 30 մարտի, 1968 թ.)։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն համարձակորեն, առանց անձը և անցյալի ծառայությունները հաշվի առնելու, քննադատում է կուսակցության և պետության այն գործիչներին և այն աշխատողներին, ովքեր խախտում են կուսակցական կարգապահությունը, շեղվում դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքներից, կտրուկ միջոցներ ձեռք առնում բոլոր նրանց նկատմամբ, ովքեր իրենց գործողություններով և արարքներով հակասում են կուսակցության գծին։ Դրանից կուսակցության միասնությունը միայն շահում է։

Միաժամանակ, ինչպես նշեց ՍՄԿԿ XX համագումարը, կուսակցությունը դեմ է, որ ռեպրեսիաներ են գործադրվում այն մարդկանց և աշխատողների նկատմամբ, ովքեր հայտնում են իրենց, մյուսներից տարբեր, կարծիք։

Կուսակցությունը տրոցկիստների և աջ ուկլոնիստների նկատմամբ կազմակերպչական միջոցների դիմեց ոչ այն բանի համար, որ նրանք կուսակցության քաղաքականության վերաբերյալ, այս կամ այն հարցի քննության ժամանակ, իրենց կարծիքն են հայտնել, այլ այն բանի համար, որ նրանք հանդես են եկել ընդդեմ կուսակցության և նրա Կենտկոմի բացարձակ մեծամասնության կողմից ընդունած որոշումների, ձգտել ձախողել դրանց իրականացումը, պայքարել կուսակցության համագումարներում կոլեկտիվ մշակած կուսակցության գլխավոր գծի դեմ։

Կառավարող կուսակցությունը, իհարկե, չի կարող հրաժարվել նաև ռեպրեսիաներ գործադրելուց։ Սակայն ե՞րբ և ո՞ւմ դեմ. «Ռեպրեսիաները...,— ասված է կուսակցության XII կոնֆերանսի բանաձևում,— թելադրվում են հեղափոխական նպատակահարմարությամբ, երբ բանը վերաբերում է իրենց դարն ապրած այն խմբերի ճնշելուն, որոնք փորձում են գրավել պրոլետարիատի՝ նրանցից նվաճած հին դիրքերը» (ՍՄԿԿ-ն բանաձևերում ու որոշումներում, I մաս, էջ 863)։ Բայց, ասված է այդ նույն բանաձևում, կուսակցական կազմակերպությունները չպետք է գերագնահատեն ռեպրեսիաների դերը։

Անհատի պաշտամունքի տարիներին կոպիտ կերպով խախտվեց այդ սկզբունքը. համոզման և պարզաբանման լենինյան մեթոդների փոխարեն գործադրվեցին անօրինականություններ և ռեպրեսիաներ, որոնց հետևանքով կուսակցությունն ու ժողովուրդը քիչ զոհեր չունեցան։ Կուսակցությունը հետագայում, հատկապես XX համագումարից հետո, վճռական միջոցներ ձեռք առավ սոցիալիստական օրինականության խախտման և իշխանության չարաշահման երևույթներին վերջ տալու համար։

* * *

Տարաձայնությունները կուսակցության ներսում, ինչպես տեսանք, անխուսափելի են, իսկ քանի կա տարաձայնություն, հնարավոր է նաև պառակտում։ 1921 թ. խոսելով արհմիութենական շարժման պառակտումների քաղա-

քական վտանգի մասին, Լենինն ասում էր, թե ամեն մի, նույնիսկ չնչին, տարակարծություն կարող է քաղաքականապես վտանգավոր դառնալ, եթե հնարավորություն կա, որ այն, աճելով, կփոխարկվի պառակտման և այն էլ այնպիսի պառակտման, որ կարող է դեպի կործանում տանել ամբողջ քաղաքական շենքը։

Ահա թե ինչու բոլշևիկները, լենինյանները կուսակցության ստեղծման առաջին իսկ օրից վճռականորեն հանդես են եկել օպորտունիստական, ֆրակցիոն խմբերի և խմբավորումների դեմ, պաշտպանել կուսակցության շարքերի միասնությունը։ Պատմական իրադարձությունների ամբողջ ընթացքը՝ կուսակցության II համագումարից մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակը և նրանից հետո, հաստատեց նոր տիպի կուսակցության, նրա գաղափարական և կազմակերպական միասնության անհրաժեշտության մասին լենինյան ուսմունքի ճշտությունը, Լենինի սկզբունքային պայքարը մարքսիզմի անաղարտության համար։

Պատմական փորձն ապացուցեց, որ մեր կուսակցությունը կարողացավ կատարել բանվոր դասակարգի ղեկավար դերը և նրան հաղթանակի հասցնել շնորհիվ այն անխնա և անողոք պայքարի, որ նա մղել է ընդդեմ օպորտունիզմի, հակալենինյան հոսանքների և խմբավորումների, հանուն մարքսիզմ-լենինիզմի և իր շարքերի համախմբվածության։

Միասնության համար ՍՄԿԿ պայքարի փորձը միջազգային նշանակություն ունի։ Եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունները օգտագործել և օգտագործում են այդ փորձը իրենց շարքերի միասնության և համախմբվածության համար մղվող պայքարում։



Հ. Գ. ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ

# Կ. ՄԱՐՔՍԸ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԾԱԳՄԱՆ ՄԱՍԻՆ

Աշխատանքի և հասարակության ծագման հարցը ոչ միայն հնէաբանական պրոբլեմ է, այլև արդիական։ Լենինը Էնգելսի Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը հետազոտությունն անվանել է ժամանակակից սոցիալիզմի հիմնական երկերից մեկը, որտեղ հասարակականպատմական արմատական երևույթների և հարաբերությունների ծագման խնդիրը քննված է պատմական զարգացման տեսանկյունից։ Լենինյան տվյալ բնութագրումը սույն հոդվածում լուսաբանվող պրոբլեմի մեթոդոլոգիական հիմքն է։

Ներկայումս ավելի ու ավելի հրատապ է դառնում աշխատանքի և հասարակության ծագման տեսական լիակատար մշակումը, որովհետև դրա հետ է կապված գիտական սոցիալիզմի ակտուալ խնդիրների լուսաբանումը։ Պրոբլեմի պարզաբանումից է կախված արտադրության նախնադարյան եղանակի գոյության, ժամանակի որոշման ու զարգացման, ինչպես նաև նախնադարյան հասարակության պատմության պարբերացման հարցերի լուծումը։ Դրա հետ է առնչվում հասարակության զարգացման նախնական աստիճանների, որպես ինչ-որ վեցերորդ «նախաֆորմացիա» առանձնացնելու գիտական դիսկուսիան (տե՛ս А. И. Перщиц, Актуальные проблемы советской этнографии. «Советская этнография», 1964, № 4, стр. 17).

Ազգագրական, հնագիտական, մարդաբանական գիտությունների տվյալների անբավարար ընդհանրացումը, բիոսոցիալ պրոցեսների յուրահատկությունների անտեսումը մարդու, աշխատանքի և հասարակության երևան գալու բնական ու պատմական գործոնների հարաբերակցության ոչ-պատշաճ ուսումնասիրությունը հնարավորություն չէին տալիս բացահայտելու նախնադարյան դարաշրջանի հասարակական արտադրության զարգացման առանձնահատկությունները։ Ինչպես նկատել է սովետական ականավոր մարդաբան Մ. Նեստուրխը, մեր փիլիսոփաները դեռևս ժամանակ չեն գտել զբաղվելու անտրոպոգենեզի պրոբլեմի հետազոտմամբ և մեծ պարտք ունեն մարդու վերաբերյալ գիտությանը (տե՛ս М. Ф. Неструх, Дарвин и сэвременные проблемы антропогенеза. «Вопросы антропологии». МГУ, 1960, вып. 2, стр. 16).

Ազգագրագետները, հետազոտելով նախնադարյան հասարակության արտադրաեղանակը, ուշադրությունը սևեռում են ուսումնասիրվող ցեղերի ու ժողովուրդների ազգագրական բնութագրության, նրանց նյութական հասարակական, հոգևոր կուլտուրայի վրա, անտեսում արտադրության տնտեսագիտական վերլուծությունը։ Տնտեսագետներն արտադրությունը առավելապես քննում են դասակարգային հասարակության մեջ։ Այսպիսով, նախնադարյան հասարակության հետազոտության քաղաքատնտեսական ասպեկտը, որի հետ կապված է հասարակության ծագումը, չքանում է հետազոտողների տեսադաշտից (տե՛ս В. М. Бахт, К вопросу о структуре первобытного производства, «Вопрэсы истории», 1960, № 7, стр. 61).

Մարդու ծագման ու զարգացման դարաշրջանին վերաբերող աշխատանքի կամ սեփականության լինելության, իրավունքի կամ էսթետիկական նորմերի առաջացման, ամուսնության և ընտանիքի զարգացման որևէ հարց կամ պրոբլեմ հնարավոր է ճիշտ ուսումնասիրել միայն մարքսիստական մեթոդոլոգիայի տեսանկյունից։

Դրա համար հասարակության առաջացման պրոցեսի հետազոտությանը վերաբերող հարցերից, առաջին հերթին, անհրաժեշտ է պարզել և ուսումնասիրել տվյալ խնդրի վերաբերյալ Մարքսի հայացքները, զուգորդելով դրանք գիտության ժամանակակից տվյալների հետ։ Մարքսը ցույց է տվել հանրության նախնական ձևերի դերն ու նշանակությունը սեփականության և մարդկային հարաբերությունների լինելության մեջ։ «Բնականորեն գոյացած ցեղային հանրությունը կամ թե հոտը, առաջին նախադրյալն է (ազգակցությունն ըստ արյան, լեզվի, բարքերի և այլն) մարդկանց կողմից յուրացնելու օբյեկտիվ պայմանները ինչպես իրենց կյանքի, այնպես էլ այն գործունեության, որով վերարտադրվում է այդ կյանքը և ստանում առարկայական ձևեր» (К. Маркс, Формы предшествующие капиталистическому производству, 1940, стр. 5).

Հետագայում Մարքսն ավելի մանրամասն է ուսումնասիրում քաղաքակրթությանը նախորդած հանրության գոյաձևերը։ Կոլեկտիվը բնականորեն առաջացած որոշակի գոյաձև է, որը համախմբում է առանձին արտադրողների աշխատանքը, ստեղծում արտադրության հանրային միավորում։ Գյուղական նահապետական արտադրության մեջ միագումար աշխատանքը Մարքսն անվանում է «ընտանեկան աշխատանք»։ Այստեղ աշխատանքի սեռային ու տարիքային բաժանման հանրային-աշխատանքային ֆունկցիաները համընկնում են ընտանիքի անդամների գործունեության հետ, որովհետև դրանք ընտանիքի ֆունկցիաներն են, որոնք ապրանքային արտադրության նման, ունեն իրենց սեփական, բնականորեն աճած աշխատանքի բաժանումը։

Այս դրույթը հետագայում իր Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը գրքում ավելի է զարգացնում Ֆ. Էնգելսը։ Ըստ Էնգելսի, հասարակության վաղ շրջանում առաջացած հանրության ձևերը պայմանավորված են մարդկանց տնտեսական գործունեությամբ. առաջ է գալիս նախնադարյան կոմունիստական ընդհանուր տնային տնտեսություն, որը որոշում է «ընտանեկան համայնքի առավելագույն չափերը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 21, стр. 43).

Ավելի ուշ Մարքսը անդրադարձավ համայնական տոհմային կարգերի, համայնքի անդամների միջև հաստատված բնական կապերի հանգամանալից բնութագրմանը։ Այստեղ,— նկատում է Մարքսը,— արտադրողի առանձին



աշխատանքի ծախսումը դրսևորվում է որպես ընդհանուր, համատեղ աշխատանքի անմիջական մասը կազմող հասարակական աշխատանքային ուժի ծախսում (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч: т. 19, стр. 376—377, 389—392)։ Նախնադարյան համայնքի արտադրողը դեռևս չի բաժանվել, չի առանձնացել իրենց (տոհմի) անդամների բնական զատվածությունից և նրա աշխատանքի ծախսումը հանրօգուտ ձև է ընդունում միայն որպես կոլեկտիվ աշխատանքի ծախսման անմիջական մաս։ Մարդկանց բնականորեն առաջացած ընդհանրությունը (կոլեկտիվը), մարդկային պրիմիտիվ հարաբերությունների տնտեսական հիմքի դրսևորման նախադրյալ է, նյութական գործոն։

Հոտային, իսկ այնուհետև տոհմային հարաբերությունները, կենտրոնացնելով աշխատանքը նախնադարյան մարդկանց կոնգլոմերատում, նպաստեցին նախնադարյան-համայնական, անմիջականորեն հանրայնացված ձևերի ստեղծմանը, համայնքի ներսում որոշակի տնտեսական, ընտանեկան ու կենցաղային կապերի կազմավորմանը։

Այսպես, աշխատանքի անմիջականորեն հանրայնացված ձևերի առաջացման առաջին աստիճաններին է վերաբերում սինանտրոպների կոլեկտիվ կյանքն ու գործունեությունը։ Սինանտրոպները պատրաստում էին աշխատանքի քարե պրիմիտիվ գործիքներ, նույնիսկ տնային գործածության առարկաներ, զբաղվում որսորդությամբ, օգտվում կրակից։ Այս ամենը վկայում է, որ նրանց մոտ կար աշխատանքի սեռային ու տարիքային բաժանում (տե՛ս С. А. Семенов, Значение труда для развития интеллекта в антропогенезе, «Советская антропология», 1959, № 2, стр. 41).

Աշխատանքի սեռային բաժանումը, իջևանավայրի առկայությունը, կենսամիջոցների պատշաճ չափով հայթայթումը ցույց են տալիս, որ նրանց մոտ գոյություն ուներ բաշխման և սպառման հանրային ձև (տե՛ս Л. Крживицкий, Хозяйственный и общественный строй первобытных народов, М—Л., 1925, стр. 85—86).

Սինանտրոպի կյանքի հոտային ընդհանրությունը, բնության հետ նրա միասնությունը, հողի նկատմամբ համայնական վերաբերմունքը, աշխատանքի ու որսի ընդհանուր միջոցները վկայում են ընդհանուր օգտագործման առարկաների նկատմամբ կոլեկտիվ սեփականության գոյությունը։

Սեփականության նման վաղ ձևը, ինչպես «որսի շրջանն Ամերիկայի վայրենի հնդիկ ցեղերի մոտ», Կ. Մարքսն անվանում էր «չսևեռված սեփականություն»։

Ճիշտ են հնդիկ պրոգրեսիվ հնագետ Ս. Կ. Դիկշիտը և չեխ ականավոր հետազոտող Ի. Աուգուստի դիտողությունները, որ սինանտրոպների մոտ գոյություն ունեն զարգացման որոշակի տնտեսական (պրիմիտիվ կոմունիստական ձևեր) (տե՛ս С. К. Дикшит, Введение в археологию, М., 1960, стр. 156 и И. Аугуст, З. Буриан. Жизнь древнего человека, Прага, стр. 19)։ Այդպիսի պայմաններում, հասկանալի է, որ հոտը հանդես է գալիս ո՛չ միայն որպես բիոլոգիական կատեգորիա, այլև, ամբողջությամբ վերցրած, հոտային ընկերակցություն, մարդկանց հանրային կազմակերպության նախնական ձև։

Բիոլոգիական օրինաչափությունները (միջխմբային ընտրություն) ներգործելով սպեցիֆիկ օբյեկտի— հոտի և ամուսնության, սեռային կապերի ձևի վրա, երևան են գալիս որպես աշխատանքի հասարակական ձևի դրսևորման նյութական նախադրյալներ (կրողներ)։ Դրա համար, ինչպես ճիշտ նկատում է Յա. Ռոգինսկին, զարգացման ինչ-որ խառն, միասնական բիոսոցիալ օրենքներ

բնության մեջ առհասարակ չկան (տե՛ս Я. Я. Рогинский, Методологи-
ческие основы антропологии. «Биологические науки», 1966, № 3,
стр. 10)։

Մարքսը, Էնգելսը, Լենինը հասարակության ծագումը բացատրում էին
զարգացման երկու գործոնով՝ աշխատանքով և բնականորեն առաջացած հան-
րությամբ կամ «մարդու արտադրությամբ» (ընտանիքով)։ Նախնադարյան
հասարակության գոյացման երկկերպությունը պայմանավորված է բուն աշ-
խատանքի առաջացման պրոցեսով ու բնույթով։ Այստեղ չի կարելի ընդունել
անտրոպոգենեզի աշխատանքային տեսությունը և միաժամանակ ժխտել
բնականորեն առաջացած հանրությունը («ընտանիքը»)՝ որպես աշխատանքի
ու հասարակության լինելության գործոն։ Աշխատանքը սոցիալական երևույթ
է, այստեղ սերունդների արտադրական փորձը ժառանգաբար չի փոխանցվում։

Ինչպես ցույց են տվել սովետական հետազոտողները (Ն. Յու. Վոյտո-
նիսը, Ն. Ա. Տիխը, Է. Գ. Վացուրոն, Գ. Զ. Ռոգինսկին, Ա. Գ. Սպիրկինը և ու-
րիշներ) աշխատունակության ձևերը կամ, ինչպես արտահայտվում էր Մարք-
սը՝ «աշխատանքի ունակություններն ու ձիրքերը» զարգանում են սոսկ հան-
րության որոշակի ձևի պայմաններում։ Աշխատունակությունը կուտակվում և
սերնդից սերունդ է հաղորդվում ոչ թե ժառանգության բիոլոգիական «մեխա-
նիզմի» շնորհիվ, այլ սոցիալական կյանքի միջոցով, որը հետագա սերունդ-
ներին է հաղորդում աշխատանքի գործիքների մեջ պարփակված կարողու-
թյուններն ու փորձը։ Դա անվիճելի փաստ է, որն ընդունում են նաև Արև-
մուտքի ականավոր պրոգրեսիվ հնագետները։

Այս փաստն ասում է, որ առանձին անհատի մոտ աշխատանք չի առաջա-
նում. զարգացման համար այն պահանջում է հասարակական որոշակիություն,
հանրության կոնկրետ ձևի առկայություն։ Կյանքում բնականորեն գոյացած
հանրությունը հանգեցնում է աշխատանքի տնտեսական, անմիջականորեն
հանրայնացված ձևերի առաջացման։ Առանց դրա չեն կարող լինել ո՛չ նախ-
նադարյան-համայնական աշխատանք, և ոչ ընդհանրապես համայնակարգ։

Երեսնական-քառասնական թվականներին մեր պատմագրության մեջ
տիրում էր այն կարծիքը, թե իբր խոշոր կենդանիների որսը հասարակական
արտադրության սկզբնական ձևն է։ Որսի հետ էին կապվում աշխատանքի հա-
սարակական ձևերի առաջացումը, մարդկանց միավորումն ու համագործակ-
ցումը կոլեկտիվներում, աշխատանքի գործիքների զարգացումը և այլն։ Որ-
սորդությունը դիտվում էր որպես ինչ-որ ընդհանուր նախնադարյան հասարա-
կության ծագման բոլոր չլուծված հարցերը լուսաբանող միջոց։

1950-ական թվականների կեսերին Բ. Ֆ. Պորշնևն իրավացիորեն նշեց,
որ այդ հայացքը «պատմական մատերիալիզմի բոգդանովյան-բուխարինյան
աղավաղումն է», քանի որ նախնադարյան որսի ժամանակ կատարվող աշխա-
տանքը սոսկ տեխնիկա-կազմակերպական բնույթի գործառություն է։ Այն
հանգեցնում էր նախնադարյան արտադրահարաբերությունների փոխարինմա-
նը, ԱՄՆ-ում տարածված «տեխնոլոգիական դետերմինիզմի» սկզբունքներին
(տե՛ս Б. Ф. Поршнев, К спорам о проблеме возникновения человече-
ского общества. «Вопросы истории», 1958, № 2, стр. 152).

Նախնադարյան ժամանակաշրջանում որսը չէր կարող անմիջականո-
րեն հանրայնացված աշխատանքի ձև լինել։ Որսորդների առանձին խմբերի
աշխատանքի արտադրանքը զարգացման նախնադարյան աստիճանի վրա սո-
վորաբար բաշխվում է տնտեսական ամբողջ միավորի (համայնքի, կոլեկտի-



վի) անդամներին, ինչպես և որսորդությանը չմասնակցած տղամարդկանց և
(անտառի մթերքներ-պտուղներ, արմատներ, միջատներ, մանր կենդանիներ,
մեղր և այլն հավաքող) կանանց միջև։ Որսորդությունը՝ որպես «արտադրու-
թյան առաջատար ձև» ի վիճակի չէ բացատրելու նախնադարյան հասարակու-
թյան մեջ գոյություն ունեցող բաշխման սիստեմը, որի հիմնական սկզբունքը՝
մարդու միասնությունն է բնության հետ, մարդու հարաբերությունը կյանքի
վերարտադրության նյութական օբյեկտիվ պայմաններին։

Նախնադարյան ժամանակահատվածում աշխատանքի բաժանումը որ-
սորդական խմբի ներսում հանդիսանում է աշխատանքի ո՛չ թե հասարակա-
կան, այլ տեխնիկա-կազմակերպական ձևը, որ Մարքսը դիտում է որպես ար-
տադրամիջ։ Աշխատանքի բաժանումը նախնադարյան որսորդության պրոցե-
սում նպատակ ուներ բնամթերք ստեղծել, ուր չէր դրվում դրա անմիջական
յուրացման խնդիրը։ Որսը համայնքի սեփականությունն էր և բաշխվում էր
նրա բոլոր անդամների միջև։ Դրությունն այլ է նախնադարյան մարդկանց
բնականորեն գոյացած հասարակական կազմակերպության որոշակի ձևերի
առկայության պայմաններում՝ տղամարդ-որսորդների և կին-հավաքողների
միջև՝ աշխատանքի սեռային բաժանման ժամանակ։ Այդ ձևը նպաստում է
(«հոտային», «ընտանեկան» և այլն) աշխատանքի ու արտադրանքի հաշվառ-
մանը, հասարակության բոլոր անդամների վերահսկողությանն ու բաշխմանը,
նախնադարյան արտադրողների ամեն տեսակ աշխատանքների ու «գործու-
նեության փոխանակման» կազմակերպմանը, որոշում տնտեսական միավորի
հասարակական-արտադրական կյանքը։ Ֆրանսիացի ազգագրագետ-կենդա-
նաբան Պֆեյֆերի նկարագրած Քալիմանթանի պունանների համայնքը բաղ-
կացած է 30 մարդուց։ Համայնքն ունի երեք ընտանիք, որոնց ղեկավարները
երեք եղբայրներ են՝ ամուսնացած վեց քույրերի հետ։ Աշխատանքը բաժան-
ված է համայնքի բոլոր անդամների միջև։ Համայնքում կան հոգևոր զենք—
սարքական պատրաստող, «դարբին», որը հարևան ցեղերից փոխանակու-
թյամբ ստացած մետաղից կոփում էր նետերի ծայրերը և դանակ (մանդոու),
կա նաև ասացող ու պարող, շաման և այլն։ Եղբայրները որսորդներ էին։
Որսի էին դուրս գալիս մենակ կամ խմբով։ Կանայք զբաղված էին ընտանի-
քով, անտառից մթերք հավաքելով։ Համայնքի անդամները որս էին անում,
թե աշխատում միասին կամ առանձին, յուրաքանչյուրի աշխատանքի արդյուն-
քը դառնում էր համայնքի բոլոր անդամների սեփականությունը (տե՛ս
П. Пфеффер, Бивуаки на Борнео, М., 1964, стр. 81).

Այստեղ ամուսնության և արենակցության հիման վրա անհրաժեշտա-
րեն առաջացած ընդհանրությունը իր բնույթով լոկալ է։ Աշխատանքի սեռա-
յին և տարիքային բաժանումն աշխատանքի հասարակական բաժանման դըր-
սևորումներից է, որտեղ յուրաքանչյուրի արտադրած արդյունքն ընդհանուր
բնույթ ունի և բավարարում է նրանց կենսական պահանջները։

Այսպիսով, նախնադարյան մարդկանց բնականորեն առաջացած հան-
րությունը (հոտ, տոհմական տոհմ, լոկալխումբ, ընտանիք) կազմավորման,
հանրայնացված ձևերի, հասարակական ու տնտեսական կյանքի դրսևորման
նյութական մոմենտներից է։ Դրա համար առանց երկկերպ զարգացման դիա-
լեկտիկան հետազոտելու (աշխատանքի և ընտանիքի)— անհնար է տալ հա-
սարակության ծագման մատերիալիստական բացատրությունը։ Ընտանեկան-
ամուսնական հարաբերությունների ծագման ու զարգացման հետազոտությու-

նը հնարավորություն է ընձեռում բացահայտելու նախնադարյան արտադրա-
հարաբերությունների առանձին փուլերը։
Ընտանեկան կապերն ու հարաբերությունները չպետք է անջատել աշխա-
տանքի կազմավորումից, նրա հասարակական ձևերից և դիտել դրանց նախոր-
դող սոցիոլոգիական ինչ-որ կատեգորիա, որովհետև վերջիններս առաջանում
են տոհմին նախորդող հասարակական գոյաձևից։ Այդպիսին է եղել նախնա-
դարյան մարդկային հոտը, որտեղ ամուսնական կապերն ազատ մերձեցման
(պրոմիսկուիտետ) բնույթ են կրել։ Հոտն այն սկզբնական օղակն էր, որի մեջ
ձևավորվում էր մարդկանց աշխատանքը։ Մարքսը Մորգանի Հին հասարակու-
թյուն գրքի առթիվ արած իր դիտողություններում նշել է. երկրագնդի տարբեր
մասերում գտնվող և ժամանակակից վայրենիների կողմից այլևս չգործածվող
քարե ամենակոպիտ գործիքները վկայում են մարդու ծայրահեղ պրիմիտիվ
վիճակի մասին, այն ժամանակ, երբ նա դուրս է եկել իր նախնական ապ-
րելակերպից և սկսել որպես ձկնորս տարածվել ցամաքային մասերում (տե՛ս
Архив Маркса и Энгельса, т. IX, стр. 38—39).
Մարդկանց ամուսնա-ընտանեկան և տոհմային հարաբերությունները
պայմանավորում են աշխատանքային հարաբերությունների ներգործությամբ։
Այդ իսկ պատճառով հասարակության ծագման հարցերը հետազոտելիս դրանք
չպետք է վերացարկել զարգացման պատմական որոշակի պայմանների ու
նախադրյալների կոմպլեքսից և դիտել որպես աշխատանքի առաջացմանը նա-
խորդող ինչ-որ սոցիալական կատեգորիա։ Մարքսն ու Էնգելսը արտադրական
հատկանիշով էին քննում հասարակության ծագման պրոբլեմը։
Մարդկային զարգացման հոտային աստիճանը մարդու, աշխատանքի և
հասարակության լինելության ժամանակաշրջանն է, «արտադրության նախա-
դրյալի» կազմավորման աստիճանը, հասարակության տոհմա-ցեղային ձևի
առաջացման պայմանը։ Դրա համար հոտային աստիճանը չի կարող անջատվել
վերջինից։
Ինչպես հոտի, այնպես և տոհմի հասարակական-տնտեսական հիմքը
մարդու միասնությունն է բնության հետ, որը դրսևորվում է արտադրամիջոց-
ների (ինչպես և հողի) ու տնտեսական միավորի ընդհանրությամբ։ Հոտա-
յին, տոհմային հասարակության մեջ տնտեսական ձևի միասնական նյութա-
կան նախադրյալը բնականորեն ձևավորված կոլեկտիվն է։ Այսպիսով, տոհ-
մային հասարակության տնտեսական կառուցվածքը չի կարելի դիտել որպես
ինչ-որ առանձին, վեցերորդ հասարակական-տնտեսական ֆորմացիա, որպես
«նախաֆորմացիա»։
Զարգացման հոտային և տոհմային աստիճանների տարբերությունը սո-
ցիալական իմաստով այն է, որ նախնադարյան մարդկային հոտը ներփակ,
մեկուսացած, յուրացնող տնտեսություն է սեռական կապերի հաստատուն
չդարձած կամ էնգելսի արտահայտությամբ՝ չկարգավորված ձևերով, իսկ
տոհմային հասարակությունը՝ սկզբնապես ամուսնական հարաբերություննե-
րով կապված համայնական տնտեսության ձև է։ Երկու դեպքում էլ բնական
կապերն արտադրողին թույլ չեն տալիս առանձնանալ, արգելակում են մաս-
նավոր (անհատական) աշխատանքի զարգացմանը, աշխատանքի հասարա-
կական բաժանմանը և, հետևաբար, հասարակության արտադրաուժերի զար-
գացմանը։ Սա նախնադարյան հասարակության հիմնական կոնֆլիկտն է, որն
աշխատանքի զարգացմանը համընթաց հանգեցնում է նրա խորտակմանը։

Հ. Հ. ՊՈՂՈՍՅԱՆ
Հայկական ՍՍՀ ներքին գործերի մինիստրի տեղակալ,
միլիցիայի երրորդ կարգի կոմիսար

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻԼԻՑԻԱՅԻ ՍՐԲԱԶԱՆ ՊԱՐՏՔԸ

Հոբելյանական նշանավոր տարում, 1967 թվականին, սովետական հա-
սարակայնությունը մեծ հանդիսավորությամբ նշեց նաև սովետական միլի-
ցիայի 50-ամյակը։ Եվ դա միանգամայն հասկանալի է։ Սովետական միլի-
ցիան ծնունդ առնելով Հոկտեմբերի բոցերի մեջ, իր գոյության կեսդարյա ժա-
մանակամիջոցում վիթխարի դեր է կատարել մեր իրավակարգը և օրինակա-
նությունը պահպանելու, սոցիալիստական պետության շահերը, սովետական
քաղաքացիների հանգիստն ու օրինական իրավունքները հանցավոր ոտնձգու-
թյուններից պաշտպանելու գործում։ Սովետական միլիցիայի պատվավոր և
ազնիվ աշխատանքը պատշաճորեն է գնահատվում սոցիալիստական հասա-
րակության մեջ, նրա համակողմանի գործունեությունը շոշափում է բազմա-
թիվ մարդկանց շահերը, որը տեղի է ունենում բնակչության հետ մշտական
շփման պայմաններում։
Սովետական (պրոլետարական) միլիցիան ստեղծվել է մեր մեծ առաջ-
նորդ Վ. Ի. Լենինի անմիջական նախաձեռնությամբ՝ 1917 թվականի նոյեմ-
բերի 10-ին։ Նրա կազմակերպմանը և ամրապնդմանը ակտիվ մասնակցել են
կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ականավոր
գործիչներ Ֆ. Է. Ձերժինսկին, Յա. Մ. Սվերդլովը, Մ. Ի. Կալինինը և շատ
ուրիշներ։
Եթե պրոլետարիատն ուզում է ստեղծել իր պետությունը, դեռևս 1917
թվականի մարտին նշել է Լենինը, ապա նա պետք է փշրի գոյություն ունեցող
բուրժուական պետական մեքենան, ոտքի հանի ու զինի բոլոր չքավորներին,
ստեղծի իր կազմակերպությունը՝ սովետները, ունենա իր կազմակերպված
զինված ուժը՝ միլիցիան։
Առաջնորդի այս հստակ ցուցումը կուսակցությունը դրեց սոցիալիստա-
կան պետության աշխատանքի հիմքում։ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ կազմ-
ված առաջին սովետական կառավարության 13 ժողկոմատների թվում ստեղծ-
վեց նաև ներքին գործերի ժողովրդական կոմիսարիատը, որի վրա դրվեցին
հեղափոխական կարգուկանոնի, բանվորների ու գյուղացիների հեղափոխա-

կան իրավունքների, քաղաքացիների կյանքի, ժողովրդի ունեցվածքի պահպանության, հանցագործությունների, սպեկուլյացիայի, խուլիգանության, թափառաշրջիկության դեմ պայքարի պարտականությունները։ Այնուհետև, երեք օր անց, Վլադիմիր Իլյիչի ցուցումով, ներքին գործերի ժողովրդական կոմիսարիատը հրապարակեց պրոլետարական միլիցիայի ստեղծման մասին դեկրետը։

Դժվար է գերագնահատել սովետական միլիցիայի մարտական ծառայությունները մեր երկրում սոցիալիստական կարգի ամրապնդման գործում։ Իր ստեղծման առաջին իսկ օրից միլիցիան արթուն պահապանի պես կանգնած է հեղափոխության և սոցիալիզմի նվաճումների պաշտպանության դիրքերում, հավատարմությամբ է կատարում Վ. Ի. Լենինի պատգամները, կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ցուցումները։

Քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի տարիներին, բանվորա-գյուղացիական կարմիր միլիցիան անխնա մերկացրել և հողմացրիվ է արել երկրի քաղաքներում և գյուղերում բույն դրած վտանգավոր հանցագործներին, կտրուկ միջոցներ ձեռնարկել երիտասարդ սովետական հանրապետության համար մեծ չափերի հասնող անապաստանների և թափառաշրջիկների վտանգավոր խժդժությունների դեմ, ճիշտ ճանապարհի վրա կանգնեցրել կյանքի քառուղիներում մոլորված հազարավոր մարդկանց։

Հին հասարակության բոլոր տարրերը, որոնք Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակից հետո առհավետ զրկվել էին երբեմնի տնտեսական և քաղաքական արտոնություններից, իրենց քայքայիչ գործունեությամբ ամեն կերպ օգնում էին օտարերկրյա ինտերվենտներին և ներքին հակահեղափոխությանը՝ կրակե օղակի մեջ խեղդելու երիտասարդ սովետական հանրապետությունը։ Պատմական այդ դժվարին պայմաններում բանվորա-գյուղացիական կարմիր միլիցիան, նորաստեղծ համառուսաստանյան Արտակարգ Հանձնաժողովի հետ միասին, հանդիսացավ այն երկաթե ձեռքը, որն անհրաժեշտ էր հաղթանակած պրոլետարիատին։

Միլիցիայի ջոկատներն հերոսաբար մարտնչում էին ռազմաճակատներում, ամենուրեք ուժերի գերմարդկային լարումով ապահովում հեղափոխական կարգուկանոն, անում ամեն ինչ, որպեսզի անսասան լինի ռազմաճակատում մարտնչող բանակի թիկունքը, որպեսզի առանձնացված հացն ու հանդերձանքը հասնի կարմիր ռազմիկներին։

Սովետական միլիցիան իր պատմության մեջ ավելի փայլուն էջեր է գրել ժողովրդական տնտեսության վերականգնման, երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման, Հայրենական մեծ պատերազմի, ինչպես նաև հետպատերազմյան տարիներին։ Քաջությունն ու անվեհերությունը, սոցիալիստական ջերմ հայրենասիրությունը և հումանիզմը, որոնք սովետական միլիցիայի շարքայինների և սպաների բնորոշ գծերն են, միշտ նրանց ուղեկցում են՝ իրենց հայրենանվեր աշխատանքում։

Սովետական կարգերի ամրապնդման, սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում արժանի ավանդ է ներդրել ու ներդնում է Սովետական Հայաստանի միլիցիան, որը ծնունդ է առել 1920 թվականին Հայաստանում սովետական կարգեր հաստատելուց անմիջապես հետո և հանդիսանում է սովետական միլիցիայի մարտական ջոկատներից մեկը։

Հանրապետության միլիցիայի կազմակերպման, նրա անձնակազմի գաղափարական դաստիարակության և մարտական ուսուցման հարցերով ան-



ձամբ զբաղվել են Հայաստանի կոմկուսի ականավոր գործիչներ Ա. Մյասնիկյանը, Գ. Աթարբեկյանը, Ս. Կասյանը, Ա. Մռավյանը, Ս. Տեր-Գաբրիելյանը, Ա. Նուրիջանյանը և ուրիշներ։ Հայաստանում սովետական իշխանության գոյության առաջին տարիներին, երբ պահանջվում էր զինված պայքար մղել բանդիտիզմի դեմ, բազմաթիվ կոմունիստներ և անկուսակցական ակտիվիստներ են գործուղվել միլիցիայում աշխատելու, նրա անձնակազմի քաղաքական դաստիարակության գործը բարելավելու համար։

Սովետական Հայաստանի միլիցիայի շարքայիններն ու սպաները այժմ էլ հարգանքով են հիշում միլիցիայի նախկին աշխատողներ Շ. Դեմիրճյանին, Ա. Աբովյանին, Ի. Առաքելյանին, Խ. Գալունցին, Բ. Ալիևին, Ա. Խաչատրյանին, Թ. Շահնազարյանին, Ն. Բարաբանովին, Բ. Մարտիրոսյանին, Հ. Դիլանյանին և շատ ուրիշների, որոնք հերոսաբար զոհվել են քաղաքացիական պատերազմում, բանդիտիզմի և կուլակության դեմ մղած զինված պայքարում։

Հայաստանի միլիցիայի մեծ թվով աշխատողներ Հայրենական պատերազմի տարիներին մեկնել են ռազմաճակատ և քաջաբար մարտնչել գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ։ Նրանցից են՝ Ա. Սարգսյանը, Մ. Հայրապետյանը, Կ. Վարդանյանը, Ա. Մելքոնյանը և ուրիշներ, թվով մոտ երեք հարյուր հոգի, որոնցից շատերը հայրենիքի պատվի և անկախության համար մղված օրհասական ճակատամարտերում ընկել են հերոսի մահով։

Միլիցիայի Գորիսի շրջանային բաժանմունքի շարքային միլիցիոներ Սուրեն Առաքելյանը 1943 թվականին Նովոռոսիյսկի տակ մղվող դաժան ճակատամարտի ժամանակ, Ալեքսանդր Մատրոսովի պես կրծքով ծածկել է թըշնամու գնդացրափողը և իր կյանքի գնով ապահովել սովետական ստորաբաժանումների առաջխաղացումը, որի համար նրան հետմահու շնորհվել է Սովետական Միության հերոսի կոչում։

Կուսակցությունը և կառավարությունը բարձր են գնահատում միլիցիայի հայրենանվեր աշխատանքը։ Բավական է ասել, որ 1917—1922 թվականներին հեղափոխական ակտիվ աշխատանքի համար շքանշաններով և մեդալներով պարգևատրվածների թվում կան Հայաստանի միլիցիայի 20 նախկին աշխատող։

Մենք ջանում ենք միլիցիայի երիտասարդ կադրերին դաստիարակել վետերանների հեղափոխական տրադիցիաներով, որպեսզի նրանք ևս լավ տիրապետեն իրենց գործին, լինեն քաջակորով և, որն ամենագլխավորն է, ազնըվաբար ծառայեն սոցիալիստական հայրենիքին, մայր ժողովրդին։

Հայաստանի միլիցիայի օրգանները, առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի 1966 թվականի հուլիսի՝ «Հանցագործության դեմ մղվող պայքարն ուժեղացնելու միջոցառումների մասին» որոշումով, վերջին տարիներին վերակառուցել են իրենց գործունեությունը և հասարակայնության ակտիվ օգնությամբ ու աջակցությամբ պայքարում են հանրապետության քաղաքներում և գյուղերում պատշաճ կարգուկանոն ստեղծելու համար։ Նրանք շոշափելի արդյունքների են հասել մեծ Հոկտեմբերի 50-ամյակի պատվին ստանձնած իրենց պարտավորությունների կատարման գործում։ Անցած տարի հանրապետությունում առավել լարված աշխատանք ծավալվեց կատարված քրեական հանցագործությունների բացահայտման ասպարեզում, զգալիորեն պակասեցին հանցագործությունների առավել վտանգավոր տեսակները (սպանությունը, ծանր մարմնական վնասվածքներ հասցնելը, պետական ու հանրային ունեցվածքի գողությունը և այլն)։ Կատարված հանցագործությունները բացահայտվում են ավե-

լի արագ և օպերատիվ, հանցագործը ժամանակ չի ունենում թաքցնելու իր գործողությունների հետքերը։

Մեծ հոբելյանի պատվին ծավալված մրցությունում առանձնապես լավ ցուցանիշների հասան Երևանի Լենինյան շրջանի, Կիրովականի քաղաքային, Հրազդանի, Թալինի, Մարտունու, Բասարգեչարի, Աղիզբեկովի, Արթիկի, Կամոյի, Մեղրիի և մի շարք այլ շրջանների միլիցիայի բաժիններ։

Միլիցիայի հաջող գործունեությունը պայմանավորված է նրա անձնակազմի քաղաքական գիտակցությամբ և մարտական պատրաստականությամբ, շարքային միլիցիոներների և սպայական կազմի հստակ և բարեխիղճ աշխատանքով։ Սովետական գրականության նահապետ Մաքսիմ Գորկին, որը զարմանալիորեն հետևում էր միլիցիայի աշխատանքին, մի առիթով ասել է.

> «Միլիցիայի ծառայությանը և միլիցիոներին ես հետևում եմ վաղուց և համոզվել եմ, որ նրանք իրոք հանդիսանում են ժողովրդի բարեկամները, նրանք իրենց ամբողջ հոգին տրամադրել են վիրավորվածների պաշտպանելու սուրբ գործին, նրանք առաջին օգնականներն են հանդիսանում այնտեղ, որտեղ միլիցիայի օգնությունն է պահանջվում»։

Ուրախալի է մատնանշել, որ Հայաստանի միլիցիայի շարքերում ևս կան շատ մարդիկ, որոնք իրենց կյանքը նվիրել են հասարակական կարգուկանոնի, սովետական քաղաքացիների հանգիստ կյանքի պաշտպանության սուրբ գործին։ Նրանցից է, օրինակ, Օրջոնիկիձեի շրջանային միլիցիայի բաժանմունքի ջոկի հրամանատար Գառնիկ Գևորգյանը, որը 20 տարի է, ինչ ծառայում է միլիցիայում և այդ ժամանակամիջոցում բազմաթիվ անգամ օգնության է հասել քաղաքացիներին, փրկել նրանց դանակահարությունից, կողոպտումից և քրեական հանցագործների այլ ոտնձգություններից։ Գ. Գևորգյանի անձնվեր աշխատանքի շնորհիվ բազմաթիվ հանցագործներ կրել են իրենց արժանի պատիժը, կանխվել են շատ հանցագործություններ և այլն։ Իր պարտականությունները խիզախորեն և ազնվաբար կատարելու համար Գառնիկ Գևորգյանը պարգևատրվել է Լենինի շքանշանով։

Հոբելյանական տարում կառավարական շքանշաններով, մեդալներով և պատվոգրերով պարգևատրվեցին նաև միլիցիայի աշխատողներ Գ. Կարախանյանը, Բ. Մնացականյանը, Ռ. Մանուկյանը, Հ. Առաքելյանը, Լ. Առաքելյանը, Ե. Դավթյանը, Բ. Պողոսյանը, Հ. Մովսիսյանը և շատ ուրիշներ, որոնք բարեխղճորեն կատարելով իրենց պարտականությունները, հետևողական պայքար են մղում հասարակական կարգուկանոնի ամրապնդման համար։

Հանրապետության միլիցիայի աշխատողները իրենց նկատմամբ կուսակցության և կառավարության կողմից ցուցաբերվող հոգատարությանը պատասխանում են աշխատանքի հետագա բարելավմամբ։ Մշակվում և իրականացվում են մի շարք կոնկրետ կազմակերպական միջոցառումներ՝ ուղղված միլիցիայի օրգանների գործունեության հետագա ուժեղացմանը, նրանց կապերը հասարակական կազմակերպությունների հետ ամրապնդելուն։

Ներկայումս մեր քաղաքներում և գյուղերում հանցագործության, հասարակական կարգուկանոնը ամեն տեսակի խախտողների դեմ պայքարի մեծ ուժ են, օրինակ, ժողովրդական կամավոր դրուժինները, կոմերիտական-երիտասարդական օպերատիվ շտաբները, ընկերական դատարաններն ու թաղային կոմիտեները, որոնց վրա հենվում, որոնց հետ համագործակցում են միլիցիայի օրգաններն ու աշխատողները։ Օրինակ, Երևանի Վ. Ի. Լենինի ան-



վան մետաքսի կոմբինատի, պետհամալսարանի, «Մոսկվա» կինոթատրոնի, Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի, արհեստական մետաքսաթելերի և «Ավտոմատիկա» գործարանների, Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր և Արմավիր գյուղերի կամավոր ժողովրդական դրուժինաները, ՀԼԿԵՄ Երևանի, Լենինականի և Կիրովականի քաղկոմների կոմերիտական-երիտասարդական օպերատիվ շտաբները արդյունավետ պայքար են տանում հանցագործության դեմ, գործուն օգնություն ցույց տալիս միլիցիայի տեղական օրգաններին։

Սակայն այս ամենը քիչ է։ Հանրապետության միլիցիայի օրգանների աշխատանքում դեռևս լուրջ թերություններ կան։ Դեռևս բարձր է քաղաքներում ու բնակավայրերում կատարվող հանցագործությունների թիվը։ Ավելին, կատարված շատ հանցագործություններ մնում են չբացահայտված, հանցագործության մի քանի տեսակներ աճում են։ Առանձին հանցագործ տարրեր, դուրս մնալով միլիցիայի օպերատիվ հսկողությունից, ձեռք են մեկնում դեպի հանրային ու աշխատավորների անձնական ունեցվածքը, չարամիտ խուլիգանություն են կատարում, ոտնահարում սոցիալիստական համակեցության նորմաները, զբաղվում սպեկուլյացիայով, կաշառակերությամբ, կատարում են վտանգավոր այլ հանցագործություններ։ Ցավալին այն է, որ երբեմն այդ կարգի մարդկանց հաջողվում է թուլակամ ու անկայուն քաղաքացիների մոտ անպատժելիության պատրանք ստեղծել։ Ուրեմն, միլիցիայի բոլոր օրգանները պետք է ավելի բարձրացնեն հանցագործության կանխման ու նախականխման ուղղությամբ տարվող աշխատանքների մակարդակը, հսկողություն սահմանեն հանցագործ մտադրություններ ունեցողների նկատմամբ։

Մեր խնդիրն է՝ բարձրացնել օպերատիվ աշխատանքի մակարդակը միլիցիայի բոլոր օղակներում, կատարելագործել մեր յուրաքանչյուր աշխատողի օպերատիվ հմտությունը։ Մեր ամբողջ ուժերը, պայքարի մեր բոլոր միջոցներն ու հնարավորությունները ներդնել հանուն այն բանի, որպեսզի հանրապետությունում շեշտակիորեն կրճատվի հանցագործությունը։

Միլիցիայի առանձին օրգաններ դեռևս լուրջ հետևություններ չեն անում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1966 թվականի հուլիսի 23-ի՝ «Հանցագործությունների դեմ պայքարն ուժեղացնելու միջոցառումների մասին» հայտնի որոշումից, չեն կատարելագործում իրենց աշխատանքի ձևերն ու մեթոդները, դրանք չեն բարձրացնում օրվա խնդիրների մակարդակին, շարունակում են աշխատել հին ձևով։

Որոշ տեղերում ամբողջ խստությամբ չեն իրականացվում ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1966 թվականի հուլիսի 26-ի՝ «Խուլիգանության համար պատասխանատվությունն ուժեղացնելու մասին» հրամանագրի պահանջները, անհարգի, ամենևին չպատճառաբանված ներողամտություն է ցուցաբերվում խուլիգանություն կատարող անձանց նկատմամբ։

Պահպանողականությունն ու հնին կառչելը ընդհանրապես վնաս է բերում ամեն մի աշխատանքի, միլիցիայի աշխատանքին՝ հատկապես։ Ուստի, անհրաժեշտ է հրաժարվել գործունեության հնացած, իրենց դարն ապրած մեթոդներից, հասարակական կարգի պահպանության գործում արմատավորել նորն ու առաջավորը, տեխնիկական այն միջոցները, որոնցով տարեցտարի համալրվում է միլիցիան։

Միլիցիայի սրբազան պարտքն է խստագույն կերպով պահպանել սոցիալիստական օրինականությունը, սակայն, ճշմարտության դեմ չմեղանչելու

*համար անհրաժեշտ է խոստովանել, որ մեր շարքերում դեռևս կան մարդիկ, որոնք երբեմն ազնիվ աշխատավորին շփոթում են հանցագործի հետ, իսկ ոմանք էլ պարզապես չարաշահում են իրենց տրված մեծ իրավունքները, վիրավորում են առանձին քաղաքացիների ինքնասիրությունը, երբեմն էլ կոպիտ կերպով խախտում սոցիալիստական օրինականությունը։*

*1968 թվականի նոյեմբերին ՍՄԿԿ Կենտկոմը և Մինիստրների սովետը քննության առան միլիցիայի հետագա ամրապնդման միջոցառումների հարցը և ընդունեցին համապատասխան որոշում։ Այդ որոշմամբ ՍՍՀՄ հասարակական կարգի պահպանության մինիստրությունը վերանվանվել է ՍՍՀՄ ներքին գործերի մինիստրության, իսկ միութենական և ինքնավար հանրապետությունների հասարակական կարգի պահպանության մինիստրությունները՝ միութենական և ինքնավար հանրապետությունների ներքին գործերի մինիստրությունների։*

*Մինիստրության այս վերանվանումը սոսկ ձևական ակցիա չէ։ Կուսակցության և կառավարության նոր որոշմամբ խնդիր է դրվում հիմնովին բարելավել ներքին գործերի մինիստրության և նրա մարմինների աշխատանքը՝ սոցիալիստական օրինականությունը խստագույն պահպանելու հիման վրա։ Պահանջվում է ուժեղացնել քաղդաստիարակչական աշխատանքը միլիցիայի մարմինների անձնակազմի շրջանում։ Նախատեսված է բարելավել միլիցիայի մարմինների համար մասնագետների ուսուցումը և պատրաստումը, միլիցիան հագեցնել տեխնիկական նոր միջոցներով, միջոցառումներ իրականացնել միլիցիայի և ՍՍՀՄ ներքին գործերի մինիստրության մյուս ծառայությունների աշխատողների նյութական ապահովությունը բարելավելու ուղղությամբ։*

*Միլիցիային ներկայացվող բարձր պահանջներն առաջին հերթին ուղղված են նրա կադրերին՝ սպաներին և շարքայիններին։ Կուսակցության և կառավարության նոր որոշմամբ ստեղծված են նյութական և բարոյական անհրաժեշտ պայմաններ միլիցիայի օրգաններում կադրերի ընտրության, դաստիարակության և առաջքաշման գործը հիմնովին բարելավելու համար։*

*Տեղական կուսակցական և սովետական օրգանների անմիջական օգնությամբ այժմ մենք հնարավորություն ունենք միլիցիայի օրգաններում աշխատանքի ներգրավելու առավել կրթված, կոմունիզմի գաղափարներով դաստիարակված, ֆիզիկապես առողջ և եռանդուն երիտասարդների, որոնք սոցիալիստական հասարակական կարգի պահպանումն ու ամրապնդումը համարում են իրենց պատվի գործը։ Դրա հետ միասին, մենք պարտավոր ենք բարձրացնել աշխատանքի կուլտուրան, ամեն ինչով արժանի լինել այն մեծ սիրուն ու համակրանքին, որ մեր ժողովուրդը ցուցաբերում է միլիցիայի նկատմամբ։*

*Հայկական ՍՍՀ ներքին գործերի մինիստրության միլիցիայի մարմինների բոլոր աշխատողները շնորհակալությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի նոր որոշումը, որը տոգորված է սովետական իրավակարգի և օրինականության պահպանման, սովետական միլիցիայի ամրապնդման, նրա աշխատողների նկատմամբ լենինյան հոգատարությամբ։ Հայաստանի միլիցիայի անձնակազմը կանի ամեն ինչ, որպեսզի իր անբասիր, հըստակ աշխատանքով վարձահատույց լինի այդ մեծ հոգատարությանը։*

**Կ. Ի. ԻՈԱՆՆԵՍՅԱՆ**

Հայկ. ՍՍՀ Մինիստրների սովետի
իրավաբանական հանձնաժողովի նախագահ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԱՄՈՒՍՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԸՆՏԱՆԻՔԻ ՆՈՐ ՕՐԵՆՍԳՐՔԻ ՆԱԽԱԳԾԻ ԱՌԹԻՎ

*ՍՍՀՄ յոթերորդ գումարման Գերագույն սովետի չորրորդ սեսիան 1968 թ. հունիսի 27-ին ընդունեց ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների ամուսնության և ընտանիքի օրենսդրության հիմունքները, որոնք գործողության մեջ դրվեցին 1968 թվականի հոկտեմբերի 1-ից։*

*Հիմունքները կիրարկության դրվելու պահից Հայկական ՍՍՀ ամուսնության, ընտանիքի և խնամակալության օրենսգրքի ներկայումս գործող բոլոր նորմերը, որոնք հակասում են նոր օրենքի դրույթներին, չեն կարող կիրառվել և կոնկրետ իրավահարաբերություններ կարգավորելիս, նախքան հանրապետական օրենսդրությունը Հիմունքներին համապատասխանեցնելը, անհրաժեշտ է անմիջականորեն ղեկավարվել ընդհանուր միութենական նոր օրենքի համապատասխան հոդվածներով։*

*Միանգամայն բնական է, որ ներկայումս գործող ամուսնության, ընտանիքի և խնամակալության վերաբերյալ հանրապետական օրենսգրքերը, որոնք ընդունվել են չորս տասնամյակներ առաջ (Հայկական ՍՍՀ ամուսնության, ընտանիքի և խնամակալության օրենսգիրքն ընդունվել է 1927 թ.) և դրական դեր են խաղացել մեր ժողովրդի կյանքում, ներկայումս զգալիորեն հնացել են, և նրա առանձին նորմերը չեն արտացոլում վերջին տարիներս երկրի տնտեսական, քաղաքական ու կուլտուրական կյանքում տեղի ունեցած բարեփոխությունները։*

*Դրանից հետևում է, որ ամուսնության և ընտանիքի վերաբերյալ հանրապետական օրենսդրության հետագա կատարելագործման անհրաժեշտությունը պայմանավորված է սովետական պետության պատմական զարգացմամբ, որ դնում է կյանքը սովետական ընթացքով և այն նոր խնդիրներով, որ դնում է կյանքը սովետական ընտանեկան իրավունքի առջև։*

*Ընդհանուր միութենական նոր օրենքը, որն իր մեջ պարունակում է ամուսնա-ընտանեկան հարաբերությունները կարգավորելու հիմնական սկզբունքները, հիմք կծառայի հանրապետական ընտանեկան օրենսդրության նորացման համար։ Հիմունքներում արտացոլում են գտել ընտանիքին և ամուսնության վերաբերող լենինյան հիմնական դրույթները և ՍՄԿԿ ծրագրի սկըզբունքները*

բունքները։ Նոր օրենքի բոլոր նորմերը ապահովում են այն բարձրագույն սկզբունքների իրականացումը, որոնց վրա խարսխվում են մարդկանց փոխհարաբերությունները սոցիալիստական հասարակության մեջ և որոնք համապատասխանում են նրա զարգացման ներկա ժամանակաշրջանին։

Հիմունքներին միանգամայն համապատասխան Հայկական ՍՍՀ-ում մշակվել է ամուսնության և ընտանիքի օրենսգրքի նախագիծը, որում իրենց լուծումն են գտնում ինչպես միութենական հանրապետությունների իրավասությանը վերապահված, այնպես էլ ամուսնական և ընտանեկան հարաբերությունների վերաբերյալ այն հարցերը, որոնք անմիջականորեն Հիմունքներով չեն նախատեսվում։ Դրանից հետևում է, որ օրենսգրքի նախագծում պետք է որոշվեն ո՛չ միայն ընդհանուր-միութենական օրենքի կիրառման կարգն ու պայմանները, այլև Հիմունքներով չկարգավորվող ամուսնա-ընտանեկան շատ հարցեր։

Ամուսնության և ընտանիքի օրենսգրքի նախագծի մշակումը մեծ ու բարդ աշխատանք է, որին պետք է մասնակցեն սովետական, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական գործիչներ, իրավաբաններ, արդարադատության մարմինների, քաղաքացիական կացության ակտերի գրանցման և պետական ու հասարակական այլ կազմակերպությունների աշխատողներ։

Հանրապետության օրենսգրքի նախագծի հիմքում դրված է միութենական ամուսնա-ընտանեկան օրենսդրության միասնության սկզբունքը, հաշվի առնելով օրենսդրության բնագավառում միութենական հանրապետությունների սուվերեն իրավունքներն ընդլայնելու վերաբերյալ դրույթները։

Օրենսգրքի նախագծում պահպանվել և վերարտադրվել են Հայկական ՍՍՀ ամուսնության, ընտանիքի և խնամակալության գործող օրենսգրքում պարունակվող այն նորմերը, որոնք դիմացել են ժամանակի փորձությանը և վերացվել են հնացած նորմերը։ Օրենսգրքի նախագիծը նախատեսում է մի շարք նոր դրույթներ, որոնք կատարելագործում են առկա նորմերը։ Նախագծում նոր ձևով են լուծվում ամուսնա-ընտանեկան հարաբերությունների մի շարք հարցեր, առավել հստակ շարադրվում դրանց կարգավորման նորմերը։

Հնարավորություն չունենալով մեկ հոդվածում շարադրելու օրենսգրքի նախագիծը բնութագրող բոլոր հիմնական հարցերը, այստեղ մենք կանգ կառնենք միայն մի քանի հարցերի վրա։

1. Հիմունքները սահմանել են, որ ամուսնությունը տեղի է ունենում ամուսնանալ ցանկացողների կողմից քաղաքացիական կացության ակտերի գրանցման մարմնին դիմում տալու օրից մեկ ամիս անցնելուց հետո։ Ելնելով դրանից, օրենսգրքի նախագիծը, ամրապնդելով մեկամսյա ժամկետ սահմանելու վերաբերյալ Հիմունքների համապատասխան նորմը, միաժամանակ սահմանում է, որ առանձին դեպքերում՝ ամուսնացող անձանց խնդրանքով, ազգականների, պետական և հասարակական կազմակերպությունների միջնորդությունների հիման վրա, այդ ժամկետը կարող է կրճատվել կամ երկարացվել աշխատավորների դեպուտատների շրջանային (քաղաքային) սովետի գործադիր կոմիտեի կողմից։ Սակայն այդ ժամկետի ավելացումը 6 ամսից ավելի չպետք է լինի (հոդված 13)։

Մեր կարծիքով օրենսգրքի նախագծում նման նորմի ընդունումը կասկած չի հարուցում, քանի որ պրակտիկայում կարող են դեպքեր լինել, երբ անհրաժեշտ է այդ նորմի կիրառումը։ Ժամկետի կրճատում կարող է թույլատրվել, օրինակ, այն դեպքում, երբ ամուսնացողները վաղուց գիտեն մեկը մյուսին և



ծառայության կամ բնակության նոր վայրը շտապ մեկնելու կապակցությամբ ցանկանում են կարճ ժամկետում, հանդիսավոր պայմաններում, գրանցել իրենց ամուսնությունը, ապա մեկնել (զինվորական ծառայողները, երիտասարդ մասնագետները, որոնք նոր են ավարտել ինստիտուտը և այլն)։ Ժամկետի երկարացում կարող է լինել, օրինակ, այն դեպքում, երբ քաղաքացիական կացության ակտերի գրանցման մարմիններին անհրաժեշտ է ստուգել որևէ մեկից ստացված դիմումը կամ հայտարարությունը՝ տվյալ ամուսնությունը գրանցելու համար օրինական խոչընդոտներ լինելու վերաբերյալ։

Այստեղ պետք է նշել, որ այժմ գործող օրենսգիրքը ևս (հոդված 138) սահմանում է, որ այդ դեպքերում պաշտոնատար անձը պարտավոր է դադարեցնել գրանցումը և պահանջել հայտարարություն տվողից ներկայացնելու համապատասխան գրավոր ապացույցներ այն ժամկետում, որը սահմանում է քաղաքացիական կացության ակտերի գրանցման մարմնի ղեկավարը։ Օրենսգրքի նախագծի 13-րդ հոդվածը զարգացնում է գործող օրենքի այդ դրույթը։

2. Ինչպես հայտնի է, Հայկական ՍՍՀ ամուսնության, ընտանիքի և խնամակալության գործող օրենսգիրքը, ի տարբերություն միութենական շատ հանրապետությունների օրենսգրքերի, ամուսնական տարիք է սահմանում կանանց համար 16, տղամարդկանց՝ 18 տարի։ ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների ամուսնության և ընտանիքի օրենսդրության Հիմունքների նախագիծը քննարկելիս մասնակիցներից շատերը աննպատակահարմար էին գտնում ամուսնական հասակը 18 տարուց պակաս սահմանելը, մասնավորապես կանանց համար, քանի որ վաղաժամ ամուսնությունը վնասակար է կնոջ և նրա սերնդի առողջության համար, խանգարում է կնոջը կրթություն և մասնագիտություն ձեռք բերելու, ինքնուրույն լինելու կյանքում, չի նպաստում ընտանիքի ամրապնդմանը և այլն։

Հիմունքների 10-րդ հոդվածը ամուսնական հասակ սահմանելով 18 տարին, միաժամանակ նշում է, որ միութենական հանրապետությունների օրենսդրությամբ կարող է նախատեսվել ամուսնական տարիքի իջեցում, սակայն ոչ ավելի, քան երկու տարով, հետևապես, այդ հարցը պետք է լուծումն ստանա հանրապետական օրենսդրությամբ, հաշվի առնելով ազգային, կենցաղային և տեղական այլ առանձնահատկությունները։ Օրենսգրքի նախագծի 15-րդ հոդվածը տղամարդկանց և կանանց համար ամուսնական հասակ սահմանելով 18 տարին, միաժամանակ նախատեսում է, որ աշխատավորների դեպուտատների շրջանային (քաղաքային) սովետների գործադիր կոմիտեները, բացառիկ դեպքերում, առանձին միջնորդությունների հիման վրա կանանց ամուսնական տարիքը կարող են իջեցնել, սակայն ոչ ավելի, քան երկու տարով։

Օրենսգրքի նախագծում այդ հարցի ճիշտ և խելացի լուծումը, բացառիկ կարևոր նշանակություն ունի, ուստի, չափազանց ցանկալի է, որ օրենսգրքի նախագծի քննարկման ժամանակ պատշաճ ուշադրություն հատկացվի այդ հարցին, այստեղ, անշուշտ, իրենց խոսքը կասեն առողջապահության և լուսավորության աշխատողները։

3. Խոսելով ամուսինների անձնական իրավունքների մասին, Հիմունքների 11-րդ հոդվածը սահմանում է, որ ամուսնանալիս ամուսիններն իրենց ցանկությամբ ընտրում են ամուսիններից մեկի ազգանունը՝ որպես իրենց ընդհանուր ազգանուն, կամ ամուսիններից յուրաքանչյուրը պահպանում է իր մինչամուսնական ազգանունը։ Միաժամանակ այդ նորմին ավելաց-

վում է, որ միութենական հանրապետությունների օրենսդրությամբ կարող է նախատեսվել ամուսինների իրավունքը՝ կոչվելու երկու ազգանունով:

Նկատի ունենալով, որ երկու ազգանուն կրելը անհարմարություն է ստեղծում ամուսինների, նրանց սերունդների, առանձին կազմակերպությունների համար (ԶԱԳՍ, կապ, ՆԳՄ և այլն), օրենսգրքի նախագծի 18-րդ հոդվածը պահպանում է ներկայումս գործող Հիմունքներով սահմանված նորմը, չնախատեսելով երկու ազգանուն կրելու հնարավորություն:

4. Հիմունքների 13-րդ հոդվածը կարգավորելով ամուսինների միմյանց ապրուստի միջոց հայթայթելու փոխադարձ պարտականությունները, սահմանում է, որ առանձին դեպքերում ամուսինը կարող է զերծ մնալ մյուս ամուսնուն ապրուստի միջոց հայթայթելու պարտականությունից կամ նրա պարտականությունը կարող է սահմանափակվել որոշ ժամկետով: Այն պայմանները, որոնց առկայության դեպքում դատարանը կարող է ամուսնուն ազատել մյուս ամուսնուն ապրուստի միջոց հայթայթելու պարտականությունից կամ այդ պարտականությունը սահմանափակել ժամկետով, որոշվում են միութենական հանրապետությունների օրենսդրությամբ:

Նկատի ունենալով, որ Հիմունքները զգալիորեն ընդլայնել են ամուսինների պարտականությունները փոխադարձորեն ապրուստի միջոց հայթայթելու հարցում, ինչպես կնոջ հղիության ժամանակ և երեխան ծնվելուց հետո մեկ տարվա ընթացքում, այնպես էլ ամուսնությունը լուծվելուց հետո, հանրապետական օրենսդրությամբ այն պայմանների սահմանումը, որոնց առկայության դեպքում դատարանը կարող է ամուսնուն ազատել այդ պարտականությունից կամ այդ պարտականությունը սահմանափակել ժամկետով, առանձնապես էական նշանակություն է ստանում: Ուստի, օրենսգրքի նախագիծը սահմանում է, որ դատարանը, նկատի ունենալով ամուսինների ամուսնության մեջ գտնվելու ժամանակի կարճատևությունը կամ ալիմենտ պահանջող ամուսնու անվայել վարքագիծը ամուսնության ընթացքում, կարող է նրան ստանալու ամուսնու իրավունքը կորցնում է իր ուժը, եթե վերացել են այն իրավունքը սահմանափակել որոշակի ժամկետով (հոդված 27):

Միաժամանակ սահմանվում է, որ մյուս ամուսնուց ապրուստի միջոց ստանալու ամուսնու իրավունքը կորցնում է իր ուժը, եթե վերացել են այն պայմանները, որոնք հիմք են ծառայել ապրուստի միջոց ստանալու համար կամ՝ ամուսնալուծված կարիքավոր անաշխատունակ ամուսինը նորից է ամուսնացել:

Վերը նշված պայմաններին կարող են ավելացվել նաև մի քանի այլ պարագաներ, ինչպես, օրինակ, երբ ապրուստի միջոց պահանջող ամուսինն անաշխատունակ է կամ խեղանդամ է դառնում ոգելից խմիչքներ կամ թմրադեղեր գործածելու, հանցագործություն կատարելու և այլ հանգամանքների բերումով: Կարևորն այն է, որպեսզի օրենսդրությունն ամուսիններին այդ անձանց օժանդակություն ցույց տալու պարտականությունից ազատելու խելացի և արդարացի կանոններ սահմանի:

5. Օրենսգրքի նախագիծը սահմանում է, որ երեխաների դաստիարակության հարցերով ծնողների միջև վեճ առաջանալու դեպքում, այդ վեճը լուծում են խնամակալության և հոգաբարձության մարմինները ծնողների մասնակցությամբ, իսկ առանձին դեպքերում՝ դատարանը:

Օրենսգրքի նախագծում ամենայն պարզությամբ որոշվում են միմյանցից անջատ ապրող ծնողների իրավունքներն ու պարտականությունները:



Սահմանվում է, որ երեխայից առանձին ապրող ծնողն իրավունք ունի և պարտավոր է մասնակցել երեխայի ապրուստի հայթայթմանն ու նրա դաստիարակությանը: Իսկ քանի որ դաստիարակությունը անհնարին է առանց երեխայի հետ շփում ունենալու, օրենսգրքի նախագծի 68-րդ հոդվածում հատկապես հիշատակվում է, որ առանձին ապրող ծնողը իրավունք ունի շփում ունենալու երեխայի հետ: Շփում ունենալ երեխայի հետ, դա նշանակում է, հնարավորություն ունենալ տեսնելու նրան ամեն ժամանակ և ոչ թե ինչ-որ խիստ սահմանափակ ժամանակամիջոցում, այսպես կոչված, նրա հետ տեսակցելիս: Այն ծնողը, որի մոտ գտնվում է երեխան, իրավունք չունի խոչընդոտ հանդիսանալու մյուս ծնողին շփում ունենալու երեխայի հետ և մասնակցելու նրա դաստիարակությանը: Եթե այդպիսի շփումը խանգարում է երեխայի նորմալ դաստիարակությանը, վնասակար ազդեցություն է թողնում, կարելի է այն սահմանափակել: Սակայն այդ դեպքում ևս ծնողը իրավասու չէ ինքնագլուխ կերպով մյուս ծնողին հեռու պահելու երեխայի դաստիարակությունից: Եթե իրոք լուրջ հիմքեր կան երկյուղ կրելու երեխայի վրա վնասակար ազդեցություն ունենալուց, այն ծնողը, որի մոտ ապրում է երեխան, պետք է դիմի խնամակալության և հոգաբարձության մարմիններին, որոնց օրենսգրքի նախագծով իրավունք է վերապահվում առանձին ապրող ծնողին որոշակի ժամանակով զրկելու երեխայի հետ շփում ունենալու հնարավորությունից (հոդված 68):

Պրակտիկայում լինում են դեպքեր, երբ անջատ ապրող ծնողը, որի մոտ մնում է երեխան, առանց որևէ հիմքի, ինքնագլուխ արգելում է մյուս ծնողին շփվելու երեխայի հետ և մասնակցելու նրա դաստիարակությանը, իսկ խնամակալության և հոգաբարձության մարմիններն անզոր են լուծելու նման վեճերը, որքանով ընտանեկան իրավունքի գործող նորմերը նման վեճերը լուծելու կարգի մասին սպառիչ ցուցումներ չեն պարունակում: Այդ հարցի վերաբերյալ գործող նորմերի ոչ բավարար պարզությունը, նման ապօրինի գործողությունների համար համապատասխան սանկցիայի բացակայությունը խանգարում են մյուս ծնողին օգտվելու իր իրավունքից, որը վնասում է երեխայի դաստիարակությանը:

Օրենսդրության այդ բացը վերացնելու նպատակով, օրենսգրքի նախագիծը սահմանում է, որ եթե ծնողները չեն կարողանում համաձայնության գալ երեխայի դաստիարակության հարցում անջատ ապրող ծնողի մասնակցության կարգի մասին և չեն ենթարկվում խնամակալության ու հոգաբարձության մարմինների ցուցումներին, վերջիններս իրավասու են վեճը լուծելու համար դիմելու դատարանին: Այդպիսի վեճի վերաբերյալ դատարանի արձակած վճիռը չկատարող ծնողի նկատմամբ կիրառվում են Հայկական ՍՍՀ քաղաքացիական դատավարության օրենսգրքի 404-րդ հոդվածով նախատեսված միջոցները (ենթարկվում է տուգանքի), որը, սակայն, նրան չի ազատում դատարանի վճիռը կատարելու պարտականությունից, իսկ այն դեպքերում, երբ ծնողը չարամտորեն խուսափում է դատարանի արձակած վճիռը կատարելուց և հակառակ երեխայի շահերին արգելք է հանդիսանում մյուս ծնողին շփում ունենալու երեխայի հետ ու մասնակցելու նրա դաստիարակությանը, խնամակալության և հոգաբարձության մարմինները իրավասու են դատարանի միջոցով պահանջելու, որ երեխան վերցվի այդ ծնողից և դաստիարակության հանձնվի մանկական հիմնարկությանը կամ մյուս ծնողին (հոդված 69):

Թվում է, որ վերոհիշյալ նորմերի ընդունումը ռեալ հնարավորություն

կտա անչափ ապրող ծնողներին իրականացնելու երեխայի դաստիարակության վերաբերյալ իրենց իրավունքներն ու պարտականությունները։

6. Որոշելով պապի, տատի, եղբոր, քրոջ, խորթ հոր, խորթ մոր, ինչպես նաև թոռների, խորթ որդիների և խորթ դուստրերի ալիմենտային պարտականությունները, Հիմունքների 21-րդ հոդվածը նշում է, որ միութենական հանրապետությունների օրենսդրությամբ կարող են սահմանվել ազգականների և այլ անձանց՝ միմյանց ապրուստը հոգալու իրավունքների ու պարտականությունների առաջացման նաև այլ հիմքեր։

Ինչպես հայտնի է, լայն քննարկման համար հրապարակված Հիմունքների նախագծում նշված էին նաև փաստական դաստիարակների և սաների ալիմենտային պարտականությունները որոշող նորմեր (Հիմունքների նախագծի 21-րդ հոդվածի 2-րդ և 4-րդ մասերը)։ Սակայն Հիմունքների նախագիծը հաստատելիս ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիան այդ դրույթները հանեց Հիմունքների նախագծի 21-րդ հոդվածից, հարցի լուծումը թողնելով միութենական հանրապետությունների իրավասությանը։

Ելնելով դրանից, օրենսգրքի նախագիծը յոթ հոդվածներում (94—100-րդ հոդվածներ) որոշելով ընտանիքի մյուս անդամների ալիմենտային պարտականությունները, բացի Հիմունքների 21-րդ հոդվածում թվարկված ընտանիքի անդամներից, այդ կարգին է դասում նաև փաստական դաստիարակներին և նրանց սաներին։ Այսպես, նախագծի 99-րդ հոդվածը սահմանում է, որ այն անձինք, ովքեր հանձն են առել երեխաների մշտական դաստիարակությունն ու խնամքը, նրանց հետագա դաստիարակությունից ու խնամքից հրաժարվելու դեպքում պարտավոր են խնամել անչափահասներին, ինչպես նաև օգնության կարիք ունեցող անաշխատունակ չափահաս սաներին, եթե վերջիններս ծնողներ չունեն կամ չեն կարող ապրուստի միջոցներ ստանալ իրենց ծնողներից։

Նախագծի 100-րդ հոդվածը սահմանում է, որ այն անձինք, ովքեր մշտական դաստիարակության ու խնամքի տակ են գտնվում, պարտավոր են ապրուստի միջոցներ տալ փաստորեն իրենց դաստիարակող անձանց, եթե վերջիններս օգնության կարիք ունեցող անաշխատունակներ են և չեն կարող ապրուստի միջոցներ ստանալ իրենց զավակներից կամ ամուսիններից։ Դատարանը իրավասու է ազատելու այս հոդվածով նախատեսված պարտականության կատարումից, եթե այդ անձինք դաստիարակության և խնամքի տակ տասը տարուց պակաս են գտնվել։

7. ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների ամուսնության և ընտանիքի օրենսդրության Հիմունքները մանրամասնորեն կարգավորում են որդեգրման հարցերը։ Սահմանելով, որ որդեգրության համար պահանջվում է ծնողների և որդեգրվողի համաձայնությունը, եթե լրացել է վերջինիս տասը տարին, երեխայի համաձայնությունը պարզելու կարգը Հիմունքները վերապահում են միութենական հանրապետությունների իրավասությանը։ Սահմանազատելով ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների օրենսդրության իրավասությունը որդեգրման վերաբերյալ հարցերով, Հիմունքները նշում են, որ միութենական հանրապետությունների օրենսդրությամբ սահմանվում են այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ որդեգրման կարգն ու պայմանները, որոնց առկայության դեպքում, որպես բացառություն, որդեգրումը թույլատրվում է առանց այն ծնողների համաձայնության, որոնք խուսափել են երեխայի դաստիարակությանը մասնակցելուց. այն պայման-



ները, որոնց առկայությամբ որդեգրումը (եթե այն կատարվում է ոչ երկու ամուսինների, այլ նրանցից մեկի կողմից), որպես բացառություն, կարող է կատարվել առանց մյուս ամուսնու համաձայնության, որդեգրման կանոնները, որդեգրումը անվավեր ճանաչելու պայմանները և որդեգրումը չեղյալ համարելու պայմանները, ինչպես նաև որդեգրումը չեղյալ համարելու հետևանքները. որդեգրման գաղտնիքն ապահովող պայմանները (հոդված 24)։ Այդ բոլոր հարցերը, որոնք Հիմունքները վերապահում են միութենական հանրապետությունների իրավասությանը, պատշաճ լուծումն են ստանում օրենսգրքի նախագծում (108—135-րդ հոդվածներ)։

Հնարավորություն չունենալով առանձին-առանձին կանգ առնելու նրանցից յուրաքանչյուրի վրա, կուզեի այստեղ միայն ընդգծել օրենսգրքի նախագծի 124-րդ հոդվածի կարևոր նշանակությունը, որը օրենսդրության մեջ նորություն մտցնելով, սահմանում է, որ որդեգրումը օրենքով պահպանվող գաղտնիք է, որ առանց որդեգրողների համաձայնության, իսկ նրանց մահվան դեպքում՝ առանց խնամակալության և հոգաբարձության մարմինների համաձայնության, արգելվում է քաղաքացիական կացության ակտերի գրանցման մատյաններից քաղվածքներ տալը, որոնցից հայտնի կդառնա, որ որդեգրողները որդեգրվածի հարազատ ծնողները չեն։ Այն անձինք, ովքեր որդեգրողի կամքին հակառակ կհրապարակեն որդեգրման գաղտնիքը, կարող են պատասխանատվության կանչվել օրենքով սահմանված կարգով։

8. Հիմունքները (հոդված 26) որոշելով խնամակալության և հոգաբարձության նպատակներն ու խնդիրները և մատնանշելով, որ խնամակալությունն ու հոգաբարձությունը սահմանվում են աշխատավորների դեպուտատների շրջանային (քաղաքային), ավանային կամ գյուղական սովետի գործադիր կոմիտեի կողմից, այդ կապակցությամբ ծագող հարաբերությունների կարգավորումը լիովին վերապահում են հանրապետական օրենսդրության իրավասությանը։ Այսպես, օրինակ, միութենական հանրապետության օրենսդրությամբ սահմանվում են խնամակալների և հոգաբարձուների իրավունքներն ու պարտականությունները, ինչպես նաև խնամակալության և հոգաբարձության իրականացման կանոնները։

Օրենսգրքի նախագիծը ամենայն մանրամասնությամբ կարգավորում է վերը նշված հարցերը (136—176-րդ հոդվածներ)։

9. Հիմունքները, սահմանափակվելով գրանցման ենթակա մի շարք դեպքերի թվարկումով և գրանցումների մեջ սխալներն ուղղելու և փոփոխություններ մտցնելու կարգի սահմանումով, միաժամանակ միութենական հանրապետությունների իրավասությանն են վերապահում քաղաքացիական կացության ակտերի գրանցման կարգի սահմանումը, ներառյալ ամուսնությունների և ծնունդների հանդիսավոր գրանցման կարգը, ինչպես նաև ամուսնացողների կողմից փոխադարձորեն մեկը մյուսի առողջական վիճակին և ընտանեկան դրությանը իրազեկ լինելու կարգը և որպես ապագա ամուսիններ և ծնողներ՝ նրանց իրավունքներն ու պարտականությունները պարզաբանելու կարգը։

Սրանք են Հայկական ՍՍՀ ամուսնության և ընտանիքի օրենսգրքի նախագծի այն մի քանի հարցերը, որոնց առթիվ ցանկանում էինք արտահայտել մեր նկատառումները։

Նախագծի մշակումը շարունակվում է, որի հրապարակային քննարկումը շատ օգտակար և հիմնավոր առաջարկություններ ի հայտ կբերի արծարծվող հարցի շուրջ։

Ի. Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# ԻՐԱՎԱԳԻՏԱԿՑՈՒԹՅԱՆ ԵՎ ԲԱՐՈՅԱԳԻՏԱԿՑՈՒԹՅԱՆ ՓՈԽՆԵՐԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ

*Իրավագիտակցության և բարոյագիտակցության հարցը սովորաբար
դիտվում է գիտակցության ձևերի և հասարակական հարաբերությունների
կարգավորման իրավական և բարոյական նորմերի ասպեկտով։ Տվյալ հոդ-
վածում մենք կանդրադառնանք իրավագիտակցության և բարոյագիտակցու-
թյան զարգացմանն ու մերձեցմանը՝ որպես սոցիալիստական հասարակու-
թյան սոցիալական նորմերից կոմունիստական համակեցության նորմերի վե-
րաճելու կարևոր պայման։*

*Մարդկանց վարքագիծը և նրանց կոլեկտիվների գործունեությունը կար-
գավորող նորմերում իրավագիտակցությունը և բարոյագիտակցությունը յու-
րահատուկ ձևով են արտահայտում հասարակության պահանջմունքները։ Այդ
առանձնահատկությունը դրսևորվում է նախ իրավագիտակցության և բարո-
յագիտակցության նորմատիվ դատողությունների բովանդակության, մարդ-
կանց վարքագծի և, ամբողջությամբ վերցրած, հասարակական հարաբերու-
թյունների գնահատության զանազան չափանիշների, այդ հասարակական
հարաբերությունների վրա ունեցած ներգործության բնույթում (մեխանիզ-
մում)։ Բարոյագիտակցությանը համապատասխանող բարոյական նորմերը
վարքագծի ընդհանուր սկզբունքի սահմանում են։ Իսկ իրավագիտակցությանը
համապատասխանող իրավական նորմերը որոշակի ընդհանուր կանոններ են,
կոնկրետ իրավունքներով ու պարտականություններով՝ դրանց սահմանների
մատնանշումով հանդերձ։*

*Իրավագիտակցությունը և բարոյագիտակցությունն իրենց չափանիշնե-
րով տարբերվում են նաև նորմատիվ պահանջների պահպանումն ապահովելու
եղանակով։ Բարոյական պահանջները իրագործվում են, երբ դրանց նորմերը
դառնում են հասարակության անդամների ներքին համոզմունքներ, կազմե-
լով նրանց բարոյական հատկությունները։ Դրանք հենվում են խորապես
ըմբռնված հասկացությունների և պարտքի զգացման, ինչպես նաև հասարա-
կական կարծիքի ուժի վրա։ Ի տարբերություն իրավագիտակցության, բարո-
յագիտակցությունն այս կամ այն բարոյական պահանջմունքի խախտման*



*համար պատասխանատվության որոշակի միջոցներ չի սահմանում։ Ավելին,
գոյություն ունեցող բարոյական սանկցիաները սահմանված չեն որևէ մեկի
կողմից և ամենատարբեր բնույթի կիրառում ունեն նույնիսկ միևնույն խախ-
տումների նկատմամբ։ Իսկ իրավագիտակցության նորմատիվ պատկերա-
ցումներն արտացոլում են պետության ստեղծած իրավական նորմերը, որոնց
կենսագործումն ապահովվում է գլխավորապես պետական ներգործության
միջոցներով։ Իրավագիտակցության և բարոյագիտակցության խնդիրների
միասնությունը, չնայած տարբերություններին, փոխադարձաբար լրացնում և
հարստացնում են միմյանց։*

*Սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության պայմաններում հասարա-
կական գիտակցության այդ երկու ձևերի փոխհարաբերությունների դիալեկ-
տիկան նպաստում է սոցիալական այդ երևույթների մերձեցմանը, կոմունիս-
տական համակեցության միասնական նորմերի վերաճմանը։*

*Սոցիալիստական հասարակությանը բնորոշ է բոլոր դասակարգերի ու
խավերի իրավական և բարոյական հայացքների միասնությունը։ Սոցիալիս-
տական հասարակության իրավագիտակցության և բարոյագիտակցության
փոխհարաբերությունների այդ կարևոր օրինաչափությունը միանգամից չի
արմատավորվում։ Այն ամրապնդվում է սոցիալիզմի լիակատար հաղթանակի
շնորհիվ, թեև որպես զարգացման հիմնական տենդենց, սկսել է դրսևորվել
պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման պահից։*

*Իրավագիտակցության և բարոյագիտակցության միասնությունը սոցիա-
լիստական հասարակության մեջ պայմանավորում է դրանց փոխներգործու-
թյունը և մերձեցումը։ Այդ պրոցեսի հետազոտմամբ են զբաղվում իրավական
գիտությունները, մասամբ նաև փիլիսոփայությունը։ Տվյալ պրոբլեմը հիմ-
նականում դիտվում է իրավական պահանջները բարոյական պահանջներով
ամրապնդելու և իրավական սանկցիաները բարոյական ներազդեցությամբ
փոխարինելու հնարավորության տեսանկյունից։ Ինքնին վերցրած, այդ պրո-
ցեսը խիստ դժվար է և բազմապլանային։ Վերջինիս հետագա զարգացումը
ենթադրում է հասարակությունը ղեկավարելու բարոյական և իրավական մե-
թոդների դերի պարտադիր մեծացում։ Կոմունիզմի շինարարության ժամա-
նակաշրջանում գիտաիրավական կարգավորման նշանակությունը չի թուլա-
նում, այլ բարձրանում է։ Կատարելագործվում են կառավարման դեմոկրա-
տական հիմունքները, բարձրացվում է կոլեկտիվների, հասարակության յու-
րաքանչյուր անդամի իրավական և բարոյական պատասխանատվությունը։*

*Իրավագիտակցության և բարոյագիտակցության, դրանց համապատաս-
խան նորմերի փոխներգործության ու մերձեցման պրոցեսը չի կարելի դիտել
որպես իրավագիտակցության ոլորտի նեղացում, բարոյական ոլորտի ընդ-
լայնում, նորմերի փոփոխում։ Հնարավո՞ր է, որ սոցիալիզմի և կոմունիզմի
շինարարության առանձին փուլերում իրավական ու բարոյական հայացքները
չհամապատասխանեն գոյություն ունեցող նորմերին։ Ընդ որում, նման ան-
համապատասխանությունը կարող է պայմանավորված լինել իրավական հա-
յացքների համեմատական կայունությամբ և բարոյական համոզմունքների
փոփոխականությամբ։ Սոցիալիստական հասարակությունում, որպես կանոն,
իրավական որոշ նորմերի հաստատումը կամ վերացումը ներդաշնակ են հա-
սարակական կարծիքին, օրինականացվող իրավական սահմանման բարոյա-
կան արժեքին։ Հասարակական գիտակցության այդ ձևերի փոխներգործու-*

թյունը չի բացառում նրանց միջև ժամանակավոր հակասությունների առաջացումը։

Այդ գործոնները, որոնք արտացոլում են իրավագիտակցության ու բարոյագիտակցության, դրանց համապատասխանող նորմերի փոխներգործությունը, սոցիալիստական և կոմունիստական շինարարության որոշակի ժամանակաշրջաններում միատեսակ չեն դրսևորվում։ Իրավական և բարոյական մեթոդները սոցիալիստական հասարակության ղեկավարման սիստեմում հանդես են գալիս որպես ընդհանուր օրինաչափություն։ Գիտական գրականության մեջ կարծիքներ են հայտնվում, թե իրավական կարգավորումը, իրավական ներգործությունը և հարկադրանքը կոմունիստական շինարարության պայմաններում սկսել են կորցնել իրենց նշանակությունը, իբր զգալիորեն նեղացել է իրավանորմերի կիրառման ոլորտը։ Նմանօրինակ կարծիքները երևան են եկել պետական կառավարման ոլորտում, աշխատավորներին հասարակական կազմակերպությունների մեջ ներգրավելու, վերջիններիս իրավասությունը մեծացնելու, պետական օրգանների որոշ ֆունկցիաներ նրանց հանձնելու կապակցությամբ։ Չժխտելով այդ փաստերն ու տենդենցները, այնուամենայնիվ, չի կարելի պնդել, թե դրանց առկայությունը նշանակում է հասարակական հարաբերությունների իրավական կարգավորման թուլացում։ Ընդհակառակը, դա ավելի շուտ վկայում է բարոյական միջոցներով իրավական նորմերի ուժեղացում, հասարակության դերի բարձրացում՝ քաղաքական ու իրավական պրոբլեմների լուծման գործում։

Դրանում է արտահայտվում իրավագիտակցության և բարոյագիտակցության, իրավական ու բարոյական նորմերի դիալեկտիկական փոխներգործությունը։

Այդ պրոցեսի մյուս կողմը դրսևորվում է նրանով, որ բարոյական տարրն ավելի ու ավելի է թափանցում գիտակցության իրավական ձևի մեջ։ Եվ դա հասկանալի է, կոմունիստական հասարակությունը աշխատավորներին այնպիսի նոր իրավունքներ ու պարտականություններ է ընձեռում, որոնք անհատի վարքագծի և բարոյական տեսակետից կոլեկտիվների գործունեության ավելի բարձր պահանջներ են բովանդակում, քան սոցիալիստական իրավունքի ընձեռած նորմերը։ Ուստի, կոմունիստական հասարակության առաջընթացի համեմատ ուժեղանում է անհատի բարոյական պատասխանատվությունը հասարակության հանդեպ։ Մասսաների գիտակցականության աճի պրոցեսում բարձրանում է նրանց պահանջկոտությունն ու անհանդուրժողականությունը հասարակության այն անդամների հանդեպ, որոնց վարքագիծը հակասում է սոցիալիզմի և կոմունիզմի բարոյական գաղափարներին։

Բարոյական այդ բարձր պահանջներն աստիճանաբար տարածվում են մասսաների գիտակցության վրա՝ կրելով տնտեսական, սոցիալ-քաղաքական գործոնների ազդեցությունը։ Երբ այդ բարոյական պահանջները բավականաչափ տարածված և ճանաչված են հասարակության անդամների մեծամասնության կողմից, նրանք ջարդում են հին իրավական պատկերացումները և նախապատրաստում իրավունքի նոր նորմեր։ Այլ կերպ ասած, այն բարոյական պահանջները, որոնք ընդհանուր հավանություն են ստացել և դրական նշանակություն ունեն հասարակական հարաբերությունների կարգավորման ասպարեզում, արտացոլվում են իրավական նորմերում։ Այսպես, վերջին տարիների աշխատանքի համընդհանրության սկզբունքը և ի բարօրություն հասարակության բարեխիղճ աշխատանքի բարոյական նորմը, անհանդուրժողակա-



նությունը պորտաբուծության, ընչաքաղցության, անազնվության հանդեպ՝ արտացոլվել և ամրապնդվել են սովետական պետության մի շարք օրենսդրական ակտերում։ Հանրօգուտ աշխատանքից խուսափող և հակահասարակական, մակաբույծ կյանք վարող անձանց դեմ պայքարելու մասին հրամանագիրը իրավական ուժ տվեց հասարակական բարոյական պահանջին։ Ազնիվ աշխատանքով ապրելը սովետական մարդու նշանաբանն է, քաղաքացիական պարտականությունը։ Բարոյական պահանջներն ավելի ու ավելի են թափանցում իրավագիտակցության և իրավանորմերի ոլորտը։ Այդ է վկայում քրեաիրավական այն նորմը, ըստ որի պատիժ է նշանակվում անօգնական վիճակում գտնվող անձին օգնություն ցույց չտալու կամ համապատասխան հիմնարկին տեղյակ չպահելու համար։ Քրեական օրենսգիրքը պատասխանատվություն է սահմանում անաշխատունակ ծնողներին պահելու համար դատարանի որոշած վճարումներից չարամտորեն խուսափողների, երեխաների ապրուստի միջոցներ վճարելուց փաստորեն հրաժարվող ծնողների նկատմամբ։ Սահմանված է նաև այնպիսի իրավական նորմ, ըստ որի հանցագործություն կատարած՝ ալկոհոլիզմով տառապող անձանց բուժում է նշանակվում։

Բարոյական սկզբունքների ու նորմերի ազդեցության և ներգործության շնորհիվ, արդի դատական պրակտիկայում հիմնվում են իրավունքի նոր ինստիտուտներ, վնասի հատուցման պարտավորությունների, սոցիալիստական սեփականության պաշտպանության, այլ անձի գործն առանց նրա լիազորության վարելու, առանց իրերի պահպանման և այլ ինստիտուտներ։

Իրավագիտակցության ազդեցությամբ բարձրանում է պահանջկոտությունը պետական կազմակերպությունների, հիմնարկների և դրանց ղեկավարների նկատմամբ։ Արհեստակցական միությունների ֆաբրիկա-գործարանային և տեղական կոմիտեների իրավունքների նոր կանոնադրությունը, որը հաստատվել է ՍՍՀՄ Գերագույն սովետի 1958 թ. հուլիսի 15-ի հրամանագրով, բովանդակում է բարոյական պահանջներ բյուրոկրատիզմի դեմ պայքարելու վերաբերյալ։ Այդ կանոնադրությունը ֆաբրիկա-գործարանային և տեղական կոմիտեներին իրավունք է վերապահում հարց հարուցել համապատասխան կազմակերպությունների առջև՝ աշխատանքից ազատելու կամ պատժելու այն ղեկավար աշխատողներին, ովքեր չեն իրագործում կոլեկտիվ պայմանագրով վերցրած պարտավորությունները, դրսևորում են բյուրոկրատիզմ, թույլ են տալիս քաշքշուկ, խախտում աշխատանքային օրենսդրությունը։

Իրավական նորմերում ավելի են զարգանում բարոյական արժեքներն ու դրանցից բխող պահանջները՝ քաղաքացու ազնվության ու արժանապատվության, զանցանքների, կատարված հանցագործության բարոյական կերպարի բացատրման վերաբերյալ և այլն։

Իրավագիտակցության և բարոյագիտակցության փոխներգործությունն արտահայտվում է նաև նրանում, որ ընդունվող օրենքները բովանդակում են բարոյական հիմնավորումներ։ Առանձնապես վտանգավոր հանցագործությունների դեմ պայքարն ուժեղացնելու, խաղաղությունը պաշտպանելու մասին հրամանագրերը հասարակական կարծիքի արտահայտություն են, աշխատավորությանը հուզող սոցիալական պրոբլեմների օրինականացված մարմնավորում։

Բարոյագիտակցության աճը, նրա պահանջների բարձրացումը մեծ ազդեցություն ունեն իրավագիտակցության զարգացման վրա։ Իրավաբանորեն

ամրապնդված բարոյական նորմը առավել հնարավորություն է ստանում ներգործելու մարդկանց մտքերի ու զգացմունքների վրա։ Իրավական նորմը, իր հերթին, ամրապնդված լինելով համապատասխան բարոյական պահանջով, արժանանում է հասարակության հավանությանն ու աջակցությանը։ Շնորհիվ բարոյագիտակցության և իրավագիտակցության փոխներթափանցման ու մերձեցման սոցիալական նորմերի իրականացումը հարկադրանքի միջոցների լայն կիրառում չի պահանջում։ Սոցիալական նորմերի կատարումը դառնում է պարտքի գիտակցում և համոզմունք, բարոյական անհրաժեշտություն։

Այսպիսով, հասարակության անդամների գիտակցության մեջ հայացք է ձևավորվում կիրառվող իրավական նորմերի արդարացիության և նպատակահարմարության վերաբերյալ։ Իրավագիտակցությունը, իրավական նորմերում ամրապնդելով բարոյական պահանջները, նպաստում է հասարակական կյանքում դրանց տարածմանն ու արմատավորմանը։ Եթե հասարակական տվյալ կոնկրետ հարաբերությունների ամրապնդման ու պահպանման համար բարոյական ներգործությունը բավական չէ, այն կարող է ամրապնդվել իրավական նորմով։ Կյանքի համար վտանգավոր դրության մեջ գտնվող մարդուն օգնություն ցույց չտալու համար քրեական պատասխանատվությունն ուղղված է ո՛չ միայն դժբախտ դեպքերի կրճատմանը, այլև այն բարոյական նորմի ամրապնդմանը, որ մարդը մարդուն բարեկամ է, ընկեր։ Իր հերթին, բարոյական պահանջները ամրապնդում, ուժեղացնում և տարածում են իրավունքի գործողությունը։ Առանց բարոյական պարսավանքի, արգելքի, դատապարտման թուլանում է իրավական արգելանքի, վճռի ներգործությունը, նվազում իրավական նորմի դաստիարակչական ֆունկցիան։ Շատ իրավական նորմեր նպաստում են աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի աճին, նրանց դաստիարակմանն ու բազմակողմանի զարգացմանը։

Բարոյագիտակցության վրա իրավագիտակցության ազդեցությունն արտահայտվում է նաև նրանում, որ իրավանորմերը նպաստում են ներգործելու հասարակության անդամների վարքագծի, հասարակական մեթոդների տարածման, կատարելագործման և ամրապնդման վրա։ Այստեղից հետևում է, որ իրավագիտակցության և բարոյագիտակցության փոխներգործությունն ու մերձեցումը վճռական գործոն են իրավական և բարոյական նորմերի դաստիարակչական դերի կենսագործման ասպարեզում։ Իրավագիտակցությամբ և բարոյագիտակցությամբ ձևավորված, իրավական և բարոյական նորմերում ամրապնդված պահանջները սոցիալիստական հասարակության բոլոր անդամներին դաստիարակում են սոցիալիստական օրենքները հարգելու և անշեղ պահպանելու ոգով։

Սոցիալիստական իրավագիտակցության հիմնական պահանջներն են՝ աշխատել ի բարօրություն հասարակության, աշխատանք ստանալ և ըստ աշխատանքի վարձատրվել, խնամքով վերաբերվել հասարակական ունեցվածքին, անհանդուրժողականություն ցուցաբերել սոցիալիստական համակեցության կանոնների խախտման նկատմամբ։

Հասարակական կյանքի այդ գործոնները ուղեցույց են ոչ միայն մարդկանց, կոլեկտիվների վարքագծի, այլև սոցիալիստական գիտակցության ձևավորման, մարդու մտքերի ու զգացմունքների վրա ազդող կայուն հայացքների ու սովորույթների մշակման և ամրապնդման ավելի ընդհանուր միջոց։

Աշխատավորների քաղաքացիական պարտականություններն անթերի և



գիտակցաբար կատարելու գործում որոշիչ է իրավական դաստիարակության դերը։ Այժմ կոմունիզմի շինարարության ժամանակաշրջանում անշեղորեն ընդարձակվում են քաղաքացիների, պետական և հասարակական կազմակերպությունների իրավունքները, դրանցից խելացի օգտվելու պարտականություններն ու պատասխանատվությունը։ Անհանդուրժելի է դառնում ձևական վերաբերմունքն իրենց պարտականությունների հանդեպ, առավել ևս՝ իրավունքների չարաշահումը։ Սոցիալական նորմերի սխալ ըմբռնման և դրանց նկատմամբ սխալ վերաբերմունքի հետ կապված տենդենցների հաղթահարման իրավական կուլտուրա մտցնելու համար անհրաժեշտ է սիստեմատիկ աշխատանք կատարել։ Իրավական կուլտուրան իրավական դաստիարակության պայմաններից մեկն է, սոցիալիստական կուլտուրայի մի մասը։

Պետական ապարատի բոլոր աշխատողները պետք է զինված լինեն իրավական գիտելիքներով։ Այդ անհրաժեշտ է, հատկապես, հասարակական կազմակերպությունների գործիչներին, քանի որ նրանք ակտիվ մասնակցում են հասարակության կառավարմանը։ Կոմունիզմի շինարարության արդի պայմաններում իրավական գիտելիքները հարկավոր են հասարակության բոլոր անդամներին՝ սեփական իրավունքներն ավելի գործիմաց պաշտպանելու, իրենց պարտականությունները հասարակական պարտքի զգացումով կատարելու, հասարակության սոցիալական նորմերի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք մշակելու համար։

Այսպիսով, իրավագիտակցության և բարոյագիտակցության զարգացումն ու մերձեցումը խորացնում են դրանց փոխներգործությունը, որը դրսևորվում է իրավագիտակցության մեջ իրավանորմերի կենսագործման, մարդկանց վարքագծի կարգավորման ոլորտում։ Սոցիալիստական իրավագիտակցությունը նպաստում է հասարակության անդամների բարոյական կատարելությանը, բարձրացնում նրանց բարոյական պատասխանատվությունը։ Հասարակական գիտակցության այդ ձևերից յուրաքանչյուրը կանխորոշում է այդ ձևերի փոխներգործությունն ու մերձեցումը, պայմաններ նախապատրաստում սոցիալիստական հասարակության նորմերի՝ կոմունիստական համակեցության նորմերի վերաճման համար։



աշխատանքի շարժման։ Մասսաների մրցությունը նպաստեց նոր բարոյական նորմերի ձևավորմանը, զարկ տվեց աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության ծավալմանը, նպաստեց արտադրողական ուժերի վերելքին, գիտակցական կարգապահության բարձրացմանը, կոլեկտիվիստական հարաբերությունների, բարեկամության ու փոխադարձ օգնության ամրապնդմանը, արտադրության հետ գիտության միավորմանը։

Մեծ է մասսայական փորձի դերը կոմունիստական շինարարության արդի էտապում։ «...որքան ավելի ծանր է, որքան ավելի մեծ է, որքան ավելի պատասխանատու է պատմական նոր խնդիրը, այնքան ավելի շատ պիտի լինեն մարդիկ, որոնց միլիոններով պիտի ներգրավել այդ խնդիրների լուծմանն ինքնուրույն մասնակցելու» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 587)։

Կոմունիստական կուսակցությունը առաջնահերթ նշանակություն է տալիս հասարակական կյանքի բոլոր պրոցեսների կառավարման ու կարգավորման գործում մասսաների ստեղծագործական ակտիվությունն ապահովելու պայմանների ու միջոցների կատարելագործմանը։ Այստեղ չափազանց կարևոր է սոցիալիստական դեմոկրատիայի, դեմոկրատական ցենտրալիզմի հետևողական կենսագործումը, որը հնարավորություն է տալիս կազմակերպվածությունը, կարգապահությունը և միասնական ղեկավարությունը զուգակցելու մասսաների աճող նախաձեռնության և ինքնագործունեության հետ։

Կոմունիստական շինարարության ոլորտում անհնար է հասկանալ աշխատավորների գիտակցական եռանդի ու գործնական փորձի նշանակությունը. առանց հաշվի առնելու այն կարևորագույն ֆունկցիաները, որ այդ պրոցեսում կատարում է սոցիալիստական դեմոկրատիան։ Բուրժուական դեմոկրատիայի հանդեպ վերջինիս գերազանցությունը դրսևորվում է քաղաքական իրավունքների ու ազատությունների լայն ծավալման մեջ. դրանք որպես իրավական երաշխիքներ տրամադրված են աշխատավորներին և արտացոլում են սոցիալիստական ժողովրդաիշխանության էությունն ու ֆունկցիան։

Հիրավի. կապիտալիզմը անտարբեր է այն բանի նկատմամբ, թե տվյալ երկիրը ինչ պետականություն ունի— պառլամենտական հանրապետություն է, սահմանադրական միապետություն, թե՞ ֆաշիստական դիկտատուրա։ Եվ դա այն պատճառով, որ դեմոկրատիան չի բխում կապիտալիստական հասարակական և պետական կազմակերպության էությունից, ծառայում է ժողովրդական լայն մասսաների ճնշմանը։ Կապիտալիստական էկոնոմիկայի, բուրժուական պետական ապարատի «նորմալ» գործունեությունը հնարավոր է սոսկ այնքանով, որքանով այն բացառում է մասսայական նախաձեռնության, փորձի «ներխուժումը» այդ ոլորտները, որոնց ղեկավարությունը կառավարող դասակարգերի մենաշնորհն է։

Սոցիալիստական էկոնոմիկայի կենսագործունեությունը և առաջադիմությունը անխզելի են մասսաների կազմակերպման դեմոկրատական սկզբունքների պլանավորման, հաշվառման, վերահսկողության բնագավառներում աշխատավորների աճող մասնակցության, մասսայական փորձի ազդեցությունից։ Փորձ, որը ժամանակին արձագանքում է, թե ինչպիսի հակասություններ են առաջանում արտադրության ոլորտներում, սոցիալական և այլ հարաբերությունների ու հետաքրքրասիրությունների բնագավառում և ինչ պետք է ձեռնարկել այդ հակասությունների հաղթահարման համար։

Սոցիալիստական դեմոկրատիան զուգակցված է մասսաների վերափոխիչ գործունեության հետ։ Այն սովետների, արհմիությունների և հասարակա-



կան մյուս կազմակերպությունների միջոցով ապահովում է աշխատավորների ամենօրյա մասնակցությունը հասարակության կենսագործունեության այնպիսի կարևորագույն պրոբլեմների լուծմանը, ինչպես տնտեսական և սոցիալական պլանավորումն է, վերահսկողությունը՝ պետական մարմինների գործունեության նկատմամբ, ազգային եկամտի բաշխումը, համամիութենական և տեղական բյուջեները և դրանց իրացումը, աշխատանքի կազմակերպումը, դրա հաշվառման և վճարման սիստեմների մշակումը, նյութական ու բարոյական խթանումը, կադրերի առաջքաշումը և այլն։ Մասսաների գործունեության այդ և մյուս բնագավառները միաժամանակ նրանց գործնական փորձի հարստացման, ստեղծագործական կիրառման ասպարեզ են։

Աշխատավորների փորձի նշանակությունը մեծանում է պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի պայմաններում։

Հասարակական տնտեսության կարգավորման ու զարգացման, փոխանակության ու բաշխման տնտեսական մեթոդների արմատավորումը նպաստում է արտադրության կառավարման կատարելագործմանը։ Անհրաժեշտ է նաև բարձրացնել մասսաների ընդհանուր և պրոֆեսիոնալ կուլտուրան, ուժեղացնել գիտության և արտադրության կապը, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի, մարդկանց միջև փորձի ու գործունեության փոխանակումը, բարելավել կառավարման ձևերի ու մեթոդների, պետական մարմինների և մասսայական կազմակերպությունների աշխատանքը։ Արտադրության նոր պայմանները ենթադրում են «ետադարձ կապերի» սիստեմի՝ որպես արտադրության ու կառավարման իմանենտ կողմի, ոչ թե պատահական, այլ կանոնավոր գործողություն, աշխատավորների մասսայական գործունեության ձևերի ընդլայնում և դրանց դերի բարձրացում, պլանային առաջադրանքների, տեխնոլոգիական պրոցեսների օպերատիվ ճշտում, «արտադրություն—առևտուր—սպառում», «արտադրություն—փոխադրում», «նյութատեխնիկական մատակարարում—արտադրություն» և այլ սիստեմներում գոյություն ունեցող անհամամասնությունների ու թերությունների աղաղանգում։

Աշխատավորների ստեղծագործական ակտիվության և ազդեցության ուժեղացումը (ռեֆորմի շնորհիվ) կապված է սոցիալական պլանավորման կիրառման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ձեռնարկությունների եկամուտների ու շահույթների ավելացման, նրանց գործնական և անմիջական մասնակցության ոլորտների ընդլայնման հետ։ Դրա նպատակն է՝ բարելավել աշխատավորների աշխատանքի, կենցաղի պայմանները, բարձրացնելու կուլտուր-տեխնիկական մակարդակը։ Ռեֆորմը տնտեսապես խթանում է ստեղծագործական նախաձեռնող աշխատանքը, գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրումը արտադրության մեջ, գյուտարարության և ռացիոնալիզատորական առաջարկների հետագա զարգացումը, բարենպաստ պայմաններ են ստեղծում խստորեն պահպանելու ըստ քանակի և որակի վարձատրության սկզբունքը։ Ռեֆորմը զարգացնում է աշխատավորների ինչպես նյութական, այնպես և բարոյական շահագրգռվածությունը՝ կատարելագործելու իրենց գիտելիքները, բարձրացնելու արտադրական որակավորումը, ավելի կործարար մասնակցելու տնտեսական ու սոցիալական պրոբլեմների լուծմանը։ Նոր պայմաններում մասսաներն ավելի կոնկրետ են գիտակցում, որ յուրաքանչյուր աշխատողի նյութական բարեկեցության աճը կախված է կոլեկտիվի աշխատանքի ընդհանուր որակական ցուցանիշներից։ Այս հանգամանքը բարձրացնում է փոխադարձ պատասխանատվությունը, վերահսկողությունը,

օգնությունը, ուժեղացնում անհաշտ վերաբերմունքը թերությունների նկատմամբ։ Ուստի, ավելի արդյունավետ է դառնում այն պայքարը, որ մղվում է անհատապաշտության ու էգոիզմի, կոլեկտիվի կամքի, հասարակայնության դերի ու պահանջների անտեսման դեմ։

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1964 թ.) պլենումի և կուսակցության XXIII համագումարի որոշումներով սահմանված են սոցիալիստական էկոնոմիկայի, կուլտուրայի և դեմոկրատիայի զարգացման մեծ և բարդ պրոցեսի հիմնական ուղղությունները, որոնք սերտ կապված են կուսակցական, պետական և տնտեսական կառավարման գիտական հիմունքների խորացման, սովետների, ինչպես նաև հասարակական կազմակերպությունների դերի բարձրացման, ժողովրդական վերահսկողության ուժեղացման հետ, որոնք կարևորագույն պայմաններ ու միջոցներ են՝ մասսայական փորձը զարգացնելու, ուսումնասիրելու և խելացի օգտագործելու համար։

Մեր ժամանակներում մեծ գործունեություն է ծավալվում սովետների հետագա դեմոկրատացման հիման վրա բարելավելու դրանց աշխատանքը։ Այն ենթադրում է բարձրացնել աշխատավորների դեպուտատների սեսիաների նշանակությունը, մեծացնել տեղական սովետների ինքնուրույնությունը տնտեսական, ֆինանսական, հողային հարցերի լուծման, տեղական արդյունաբերության ձեռնարկություններում ղեկավարման, բնակչության սոցիալական սպասարկման, մշտական հանձնաժողովների աշխատանքի ակտիվացման, ընտրողների առաջ դեպուտատների կանոնավոր հաշվետվությունների ապահովման և այլ ասպարեզներում։ Այդ և այլ կարևոր միջոցառումներ, որ նախատեսել է ՍՄԿԿ XXIII համագումարը, լիովին կենսագործվում են պրակտիկայում, ուժեղացնում սոցիալիստական ժողովրդական իշխանությունը։

Մասսաների ստեղծագործական ակտիվության հետագա զարգացումը, նրանց փորձի ազդեցության ընդլայնումը արտադրության, վերահսկողության, կառավարման ոլորտներում և ընդհանրապես հասարակական ու պետական կյանքում, պահանջում են հետևողական պայքար այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք, օրինակ, բյուրոկրատիզմն է։ Այն դրսևորվում է, մասնավորապես, աշխատավորների ամենօրյա պահանջների ու կարիքների նկատմամբ անուշադրության, նրանց քննադատական դիտողությունների, գանգատների ու առաջարկությունների կամ ֆորմալիզմի տարրերի առկայության ոլորտում, առանձին հասարակական կազմակերպությունների աշխատանքում, առաջավոր փորձը ժամանակին պրոպագանդելու և տարածելու բնագավառում։ Շատ բան է կախված մամուլի աշխատանքից, երկրի ներսում և արտասահմանում տեղի ունեցող պրոցեսներն ու իրադարձությունները ժամանակին, բազմակողմանի լուսաբանելու ճկունությունից։ Կուսակցությունը չթուլացող ուշադրություն է նվիրում այդ բոլոր հարցերին։

Սոցիալիզմի զարգացումը և կոմունիզմի հիմքերի կառուցումը պայմանավորված են անմիջական և ներկայացուցչական դեմոկրատիայի հարաբերակցության փոփոխություններով, մասսաների կամքի ուղղակի արտահայտության ուղիների ու ձևերի (հանրաքվեների, հրատապ տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական պրոբլեմների, օրինագծերի և այլնի մասսայական քննարկումների ընդլայնմամբ, աշխատողների՝ նախկինում նշանակվող խմբերի վրա ընտրական սկզբունքը տարածելով, սովետների, մամուլի,



կուլտուր-լուսավորական և այլ հիմնարկների հասարակական ակտիվի անշեղ ընդլայնմամբ։

Այսպես, սովետական մարդիկ սկսում են հետաքրքրվել տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական պրոբլեմներով, որոնց քննարկմանն ու լուծմանը, դրսևորելով իրենց կենսափորձի ներգործող ուժը, գործարար մասնակցություն են երևան բերում։ Վերջերս սովետական լայն հասարակայնության ուշադրությանն է գրավել պլանավորման ու տնտեսական խթանման նոր սկզբունքների արմատավորման, ամուսնության և ընտանիքի օրենսդրության հիմունքների ընդունման, հողային օրենսդրության նախագծի հրապարակման, երեկոյան և հեռակա ուսուցման կատարելագործման ուղիների կարգավորման, պարտադիր միջնակարգ կրթության օրենքի կենսագործման, բնակչության սպասարկման ոլորտներում աշխատանքների բարելավման, ինքնագործունեության մասսայական ձևերի կիրառման, արտադրական ոլորտում (կենցաղում) ժամանցի կազմակերպման, երեխաների դաստիարակման, դպրոցին օգնություն ցույց տալու, ընտանիքների հետ կապերն ամրապնդելու խնդիրները։ Այստեղ մասսաների կենսափորձը դրսևորում է իր ստեղծարար ուժը։

Սոցիալիստական հասարակության մեջ ծնունդ առնող նորարարությունների նախաձեռնողները կոմունիստներն են, հասարակական ակտիվ գործիչները, արտադրության առաջավորները։ Խնդիրն այն է, որ ընդլայնվի ու խորացվի առաջավորների փորձը, արմատավորվի նորը, էկոնոմիկայի, կուլտուրայի, կենցաղի ասպարեզում հասարակական հարաբերությունների ողջ սիստեմում միլիոնները ընկալեն և համոզվեն, որ դրանք համապատասխանում են իրենց շահերին, որ դրանով քաղաքական ու կուլտուրական նոր աստիճանի է բարձրանում մասսաների կենսափորձը։

Վերջին ժամանակներս լայն չափերի են հասել սոցիոլոգիական կոնկրետ հետազոտությունները։ Սոցիալական փորձերի շնորհիվ նախապես ստուգվում են կազմակերպման ու կառավարման նոր ձևերը։ Արդյունաբերական ձեռնարկությունների՝ պլանավորման տնտեսական խթանման նոր սիստեմի մասսայաբար անցնելուն նախորդել են մի շարք փորձնական ստուգումներ, որոնց նպատակն է պարզել վերջինիս արդյունավետությունը, բացի այդ, մի շարք ոչ-մեծ ձեռնարկությունների սկզբնական փորձի հիման վրա ճշտվել են սկզբնական արդյունքները։ Դրա հետ միասին ավելորդ չէ նշել, որ սոցիալական փորձերի մեթոդը դեռևս բավարար չափով չի կիրառվում։ Առանձնապես խոստումնալից է առաջավոր փորձի փոխանակման կազմակերպման գործը։ Անհրաժեշտ է, սակայն, մշակել մրցության պայմաններն ու ձևերը, դրանց ուղղությունները, աստիճանները և այլն։

Մասսայական փորձի գիտա-ճանաչողական նշանակության աճը, դրա դերի բարձրացումը կապված են կոմունիստական առաջընթացում տեղի ունեցող որակական տեղաշարժերի հետ։

Ի տարբերություն սովետական առաջին սերունդների փորձի, կոմունիզմի համար մարտնչող ժամանակակիցների փորձը ձևավորվում է սոցիալիստական ապրելակերպի, կուլտուրայի, գիտելիքների, սովորույթների անհամեմատ ավելի բարձր մակարդակի հիման վրա։ Նոր հասարակության զարգացման յուրաքանչյուր հաջորդ փուլ խարսխվում է կյանքի, ժամանակի պայմաններով ստուգված ու ճշտված, օբյեկտիվացած տնտեսական և հոգևոր նախադրյալների փորձի վրա։ Ուստի, այն սոցիալական գիտելիքների ոլորտում տեսության և պրակտիկայի առավել խոր ու օրգանական կապն է նոր մարդկանց

սովորույթներում, ավանդույթներում, արժեքներում։ Բացի այդ, եթե նախասոցիալիստական բոլոր դարաշրջաններում մասսաների փորձը, ինչպես նշվեց, գրեթե ամբողջովին գոյանում էր նրանց էմպիրիկ գիտելիքների հիման վրա և իր իդեալական արտահայտությունն ստանում սոցիալ-հոգեբանական աստիճանում, ապա սոցիալիզմի պայմաններում դրա էմպիրիկ և գիտա-տեսական գիտելիքների, սոցիալական հոգեբանության և մատերիալիստական աշխարհայացքի միասնության արտահայտությունը առավել մեծ չափերի է հասնում։ Ընդ որում, կենսափորձի հոգեբանական ասպեկտը ևս որակապես փոխվում է։ Այն արտահայտվում է մարդկանց նոր տնտեսական ու սոցիալական դրությամբ, կրում կրթության, կուլտուրայի, նոր ապրելակերպի ազդեցությունը։ Այդ ամենը դրական է ներգործում մասսաների մտքի և զգացմունքների պրակտիկ գործունեության վրա։ Այդ գործունեությունը, որը յուրաքանչյուր հաջորդ սերնդի մոտ ավելի մեծ չափով է խարսխվում նախորդ սերնդի փորձի վրա, որը արտահայտվում է տնտեսական, սոցիալական և կուլտուրական նվաճումներում, սոցիալիստական շինարարության, տնտեսության ու պրակտիկայի միասնության մեջ։ Տեսությամբ զինված այդ պրակտիկան սոցիալիզմի մեծ նվաճումն է, այն կայուն հիմքը, որը հասարակությունն առաջ է մղում, նոր աստիճանի բարձրացնում։

Բարդ է աշխատավորների նոր փորձի սկզբնավորման պրոցեսը։ Չէ՞ որ նորը ոչ միայն նախադրյալներ, հիմք ունի արդեն կազմավորածի մեջ, այլև այս կամ այն չափով ընդհանուրի կողմից ընդունվածի, ավանդույթի բացասումն է։ Նորի արմատավորումը, ճանաչումը, հատկապես, երբ դա կապված է կենցաղի արդեն կազմավորված ձևերի, լայն մասսաների հայացքներում տեղի ունեցող փոփոխությունների հետ, այսպես թե այնպես դիմադրության է հանդիպում, կապված է պայքարի, իներցիայի ուժերի հաղթահարման հետ։ Եվ հասկանալի է, թե այդ գործում որքան շատ բան է կախված առաջավոր հասարակայնության դիրքորոշումից, ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցներից, քննադատության մեջ սկզբունքայնության ու հետևողականության աստիճանից, այն ամենի հաղթահարումից, ինչը խանգարում է նորին, իր կյանքի համար ճանապարհ հարթողին։

Մասսաների փորձն ունի մի շարք ասպեկտներ, զանազան դրսևորումներ։ Կազմակերպչական և «նյութականացված» ձևերի հետ միասին (Նորարարական նախաձեռնությունները, արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ աշխատանքի կազմակերպման նոր մեթոդները, տեխնիկայի և տեխնոլոգիայի կատարելագործումը և այլն) այն ունի նաև մարմնավորման, արտահայտման իդեալական ձևեր, որոնց ուսումնասիրությունն ու հաշվառումը կարևոր են քաղաքական ճիշտ ղեկավարման, սոցիալական պայմանների, մասսաների ստեղծագործական ակտիվության աճի խթանման համար։ Մենք նկատի ունենք մարդկանց կենսափորձում, հայացքներում, տրամադրություններում, ձգտումներում, հարցումներում, կարծիքներում մասսայական և խմբային հոգեբանության մեջ զգացվող փոփոխությունների հետազոտությունը և հաշվառումը։ Գիտական քաղաքականությունն առաջնային է սոցիալական հոգեբանության հանդեպ։ Այն տեսական վերլուծության ու կանխատեսումների հիման վրա որոշում է շարժման նպատակները։ Բայց այստեղից չի հետևում, թե քաղաքականությունը, իբր, կարող է մասսաների գործունեության, պայքարի միջոցով իրականում լուծել այդ խնդիրները, առանց խորապես հաշվի առնելու նրանց կենսափորձը, զգացմունքները, տրամադրությունները, ձգ-



տումները։ Ձանտեսելով մասսայական գիտակցության պատկերը, տարբերելով նրանում եղած առաջավորը հետամնացից, զարգացման տենդենցը, միլիոնների կողմից ընկալվող և այդ միլիոններին հուզող երևույթների ու փաստերի բնույթը, քաղաքականությունն ունակ է որոշելու գլխավոր և երկրորդական խնդիրները, ակտիվացնելու միլիոնների կոլեկտիվ ջանքերը, կողմնորոշելու պետության, հասարակական կազմակերպությունների գործունեությունը հանուն այնպիսի կոնկրետ նպատակների իրականացման, որոնք հասկանալի են մասսաներին, նպաստում են առաջադիմության արմատական խնդիրների կատարմանը։

Այստեղ հսկայական դեր է խաղում կազմակերպական ու գաղափարական աշխատանքի միասնությունը։ Այն, մի կողմից՝ կանխում է մասսայի մեջ կատարվող կազմակերպական աշխատանքը մերկապարանոց գործնականության վերածվելուն, որը մոռացնել է տալիս սոցիալական առաջադիմության ուղղությունները ու նպատակները, մյուս կողմից՝ գաղափարական աշխատանքին տալիս է առարկայական, ստեղծագործական բնույթ, այդ կապելով տնտեսական և կուլտուրական շինարարության կոնկրետ խնդիրների, մասսաների պահանջների իրական հաշվառման հետ, առանց որի այն կարող է ընդունել նեղ, լուսավորչական բնույթ, կտրվել կյանքից։

Սոցիալիզմի պայմաններում հասարակական կարծիքը այն մարդկանց կարծիքն է, ում ձեռքին է պետական իշխանությունը, ում աշխատանքով, բանականությամբ և կամքով զարգանում է հասարակությունը։ Հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը, քաղաքականության, պետական ֆունկցիաների, իրավունքի, պրոպագանդայի և մասսայական բարոյագիտակցության ընդհանուր ուղղությունը կանխորոշում են հասարական կարծիքի բարձր հեղինակությունը և գործունակությունը, որը փոփոխական մեծություն է։ Այլ հավասար պայմաններում այն կախված է բազմաթիվ գործոններից՝ դեմոկրատիայի զարգացման աստիճանից, պետական կառավարման մեխանիզմի պարզությունից և մասսաների համար մատչելիությունից, բյուրոկրատիզմի դեմ պայքարի արդյունավետությունից, մասսայական փորձի, աշխատավորների հարցադրումների ու առաջարկությունների նկատմամբ անուշադիր վերաբերմունքից, նրանց կուլտուրայի և գիտելիքների մակարդակից, ինֆորմացիայի օբյեկտիվությունից, ծավալից, օպերատիվությունից և այլն։ Ուրեմն, հասարակական կարծիքի ազդեցության աստիճանը կյանքի, քաղաքականության, էկոնոմիկայի, կուլտուրայի զարգացման պրոցեսների, անհատի դաստիարակության վրա՝ անսխալ ցույց է տալիս մասսաների հասարակական-քաղաքական ակտիվության մակարդակը, քաղաքականության ու պրոպագանդայի գործունակությունը, պետական մարմինների, դեմոկրատական ինստիտուտների աշխատանքի որակը։

Հասարակական կարծիքի ազդեցությունը նպաստում է մարդկանց գաղափարական-քաղաքական հայացքների և նրանց պրակտիկ գործունեության ամրապնդմանը, վարքագծի, խոսքի և գործի միասնությանը, աշխատավորների շրջանում զարգացնում բարձր գիտակցականության և պարտքի զգացում՝ կոլեկտիվի և հասարակության հանդեպ։ Դա բացատրվում է նաև նրանով, որ դեմոկրատորեն և հրապարակայնորեն ձևավորվող հասարակական կարծիքը ի վիճակի է դառնում ճիշտ արտահայտելու հասարակական շահը, գնահատականը, նկատի առնելով այն հանգամանքը, թե դա համապատասխանո՞ւմ է

տրդյոք անհատի վարքագծին: Մասսաների կարծիքը բարոյապես խրախուսում է այն արարքն ու գործողությունը, որոնք հիմնվում են հասարակական պարտքի ճիշտ ըմբռնման վրա, նախազգուշացնում և դատապարտում հակահասարակական երևույթները, շեղումները՝ ընդունված վարքագծից:

Գաղափարապես հասուն հեղինակավոր հասարակական կարծիքը խոր հարգանքի մթնոլորտ է ստեղծում այն մարդկանց նկատմամբ, ովքեր նախաձեռնություն են ցուցաբերում աշխատանքում, ազնիվ են անձնական հարաբերություններում, դրսևորում են քաղաքացիական արիություն, ամրապնդում ընկերություն, փոխադարձ օգնության հարաբերությունները: Հասարակական աջակցությունը բացառիկ նշանակություն ունի կոմունիստական բարոյականության ազդեցության ոլորտներն ընդլայնելու գործում: Առանձին մարդկանց վարքագծի մասսայական ճանաչումն ու բարոյական խրախուսումը ակտիվ հոգեբանական ձգտում են առաջացնում մյուսների մեջ՝ ընդօրինակելու և նույնպես արժանանալու հասարակական խոր հարգանքի:

Անհատի բարոյական դաստիարակության համար խիստ էական է նաև, որ հասարակական կարծիքը ձևավորվում է հրապարակայնորեն, մարդկանց հուզող հարցերի մասսայական քննարկման ընթացքում: Այստեղ կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի, հասարակական կազմակերպության հայացքներն ու կարծիքները՝ ընդհանուր շահն արտահայտելու պրոցեսում, ամփոփվում են կոլեկտիվ դատողության մեջ: Ուստի, հենց այդ գնահատականներն ու դատողությունները առանձին անհատը ընդունում է ոչ թե ճնշմամբ, որպես պարտադրված, խորթ, կողմնակի ուժ, այլ ընդհանուր շահ, որտեղ մարմնավորված են նաև անձնական շահերը: Այսպիսով, այն իր հերթին ուժեղացնում է մարդու վարքագծի հանդեպ հասարակական կարծիքի բարոյապես պարտադրող ներգործությունը:

Հասարակական հետաքրքրություն ներկայացնող ամենաբազմազան, հրատապ երևույթների և փաստերի շուրջ ձևավորվող հասարակական կարծիքի գնահատականներն ու դատողությունները ապահովում են անհատի անձի հանդեպ մասսայական բարոյական վերահսկողության անընդհատությունը: Հասարակական կարծիքը ներգործում է ո՛չ միայն լայնորեն արձագանքվելիս, այլև դրանից հետո: Բարոյա-հոգեբանական մթնոլորտը ո՛չ միայն սահմանափակում է մնացուկների դրսևորման հնարավորությունը, այլև խոր ապրումներ առաջացնում յուրաքանչյուրի մեջ, ով բարձր է գնահատում կոլեկտիվի, միջավայրի վստահությունն ու հարգանքը, ուժեղացնում ինքնադաստիարակության պրոցեսը, ակտիվացնում հետամնաց հայացքների, զգացմունքների ու սովորույթների վերափոխմանն ուղղված կամքն ու ջանքերը: Բայց այդ ազդեցությունը թուլանում է, եթե հասարակայնությունը ժամանակին ուշադրություն չի նվիրում այն նոր փաստերին, որոնք պահանջում են խրախուսանք կամ ընդհակառակը՝ դատապարտում:

Նոր մարդու հոգևոր կերպարը բնութագրում են ո՛չ միայն մտքի խորությունը, այլև զգացմունքների հարստությունն ու նրբանկատությունը, հույզը: Գաղափարական-տեսական հայացքների և զգացմունքների ներդաշնակումն ապահովելու գործում, մյուս գործոնների հետ միասին, մեծ է նաև հասարակական կարծիքի դերը: Հոգեբանական շատ մնացուկային տարրեր, որոնք այսպես թե այնպես իրենց արտահայտությունն են գտնում հակաբարոյական վարքագծում ու զանցանքներում, մեծ դիմացկունություն ունեն, պահպանում են իներցիայի ուժը և ավելի դանդաղ են հաղթահարվում, քան հին գաղափա-



րական-տեսական հայացքները: Բարոյագիտակցությունը, հատկապես բարոյական զգացմունքները, օժտված են հարաբերական ավելի մեծ ինքնուրույնությամբ («հեռու են» տնտեսական հարաբերություններից, բարդ, ոչ-անմիջականորեն են արտացոլում դրանցում տեղի ունեցող փոփոխությունները), քան հասարակական գիտակցության այնպիսի ձևեր, ինչպիսիք քաղաքական հայացքներն են, զգացմունքները:

Նախաձեռնող կոլեկտիվի գաղափարապես հասուն հասարակական կարծիքը մարդուն միշտ տեսադաշտում է պահում, պատշաճ ուշադրություն նվիրում նրա արարքներին, ժամանակին արտահայտում իր գոհունակությունը, բարոյապես աջակցում առաջադիմական փոփոխություններին:

Սոցիալիզմի զարգացմանը զուգընթաց, կոմունիզմ տանող ճանապարհին համեմատաբար պակասում են դատապարտելի երևույթները: Անշեղորեն աճում է բարոյական սկզբունքների նշանակությունը հասարակության կյանքում, գիտակցության մեջ, անհատի վարքագծում:

Սակայն բացասական երևույթների շրջանակը սեղմվում է այն չափով, որչափով աշխատավորների կոլեկտիվները, հասարակական կազմակերպությունները բարձր բարոյական վարքագիծը լայնորեն պաշտպանելու հետ միասին, կարողանում են ժամանակին հայտաբերել և հրապարակայնության իրազեկ դարձնել հակահասարակական, հակաբարոյական երևույթներին, սոցիալիստական համակեցության կանոնների խախտման փաստերին: Մինչդեռ, քիչ կոլեկտիվներ չկան, որտեղ հասարակական պարսավանքի ենթարկելու միակ առիթը հարբեցողության, խուլիգանության փաստերն են: Ընդամին, այնպիսի երևույթներ, ինչպիսիք բյուրոկրատիզմն է, կարիերիզմը, կոպտությունը, ընկերներին խաբելը, երկերեսանիությունը և այլն, հաճախ մասսայական քննարկման, քննադատության առարկա չեն դառնում:

Բարոյական սկզբունքների դերի աճը և հասարակական կարծիքի բարոյական հսկողության ուժեղացումը ամենևին էլ չի նշանակում, թե սովետական հասարակության զարգացման արդի էտապում պետք է սահմանափակել հասարակական և անհատական հարաբերությունների իրավական-պետական կարգավորման ֆունկցիաները կամ թուլացնել իրավական պատժաչափը՝ հասարակությանը լուրջ վնաս պատճառած հակահասարակական արարքի համար: Աշխատավորների գաղափարական և բարոյական գիտակցության աճի համեմատ անխուսափելիորեն աճում է նաև հակահասարակական արարքների նկատմամբ նրա անհաշտելիության աստիճանը: Մարդու անձնական արժանապատվության գիտակցումը և զարգացումը հարստացնում, ընդլայնում են նրա ազատությունն ու սոցիալական իրավունքները. հասարակական շահերին ավելի ու ավելի է հակադրվում ամեն մի այնպիսի գործողություն, որը սահմանափակում է անհատի այդ աճող իրավունքները, ազատությունը և արժանապատվությունը: Ահա թե ինչու միանգամայն օրինական է հակահասարակական երևույթների դեմ պայքարի ուժեղացումը ո՛չ միայն հասարակական-բարոյական մեթոդներով, այլև իրավական միջոցներով:

Մեր երկրում համաշխարհային պատմության մեջ առաջին անգամ իրագործվեց մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների կանխատեսումը՝ բանվոր դասակարգը, աշխատավոր մասսաները կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ընդունակ են ինքնուրույնաբար կառուցելու նոր հասարակություն, հաջողությամբ ղեկավարելու այն:

Մեր գաղափարական հակառակորդները փորձում են նվաղեցնել և նույնիսկ ժխտել սոցիալիստական հասարակարգի նվաճումները ՍՍՀՄ-ում, այն երկրում, որը հիմնված է ժողովրդական լայն մասսաների ստեղծագործական աշխատանքի վրա։ Ինչպես մատնանշել է Լենինը, «Մեր ամեն մի հարյուր սխալին, որոնց մասին ամբողջ աշխարհով մեկ ճչում են բուրժուազիան և նրա լակեյները... ընկնում է 10000 մեծ և հերոսական ակտեր, որոնք առավել ևս մեծ ու հերոսական են այն պատճառով, որ նրանք պարզ են, աննկատելի, թաքնված են... առօրյա կյանքում» (Լենին, Երկեր, հ. 28, էջ 71)։

Սոցիալիզմի ուժի և անհաղթահարելիության աղբյուրը նրա խոր համապատասխանությունն է ժողովրդական մասսաների կենսական շահերին ու ձգտումներին։ Նրա ըստ ամենայնի ամրապնդման և զարգացման մեջ են աշխատավորները տեսնում կոմունիստական ազնիվ գաղափարների իրականացման միակ ուղին։ Ուստի, ոչ թե թերությունները, որոնք անխուսափելի են այդ դժվարին գործում (և որոնք պրոպագանդիստական աղմուկ են բարձրացրել իմպերիալիզմի ոհմակում և քաղքենիների շրջանում), այլ տնտեսական, սոցիալական և հոգևոր զարգացման իրական վիթխարի արդյունքներն են ոգևորում մասսաներին, նրանց ուժ տալիս շտկելու, բարելավելու կատարվածը, նոր միջոցներ ու մեթոդներ որոնելու տնտեսական, սոցիալական և հոգևոր պրոբլեմների բնագավառներում բարդ խնդիրները լուծելու համար։

Սոցիալիզմի առաջադիմության և կոմունիզմի հաղթանակի գլխավոր երաշխիքն այն է, որ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, կուսակցություն, որը գիտե դեպի ուր և ինչպես առաջ մղել գործը, կազմակերպում և ուղղություն է տալիս մասսաներին, զարգացնում է նրանց ստեղծագործական ուժերը։ «Աշխատավորների հսկայական մեծամասնությունը իրենք են նոր կյանք կառուցում, իրենց փորձով են լուծում սոցիալիստական կազմակերպման դժվարագույն հարցերը» (Նույն տեղը, էջ 72)։




## ԳԱՂԱՓԱՐԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ՝ ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԳԼԽԱՎՈՐ ՀԱՏԿԱՆԻՇՆ Է

Կոմունիստական շինարարության արդի էտապում, երբ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը զուգընթաց ձևավորվում են հասարակական նոր հարաբերություններ, լուծվում է սովետական մարդկանց բարոյական դաստիարակության խնդիրը, առանձնահատուկ կարևորություն է ստանում կոմունիստի անձնական օրինակը։ Հանձինս կոմունիստների՝ սովետական մարդիկ տեսնում են գաղափարական, սկզբունքային առաջամարտիկների։ Կոմունիստն անհաշտ է թերությունների և այն ամենի նկատմամբ, ինչն արգելակում է մեր առաջընթացը։ Նա խիստ, պահանջկոտ է թե՛ սեփական վարքագծի, թե՛ կուսակցական իր համախոհների արարքների նկատմամբ։

Կոմունիստ լինելը մեծ պատիվ է, որն արտահայտվում է ո՛չ միայն շրջապատի մարդկանց կողմից կուսակցության անդամի հանդեպ տածած հարգանքով, այլև նրանով, որ կոմունիստն անձնուրաց է ծառայում ժողովրդին, նվիրված է կուսակցության, կոմունիզմի գործին։

Կուսակցության անդամի իրավունքներն ու պարտականությունները շարադրված են ՍՄԿԿ կանոնադրության մեջ։ Դա, ըստ էության, կոմունիստների կյանքի ու գործունեության օրենքն է, ըստ որի՝ ամեն մի կոմունիստ անձնական պատասխանատվություն է կրում իր կազմակերպության և ողջ կուսակցության գործերի վիճակի համար։ Նա կողմնակի դիտող չէ, ոչ էլ քննադատող, այլ կուսակցության ակտիվ մարտիկ է, որն ապրում է նրա կյանքով, խղճերով ու ձգտումներով, պատասխանատու է կուսակցության ողջ գործունեության համար։

Ահա կուսակցության անդամի կանոնադրական պահանջներից մեկը.

Պայքարել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար, լինել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի օրինակ, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, հանդես գալ որպես ամեն նորի, առաջադիմականի նախաձեռնող, պաշտպանել ու տարածել առաջավոր փորձը։

Կանոնադրական այս պահանջի անշեղ կենսագործման օրինակներ որ-

քա՜ն ասես կարելի է գտնել մեր շրջանի արտադրական ձեռնարկություններում: Առավել ուսանելին հացի երկրորդ գործարանի կուսակցական կոլեկտիվի փորձն է: Մեծ չէ այս ձեռնարկության կուսակցական կազմակերպությունը, որն ընդամենը երեսուն հոգի է միավորում: Սակայն կոմունիստները ձեռնարկության բոլոր արտադրամասերում, ամենուր ավանգարդում են, աշխատավորական կոլեկտիվի հմուտ կազմակերպիչներ:

Գործարանի բարձր ցուցանիշների մեջ իր մեծ ծառայությունն ունի ձեռնարկության դիրեկտոր, կոմունիստ Ս. Էլբակյանը: Անմիջականություն ու ձեռներեցություն, անհանդուրժողականություն աշխատանքային թերությունների հանդեպ, ադմինիստրացիայի, կուսակցական և հասարակական կազմակերպությունների գործունեության հմուտ զուգակցում ու վերջիններիս ֆունկցիաների լիակատար պահպանում՝ այս է ձեռնարկության կոմունիստ ղեկավարի աշխատանքային ոճի բնորոշ գիծը: Պարբերաբար հրավիրվող ժողովներում և արտադրական խորհրդակցություններում յուրաքանչյուր կոմունիստ թե անկուսակցական ազատ արտահայտում է իր կարծիքն ամեն հարցի առթիվ՝ այն հաստատ համոզմամբ, որ իր խոսքը տեղ կհասնի, որ բացահայտած թերությունները կվերացվեն, օգտակար առաջարկությունները՝ կընդունվեն: Ինքը՝ Էլբակյանը, չի հանդուրժում ոչ մի սխալ ու բացթողում: Իհարկե, ամենքին չէ, որ դուր են գալիս նրա քննադատական ելույթները, բայց բոլորն ընդունում են, որ իրենց ձեռնարկության ղեկավարը սկզբունքային կոմունիստ է, որի համար գործի շահերը բարձր են ամեն ինչից:

Ընկ. Էլբակյանը ձեռնարկության ղեկավարումը հմտորեն զուգակցում է հասարակական-քաղաքական եռանդուն գործունեության հետ: Նա շրջանային կոմիտեի ակտիվ անդամներից է, գործարանում՝ սեմինարավար, շրջանում՝ լավ պրոպագանդիստի համարում ունի: Կոմունիստ-դիրեկտորի համառ ջանքերով սաեղծված կոլեկտիվի համերաշխ ու միաձույլ աշխատանքն իր արտահայտությունն է գտել բարձրորակ արտադրանքի, տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով պլանների կատարման ու գերակատարման մեջ, որի համար ձեռնարկությունը մեկ անգամ չէ արժանացել փոխանցիկ դրոշի ու դրամական պարգևների:

Շրջանի շուրջ տասնմեկ հազարանոց կուսակցական բանակում բազմաթիվ են մարտունակ կուսակցական կոլեկտիվները, առաջավոր կոմունիստները, որոնց գործունեությունն այն բանի կենդանի օրինակն է, թե ինչպիսին պետք է լինի կոմունիստը, կուսակցական կոլեկտիվը:

Հանրապետության գիտությունների ակադեմիայի լեզվի ինստիտուտում է աշխատում Նվարդ Պառնասյանը: Նրա մասին ևս կարելի է ասել՝ լավ մարդ է, հմուտ ու բարեխիղճ գիտնականի տիպար, իսկական կոմունիստ:

Կոմունիստի բարձր կոչումը կրողը, անտարակույս, պետք է ավանգարդում լինի, շիտակ, սկզբունքային, մեր առաջընթացի համար մարտնչող: Տակավին երիտասարդ կոմունիստ է Նվարդը, բայց կարողացել է դրսևորել մեծարժեք հատկանիշներ: Նա հայագետների խոշոր ու բազմավաստակ կոլեկտիվում կատարած իր տքնաջան աշխատանքով հասել է բանասիրական գիտությունների թեկնածուի աստիճանի: Եվ միանգամայն օրինաչափ է, որ կոմունիստ-լեզվաբանների կոլեկտիվն արդեն մի քանի անգամ է, ինչ անընդմեջ նրան ընտրում է կուսբյուրոյի քարտուղար: Զգայուն վերաբերմունքով և մարդկանց նկատմամբ ցուցաբերած իր ուշադրության շնորհիվ Պառնասյանը օգ-



տակար գործ է կատարում նաև Սպանդարյանի շրջանային սովետում, որի դեպուտատն է նա:

Կուսակցությունն իր բոլոր կազմակերպություններից, բոլոր կոմունիստներից պահանջում է պատշաճ պատասխանատվություն կուսշարքերի նոր համալրման որակի համար: Բայց առանձին կուսկազմակերպություններ շարունակում են խախտել անհատական ընտրության լենինյան սկզբունքը, լուրջ սրխալներ ու վրիպումներ են թույլ տալիս, կուսակցության շարքերն են ընդունում անարժան մարդկանց:

Ահա մի բնորոշ օրինակ:

Կյանքի չորս տասնամյակը վաղուց բոլորած, շուկայի հսկիչ-զոոտեխնիկ Ս. Հովասափյանը կուսակցության շարքերն անցնելու ցանկություն հայտնեց: Աշխատանքային ընկերները չհապաղեցին «օգնության ձեռք մեկնել» նրան: Կուսակցական երկարամյա ստաժ ունեցող հսկիչներ Ե. Մաթևոսյանը և Ա. Խաչատրյանը, տեսուչ Լ. Սեդրակյանը (որոնց երաշխավորությունները ջրի երկու կաթիլի պես նման են իրար) գրավոր հավաստիացնում են, որ Հովասափյանի կուսակցության մեջ ընդունվելու բոլոր արժանիքները: Բայց Հովասափյանի մասին կոմունիստները, ինչպես և երաշխավորողները կուսակցական ժողովում լավ բան քիչ ունեցան ասելու: Նրանք չթաքցրին, որ վերջինս չունի քաղաքական բավարար պատրաստականություն, թերանում է աշխատանքում, անբավարար է պայքարում սպեկուլյացիայի դեմ: Սակայն այդ ամենը ոչինչ չհուշեց կոմունիստներին, ու նրանց միաձայն որոշմամբ Հովասափյանն ընդունվեց կուսթեկնածու: Շրջկոմի բյուրոն չհաստատեց կազմակերպության որոշումը, շտկեց նրանց սխալը: Շրջկոմի որոշումը պարզաբանվեց կոմունիստներին, շեշտվեց, որ վերջիններիս մոտ պակասել է սկզբունքայնությունը, որ թեթևակի մոտեցում է հանդես բերվել կուսշարքերի համալրման շատ կարևոր գործի նկատմամբ: Այնուամենայնիվ, կազմակերպությունը որևէ կոփորձ չարեց հաշիվ պահանջել կողմնակալ երաշխավորություններ տվող կոմունիստներից:

Առավել անհանդուրժելի է, որ կուսակցության ոչ բոլոր անդամներն են աշխատանքի հանդեպ կոմունիստական վերաբերմունքի օրինակ ծառայում: Դեռևս կան կոմունիստներ (և ոչ քիչ), որոնք ո՛չ միայն պատշաճ պատասխանատվություն չեն զգում կուսակցության գործի, իրենց կազմակերպության համար, այլև խախտում են կանոնադրական պահանջը, չեն պահպանում կուսակցական և պետական կարգապահությունը, որը հավասարապես պարտադիր է կուսակցության բոլոր անդամների համար: Ըստ երևույթին, նրանք մոռանում են, որ կուսակցական կարգապահությունը՝ միայն ժողովներին կանոնավոր հաճախելը կամ անդամավճարները ժամանակին մուծելը չէ: Այն ենթադրում է նաև աշխատանքային կարգապահության, սովետական օրենքների, մեր բարոյական կոդեքսի գիտական պահպանում:

Այդպես չէր դատում, օրինակ, կուսակցության անդամ Մարտուն Կարապետյանը: Անցյալ տարի նա անհարկի աշխատանքի չներկայանալու, խոտան արտադրանք տալու համար տույժ կրեց: Չանցած մի քանի ամիս, Կարապետյանը նորից խախտեց կարգապահությունը: Էլեկտրատեխնիկական գործարանի կուսակցական կոլեկտիվը, ինչպես պետք էր սպասել, չհանդուրժեց Կարապետյանի արարքը, նրան վտարեց կուսակցության շարքերից:

Սակայն միշտ և ամենուր չեն այդպես վարվում: Որոշ սկզբնական կու-

սակցական կազմակերպություններ ո՛չ միայն բավարար հսկողություն չեն սահմանում կոմունիստների կանոնադրական պահանջների կատարման համար, այլ երբեմն ոչնչով չպատճառաբանված, անտեղի մեծահոգություն են ցուցաբերում կուսակցության անդամի բարձր կոչումն արատավորած այս կամ այն կոմունիստի նկատմամբ։ Այդպես վարվեց սննդատի № 156 խանութի կուսկազմակերպությունը։ Վաճառասեղանի աշխատող կոմունիստ Մ. Մարջանյանը, մեկուսացվել էր աշխատանքից՝ կեղծած օղի վաճառելու համար։ Կազմակերպությունը ժամանակին իր խոսքը չասաց հանցանքի մեջ բռնված կոմունիստի հասցեին։ Նա ժամանակավորապես աշխատանքի նշանակվեց մեկ ուրիշ խանութում ու այնտեղ ևս շարունակեց իր խարդախությունները (նրա մոտ գողացված ծխախոտ հայտնաբերվեց)։ Կազմակերպությունը, չնայած, վերջապես, անդրադարձավ այդ կոմունիստի հարցին, բայց նրա նկատմամբ չհիմնավորված մեղմ պատժաչափ սահմանեց։

Մեկ ուրիշ օրինակ։ Շրջանային կոմիտեն մի քանի ամիս առաջ ահազանգ էր ստացել կոմունիստ Ա. Դալլաքյանի վարքագծի վերաբերյալ։ Նամակի հեղինակը, նրա նախկին կինը, հայտնում էր, որ Դալլաքյանը լքել է իրեն և 65 տարեկան հասակում հինգերորդ անգամ ամուսնացել իրենից 37 տարով փոքր կնոջ հետ։ Ըստ որում, համապատասխան օրգաններում այդ անհավասար ամուսնությունը գրանցելու նպատակով նա կեղծել է փաստաթղթերը, ներկաամուսնությունը ներկայացրել որպես ամուրի, հավաստել, թե դա իր առաջին ամուսնությունն է։ Շրջանային կոմիտեն այդ ահազանգը ուղարկեց Երմասնառդաոի կուսկազմակերպությանը՝ Դալլաքյանի հարցով զբաղվելու համար։ Առանց որևէ հիմնավոր պատճառի, կուսկազմակերպությունը աչքաթող արեց, ամիսներով չքննարկեց այդ հարցը։ Դալլաքյանը նորից վիրավորեց նախկին կնոջը, նրան մարմնական վնասվածք պատճառեց. միլիցիայի օրգանները վարչական միջոցներ ձեռնարկեցին, իսկ կուսկազմակերպությունը ընդամենը բանավոր տույժ տվեց։

Շրջանային կոմիտեն, բնականաբար, չբավարարվեց սկզբնական կուսկազմակերպությունների որոշումներով. Մարջանյանն ու Դալլաքյանը վտարվեցին կուսակցությունից։

Եթե կոմունիստը խախտել է կուսակցական կարգապահությունը, եթե նա չարաշահել է իր նկատմամբ ցուցաբերած մեծ վստահությունը, կուսակցական կոլեկտիվը պետք է ո՛չ միայն ամենաակտիվ միջամտություն երևան բերի նրա նկատմամբ, այլև հանդես գա կոլեկտիվի մյուս անդամներին դաստիարակողի դերում։ Եթե կոմունիստներից մեկն իր սխալ վարքագծով կանգնել է կուսակցական դատի առաջ, դրա համար, առաջին հերթին, մեղավորն ինքն է՝ հանցանք կամ զանցանք կատարողը։

Բայց մի՞թե դա լոկ անհատական գործ է. չէ՞ որ պատասխանատվության ենթարկվողը միայն իր կուսակցական պատիվը չի արատավորում կամ թույլ տված արարքի համար միայն ինքը չի մեղավոր։ Կոմունիստի վատ արարքը հետևանք է այն բանի, որ կուսակցական կազմակերպությունը ինչ-որ հարցում թերացել է, ինչ-որ տեղ վրիպել, մարդուն անուշադրության մատնել։ Երբ քննության է առնվում կոմունիստի ծանր արարքը, երբեմն գործը ներկայանում է իբրև պատահականություն, անսպասելի երևույթ։ Իհարկե, կարող է և այդպես լինել։ Սակայն նման հարցեր քննարկելիս ավելի հաճախ բացահայտվում են առաջին հայացքից աննկատ, կարծես աննշան, բայց գնալով որակ կազմող այնպիսի շեղումներ, որոնք ժամանակին չեն նկատվել։



Նման սայթաքումները պետք է ամենալուրջ անհանդուրժություն պատճա-
ռեն սկզբնական կուսկազմակերպություններին, հուշեն առավել խստապա-
հանջ լինելու կուսակցական կարգապահության ամենափոքր իսկ խախտում-
ների հանդեպ։ Չպետք է մոռանալ, որ ավելորդ մեծահոգությունը, սխալների
ու վրիպումների կոծկումը ընդհանուր ոչինչ չունեն կուսակցական-պետական
կարգապահության ամրապնդման, կոմունիստի բարձր հեղինակության կամ
նրա դաստիարակության հետ։ Կուսակցական տոմսը պետք է միայն արժա-
նավորների ձեռքում լինի։

Հաստատ ու անշեղ կենսագործել կուսակցության որոշումները... զգայուն
վերաբերմունք և ուշադրություն ցուցաբերել մարդկանց նկատմամբ, ժամա-
նակին ընթացք տալ աշխատավորների պահանջներին ու կարիքներին,—
պահանջում է կանոնադրությունը։

Շրջանային կոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները շատ
բան են արել կոմունիստների կողմից կանոնադրական այս կարևոր պահանջի
իրականացման համար։ Սակայն դեռևս լիովին վերացված չեն աշխատավոր-
ների հոգսերի ու պահանջների նկատմամբ դրսևորվող ոչ-զգայուն, բյուրո-
կրատական վերաբերմունքի փաստերը։

Երևանի գինու կոմբինատը տարեցտարի արտադրական նոր, ավելի բար-
ձր ցուցանիշների է հասնում։ Վերջին մի քանի տարում ձեռնարկության ար-
տադրանքի ծավալը ավելի քան կրկնապատկվել է և հասել մոտ երեք տասն-
յակ միլիոնի։ Սակայն այս առաջավոր ձեռնարկությունում ևս արտադրու-
թյան նեղ տեղեր, չլուծված բազում հարցեր կան, որոնք կոմբինատի ղեկա-
վարությանը և կուսակցական կոլեկտիվին առայժմ քիչ են մտահոգում։ Կոմ-
բինատում (ինչպես վերջերս պարզվեց շրջկոմի բյուրոյում կուսբյուրոյի հաշ-
վետվության քննարկումից) հետևողական աշխատանք չի կատարվում առա-
ջարկությունների կենսագործման ուղղությամբ. հանդուրժողականություն է ցուցա-
բերվում անտնտեսավարության հանդեպ, պակասում է պահանջկոտությունը
համընդհանուր ունեցվածքի և կուսակցական-պետական կարգապահության խըս-
տագույն պահպանման համար։

Ձեռնարկության ղեկավարների, կուսակցական և արհմիութենական աշ-
խատողների շրջանում պակասում է հոգատար և զգայուն վերաբերմունքը կո-
լեկտիվի անդամների հոգսերի ու պահանջների նկատմամբ։ Այս հարուստ
ձեռնարկությունը ունի հնարավորություններ ունի զբաղվելու գինեգործների
կենցաղային պայմանների բարելավմամբ։ Տարեսկզբին կոմբինատին տրա-
մադրվեց 18 բնակարան։ Սակայն ուրախալի իրողությունն ավելի քիչ բերկ-
րանք, քան զայրույթ հարուցեց։ Կոմբինատի տասնյակ աշխատողներ երկար
ժամանակ գրավոր ու բանավոր գանգատներով թակում էին վերադաս օրգան-
ների դռները, բողոքում հիմնարկի նախկին ղեկավարների անարդար վերա-
բերմունքի դեմ։ Այո՛, կոմբինատի ղեկավարները վարվել էին ապօրինի, ոտ-
նահարել մարդկանց իրավունքները։ Եվ այս ամենը մի կոլեկտիվում, ուր եր-
կու հարյուր կոմունիստ կա։

Կոմունիստը նա է, ով առօրյա գործերով իրականացնում է իր իսկ կու-
սակցության վեհ գաղափարները, նրա որոշումները, որոնց կատարմամբ
միայն կամրանա կոմունիզմի կառուցման նյութատեխնիկական բազան։

Յ. Խ. ՊՈՂՈՍՅԱՆ

ՀԿԿ Երևանի Սպանդարյանի շրջկոմի երկրորդ քարտուղար

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՆՑՈՒՄԸ ԲԱՆԿԱՅԻՆ ՈՒՂՂԱԿԻ ՎԱՐԿԱՎՈՐՄԱՆ

*ՍՄԿԿ XXIII համագումարը և Կենտկոմի հոկտեմբերյան (1968 թ.) պլենումը խորությամբ բացահայտեցին ՍՍՀՄ գյուղատնտեսության զարգացման գործին խոչընդոտող պատճառները և տնտեսապես հիմնավորված միջոցառումներ մշակեցին ինչպես սովխոզների, այնպես էլ կոլտնտեսությունների հետագա զարգացման, դրանց նյութական շահագրգռվածության և հանրային արտադրության արդյունավետության բարձրացման համար։ Այդ միջոցառումների շարքում կարևոր տեղ է գրավում նաև կոլտնտեսություններին վարկավորելու կարգի կատարելագործումը։*

*Կոլտնտեսային արտադրության զարգացման գործում, բացի սեփական շրջանառու միջոցներից, կարևոր նշանակություն ունի նաև բանկային վարկը, որն ակտիվ ներգործություն է ունենում նյութական ու դրամական միջոցների նկատմամբ ունեցած սեզոնային կարիքների բավարարման, շրջանառու միջոցների շրջապտույտի արագացման, թողարկվող արտադրանքի ավելացման, ինչպես նաև շահութաբերության ու վճարունակության բարձրացման համար։ Կոլտնտեսություններում դրամական միջոցների սեզոնային պահանջը շատ դեպքերում բացատրվում է ո՛չ թե աշխատանքների անբավարար կազմակերպմամբ, այլ գյուղատնտեսական արտադրության յուրահատկությամբ. արտադրանքի իրացումից ստացվող դրամական հասույթի և արտադրական կարիքների համար կատարված նյութական ու դրամական ծախսերի ժամկետները բնականաբար ո՛չ միայն չեն համապատասխանում իրար, այլ դրանց միջև եղած ժամանակաշրջանը բավական երկար է, նույնիսկ մինչև մեկ տարի։ Կոլտնտեսություններում շրջանառու միջոցների կազմավորման աղբյուրներից մեկը պետական բանկից տրվող կարճատև վարկն է. այն տրվում է այնպիսի աշխատանքների կազմակերպման նպատակով, որի վերադարձումը հիմնականում կատարվի արտադրության ցիկլն ավարտելուց հետո։*

*Կարճատև վարկի այն մասը, որ կոլտնտեսությունն ստանում է ընթացիկ տարվա ծախսերը ծածկելու համար, նպաստում է դրամական եկամուտների ավելացմանը, որի հաշվին էլ վերադարձվում է։ Իսկ այն մասը, որը ծախսվում է, սակայն եկամուտներն ստացվում են հաջորդ տարում (աշնանացան, մատղաշ և բտման տակ գտնվող անասունները), վերադարձվում է գալիք տարվա դրամական եկամուտների հաշվին։*

*Այստեղ դժվար չէ նկատել, որ կոլտնտեսությունների ֆինանսական օգնությունը կազմակերպվում է այնպես, որ նրանք հնարավորություն ունենան շրջանառու միջոցների նկատմամբ ունեցած ժամանակավոր պահանջը ծածկել վարկի հաշվին և վերադարձնել այն պայմաններում, ինչպիսին պահանջում են արտադրության պրոցեսի անխափան կազմակերպման շահերը։*

*Ուսումնասիրություններից պարզվում է, որ հատկապես վերջին տարիներին, կոլտնտեսությունների արտադրածախսերի մեջ կարճատև վարկի բացարձակ գումարը և տեսակարար կշիռը նկատելիորեն ավելանում են։ Այսպես, հանրապետության կոլտնտեսությունների արտադրական ամբողջ ծախսերը էթե 1967 թ., 1962 թ. համեմատությամբ, ավելացել են 1,3 անգամ, ապա կարճատև վարկի բացարձակ գումարն ավելացել է 13,5, իսկ տեսակարար կշիռը՝ 9,8 անգամ։ Կարճատև վարկը թե՛ բացարձակ գումարով և թե՛ տեսակարար կշռով արտադրածախսերի համեմատությամբ (հատկապես 1967 թ.), ավելի արագ է աճել։ Հետևաբար, կոլտնտեսությունների շրջանառու միջոցների ձևավորման գործում վարկի դերն անընդհատ բարձրանում է։*

*Հանրապետության կոլտնտեսություններում սեփական և փոխառու միջոցների բացարձակ կամ հարաբերական աճը, ըստ տարիների, կատարվում է ո՛չ թե հավասարաչափ, այլ ելնելով տնտեսական տարվա պայմաններից և եկամուտների չափից, անընդհատ փոխվում է։*

*Հայաստանի կոլտնտեսությունների սեփական և փոխառու շրջանառու միջոցների դինամիկան 1963—67 թթ. հետևյալ պատկերն ունի (մլն ռուբլի).*

| | Տարիներ | | | | |
|---|---|---|---|---|---|
| | 1963 | 1964 | 1965 | 1966 | 1967 |
| Ընդամենը՝ շրջանառու միջոցներ | 80,3 | 81,2 | 88,4 | 102,2 | 119,0 |
| 1963 թ. համեմատությամբ (տոկոսով) (1963 թ.=100 տոկոս) | 100,0 | 101,1 | 110,0 | 127,2 | 148,0 |
| Փոխառու միջոցներ | 7,9 | 11,7 | 12,3 | 30,4 | 66,4 |
| 1963 թ. համեմատությամբ (տոկոսով) (1963 թ.=100 տոկոս) | 100,0 | 148,1 | 155,7 | 387,3 | 840,5 |

*Աղյուսակից երևում է, որ 1963—1967 թթ. ավելացել են կոլտնտեսությունների թե՛ սեփական և թե փոխառու միջոցները։ Իսկ փոխառու միջոցների աճը սեփական միջոցների համեմատությամբ ավելացել է մոտ 8 անգամ. այդ հիմնականում բացատրվում է նրանով, որ բոլոր կոլտնտեսություններն անցել են կոլտնտեսականների աշխատանքի ամենամսյա երաշխավորված վարձատրության սիստեմին։ Բանկային վարկի գումարը, 1967 թ., 1963 թ. համեմատությամբ, ավելացել է մոտ 8,4 անգամ։*

*Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում կոլտնտեսությունների նյութատեխնիկական բազայի ամրապնդումը, ինչպես նաև կոլտնտեսականների աշխատանքի դիմաց ամենամսյա երաշխավորված վարձատրության սիստեմին անցումը, հրամայաբար պահանջում են սոցիալիստական սեփականության երկու ձևերի միջև իրականացվող ապրանքադրամական ու վարկային հարաբերությունների շրջանակների անընդհատ ընդլայնում ու կատարելագործում։ Կոլտնտեսային արտադրության մեջ կատարվող արտադրածախսերի և արտադրանքի իրացումից դրամական եկամուտների ստացման ժամկետների մեջ եղած տարբերությունը բավական մեծ է, որի հետևանքով, հատկապես առաջին կիսամյակում, նյութական ու դրամական միջոցների նկատմամբ առաջանում է ժամանակավոր պահանջ, իսկ երկրորդում. ընդհակառակը՝ ավելցուկ։*

*Այժմ կոլտնտեսություններում կոլտնտեսականների աշխատանքի ամենամսյա երաշխավորված վարձատրության գումարի պահանջները լրիվ հատուցվում են կարճատև վարկից։ Բանկային ուղղակի վարկավորման նոր կարգին չանցած կոլտնտեսություններում շրջանառու միջոցների նկատմամբ առաջացող սեզոնային պահանջը (հատկապես կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված վարձատրության հարուցած պահանջը) դժվար է բավարարել մթերող կազմակերպություններից ստացվող դրամական կանխավճարի և սեփական միջոցների հաշվին։ Կոլտնտեսականների աշխատանքի ամենամսյա վարձատրության համար պահանջվում են մեծ քանակությամբ դրամական միջոցներ, մինչ շատ կոլտնտեսություններ չունեն բավարար եկամուտ այդ գումարները հատուցելու համար։*

*դարձման ժամկետի և տոկոսադրույքների նկատմամբ որոշ փոփոխություն-*
*ներ մտցվեն։*
*Հետագայում, երբ աստիճանաբար նվազագույնի կհասնեն կոլտնտեսու-*
*թյունների զարգացման մակարդակների միջև եղած տարբերությունները,*
*այն ժամանակ ավելի ճիշտ ու նպատակահարմար կլինեն վարկային փոխհա-*
*րաբերությունները։*
*ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումից հետո կուսակցության ու*
*կառավարության կողմից համատեղ մշակված և կենսագործվող բազմաթիվ*
*միջոցառումների շնորհիվ լայն հեռանկարներ են բացվել կոլտնտեսություն-*
*ների էկոնոմիկայի բազմակողմանի զարգացման ու ամրապնդման համար։*
*Հանրային տնտեսությունների էկոնոմիկայի զարգացումը, իր հերթին, պա-*
*հանջում է կատարելագործել պետության հետ ունեցած ֆինանսավարկային*
*փոխհարաբերությունները։*
*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1966 թ.*
*մայիսի 16-ի որոշումից հետո ՍՍՀՄ պետբանկի վարչությունը նկատելի փո-*
*փոխություններ կատարեց կոլտնտեսությունների վարկավորման գործում։*
*Կոլտնտեսականների համար ամենամսյա երաշխավորված վարձատրության*
*իրականացումը դրդում է կոլտնտեսություններում կատարելագործել եկա-*
*մուտների բաշխման սիստեմը, զարգացնել սոցիալիստական վարկը։*
*Վարկավորման կատարելագործումը չպետք է դիտել միայն կոլտնտե-*
*սությունների նկատմամբ ֆինանսական օգնության ուժեղացում, այլև ժողո-*
*վրրդատնտեսական կարևոր նշանակություն ունեցող պրոբլեմ, որի օգնու-*
*թյամբ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը հավասարեց-*
*վում է բնակլիմայական միևնույն պայմաններում գտնվող սովխոզների բան-*
*վոր-ծառայողների վարձատրության մակարդակին։*
*Արդի ժամանակաշրջանի պատմական պրոցեսն ավելի է մերձեցնում*
*բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության շահերը, որը ո՛չ մի-*
*այն օբյեկտիվ անհրաժեշտություն է, այլև զարգացման օրինաչափ պրոցես։*
*Այժմ պետական համաժողովրդական և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփա-*
*կանության միջև գոյություն ունեցող տարբերություններն աստիճանաբար*
*դառնում են հարաբերական, որովհետև կոլտնտեսային արտադրության զար-*
*գացումը դուրս է գալիս առանձին տնտեսությունների շրջանակներից և ստա-*
*նում հանրայնացման ավելի բարձր մակարդակ։ Այս հարցում չափազանց մեծ*
*է բանկային վարկի դերը, որը կարևոր գործոն է բանվորների ու կոլտնտեսա-*
*կանների, քաղաքի և գյուղի միջև եղած տարբերություններն աստիճանաբար*
*վերացնելու համար։ Կոլտնտեսությունների երկարատև վարկավորման պայ-*
*մանների բարելավման նպատակով, մեր կարծիքով, պետք է իրականացնել*
*նաև այլ միջոցառումներ։*
*Վարկային գումարների նպատակային օգտագործումը պարզելու, ինչ-*
*պես նաև բանկի կողմից ռուբլով վերահսկողությունն ուժեղացնելու նպա-*
*տակով, անհրաժեշտ է կոլտնտեսություններում առանձին հաշվառում տա-*
*նել, թե կառուցված օբյեկտի կամ գնված հիմնական միջոցի արժեքի մեջ եր-*
*կարատև վարկի բաժինը որքան է կազմել։ Դեռ ավելին, կոլտնտեսություն-*
*ները պետք է տարեկան և եռամսյա հաշվետվության հետ միասին իրենց*
*սպասարկող բանկի բաժանմունքին մանրամասն հաշվետվություն ներկա-*
*յացնեն վարկային գումարների օգտագործման վերաբերյալ (ըստ վարկի օբ-*
*յեկտների)։ Այս դեպքում բանկի աշխատողները հնարավորություն կունենան*
*մանրամասն վերլուծելու, թե այդ գումարները որտեղ, ինչքան, ինչպես են*
*ծախսվել և ինչպիսի ազդեցություն են ունեցել կոլտնտեսությունների էկոնո-*
*միկայի ամրապնդման վրա։*
*Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հանրապետության կոլ-*
*տնտեսությունների մի մասում, հաշվապահական հաշվառման անբավարար*
*իրականացման հետևանքով, մասսայական սխալներ են թույլ տրվում ար-*
*տադրա-ֆինանսական պլանների կազմման, արտադրածախսերի հաշվառ-*
*ման, ինչպես նաև կոլտնտեսականների աշխատանքի ճիշտ հաշվառման ու*
*վարձատրության կազմակերպման գործում։ Պլանավորման ու հաշվառման*



*աշխատանքների անբավարար կազմակերպումը պետք է բացատրել մասնա-*
*վորապես կոլտնտեսությունների ղեկավար և, ընդհանրապես, հաշվային աշ-*
*խատողների տնտեսական գիտելիքների պակասով։*
*Կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու*
*նպատակով, մեր կարծիքով, հնարավոր է առաջիկայում պետական ձեռնար-*
*կությունների բանվոր-ծառայողների համար սահմանված կարգով (մինչև*
*ամսական հիմնական աշխատավարձի վճարումը) նրանց տալ նաև կանխա-*
*վճար։ Դրանով, մի կողմից՝ կկատարելագործվեն բաշխման հարաբերություն-*
*ները, մյուս կողմից՝ բանվորների ու կոլտնտեսականների վարձատրության*
*ձևերը կնմանվեն իրար։ Վարձատրության չափը, բնականաբար, կորոշվի կա-*
*տարած աշխատանքի քանակին ու որակին համապատասխան։*
*Այժմ երկարատև վարկի, ինչպես նաև կոլտնտեսությունների արտադրա-*
*ֆինանսական պլաններ կազմելու և հաստատելու համար սահմանված ժամ-*
*կետների միջև գոյություն ունի խիստ անհամապատասխանություն։ Այսպես,*
*ՍՍՀՄ պետբանկը կոլտնտեսությունների երկարատև վարկի տարեկան պլանը*
*(գալիք տարվա համար) կազմում է ընթացիկ տարվա չորրորդ եռամսյակում,*
*իսկ կոլտնտեսություններն իրենց արտադրական-ֆինանսական պլանները*
*կազմում և հաստատում են պլանային տարվա առաջին եռամսյակում, այն*
*դեպքում, երբ կոլտնտեսությունների մեծ մասը տարվա համար պլանով նա-*
*խատեսված վարկաչափի մոտ մեկ երրորդը ծախսում է առաջին եռամսյա-*
*կում։ Եվ դա հասկանալի է։ Հետևաբար, կոլտնտեսություններում կապիտալ*
*ներդրումների պլանի կազմման համար սահմանված ժամկետը հաճախ անդ-*
*րադառնում է վարկի ձևակերպման, ստացման ու օգտագործման վրա։ Դրա*
*համար անհրաժեշտ է երկարատև վարկի և կոլտնտեսությունների արտադրա-*
*կան-ֆինանսական պլանների կազմման ժամկետների միջև եղած տարբե-*
*րությունը կամ վերացնել, կամ հասցնել մինիմումի։*
*Արդի ժամանակաշրջանում գյուղում հասարակական հարաբերություն-*
*ների կատարելագործման, կոլտնտեսային արտադրության բազմակողմանի*
*զարգացման, դրա հանրայնացման մակարդակի բարձրացման, ինչպես նաև*
*սոցիալիստական սեփականության երկու ձևերի աստիճանական մերձեցման*
*ու միասնական կոմունիստական սեփականություն ստեղծելու գործում չա-*
*փազանց կարևոր նշանակություն կունենա պետության կողմից կոլտնտեսու-*
*թյուններին մշտապես ցույց տրվող նյութական ու ֆինանսական բազմակող-*
*մանի օգնությունը։*

Լ. Տ. ՂԱԼՈՒՄՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

# ԱՐԳԱՍԱԲԵՐ ՈՒՂԻՈՎ

Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատը մեր երկրի ծանր արդյունաբերության այն ձեռնարկություններից է, որի կոլեկտիվը տասնյակ անգամ առաջնություն է շահել համամիութենական ու հանրապետական սոցիալիստական մրցապայքարում։ Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների մեջ կոմբինատն առաջինն արժանացավ կոմունիստական աշխատանքի պատվավոր կոչման։ Արտադրական լավագույն ցուցանիշների հասնելու, բանվոր-ծառայողների կուլտ-կենցաղային սպասարկումը լավ կազմակերպելու համար կոմբինատը պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով. նրան հանձնվեց Հոկտեմբերի 50-ամյակի հոբելյանական հուշադրոշը։ Թվում էր, թե բոլոր նախադրյալներն ստեղծված են սեղմ ժամանակամիջոցում կենսագործելու պլանավորման ու տնտեսական խթանման մասին ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. սեպտեմբերյան պլենումի որոշումները։ Սակայն, ռեֆորմը կենսագործելու համար պահանջվում էր տևական նախապատրաստական աշխատանքներ։ Առաջին հերթին, հարկավոր էր կադրերին ուսուցանել կազմակերպական, տնտեսվարման ձևերը։ Տնտեսական ղեկավարների, արտադրամասերի պետերի, ինժեներա-տեխնիկական աշխատողների և առաջավոր բանվորների մի մասի համար կազմակերպվեցին տնտեսագիտական հատուկ դասընթացներ. տարբեր խմբերում ընդգրկվեցին 320 աշխատող, ձեռներեց մասնագետներից ստեղծվեց վեց հանձնաժողով, որոնց օգնությամբ, ըստ բնագավառների, հետազոտվում էին արտադրամասերի, բաժանմունքների, տեղամասերի ու հոսքային գծերի աշխատանքի արդյունավետության, որակի բարձրացման, ինքնարժեքի իջեցման, կոմբինատում աշխատանքի գիտական կազմակերպման հնարավորությունները։

Տարիներ շարունակ չէր ուսումնասիրվում երկրորդ խմբի օժանդակ կարողությունների՝ մեքենա-մեխանիզմների, չափող-ստուգող սարքերի, էլեկտրածառայության, հակակոռոզիային արտադրամասերի աշխատանքի գիտական կազմակերպումը։ Հետազոտությունները ցույց տվին, որ այս օղակների աշխատանքի գիտական կազմակերպմամբ տարեկան 137,3 հազար ռուբլի օգուտ կստացվի։ Տեղամասերում արտադրապրոցեսների կատարելագործման և բանվորների որակավորումը բարձրացնելու շնորհիվ կրճատվեցին 52 հաստիք և մարդիկ տեղափոխվեցին այլ արտադրամասեր, ուր բանվորների կարիք կար։ Գրեթե բոլոր արտադրամասերում կոմպլեքսորեն ավտոմատացվեցին քիմիական-տեխնոլոգիական գործողությունները։ Անցյալում նաիրիտի պահանջն ու ձեռնարկության պլանն ավելի մեծ էր, քան հիմնական հումքի՝ կարբիդի արտադրության ծավալը կոմբինատի 1—2 արտադրամասում։ Այդ պակասը լրացվում էր Ղազախական ՍՍՀ Կարագանդայի կաուչուկի և այլ քաղաքների գործարաններից ստացած հումքով, որը թանկ էր նստում։ Ստեղծվում էր հումքի երկրորդ աղբյուրը՝ բնական գազից ացետիլենի ստացման կոմպլեքսը։ Այն իր տեսակով միակն էր Սովետական Միությունում և առաջին անգամ գործարկվելու էր մեզ մոտ։



Կիրովցի քիմիագործներին առաջադրված էր՝ գործարկել սարքավորումները, յուրացնել տեխնոլոգիական պրոցեսները և արտադրության կատարելագործման շնորհիվ բարձրացնել նոր արտադրամասերի արդյունավետությունը։ Սկզբնական շրջանում կարողություններն օգտագործվում էին անարդյունավետ. ծախսվում էր էլեկտրաէներգիա, բնական գազ, բանվորական ուժ, բայց ստացվում էր ստանդարտին չհամապատասխանող ացետիլեն։

Մեծ վերափոխումներ ու վերակառուցումներ կատարվեցին հենց առաջին ագրեգատի վրա։ Տեխնիկական պրոգրեսի առաջամարտիկները՝ գյուտարարներ, ռացիոնալիզատորներ Ս. Աստվածատրյանը, Գ. Իսագուլյանը, Ն. Ծերեթյանը, Հ. Հախինյանը, Լ. Մադոյանը և շատ ուրիշներ, աշխատանքի ընթացքում շտկում էին նախագծային կազմակերպությունների թույլ տված սխալները, իրենց նորարարություններով կատարելագործում արտադրության պրոցեսը։ Առաջին ապրանքային ացետիլենը մտավ կաուչուկի արտադրության մեջ։ Ացետիլենագործների համար մշակվեց կայուն պլան, առաջադրանքները գերակատարող կոլեկտիվների համար գումար հատկացվեց. պլանից ավելի թողարկած յուրաքանչյուր տոննա արտադրանքի դիմաց, բոլոր տեսակի պարգևներից բացի, տրվում է 70 ռուբլի լրացուցիչ վարձատրություն։ Կոմպլեքսի արդյունավետությունն ավելի մեծացավ մյուս ագրեգատների գործարկումով։ Այժմ միաժամանակ աշխատում են չորս ագրեգատ (ամբողջ կոմպլեքսի նախագծային կարողության 47,4 տոկոսը)։ Ընթացիկ տարում շահագործման կհանձնվի հինգերորդ ագրեգատը։ Միայն 1967 թ. կոմպլեքսի թթվածնային կայանը խնայեց 6 մլն կվտ ժամ էլեկտրաէներգիա։

Առկա էին կարբիդից ու բնական գազից ացետիլեն ստանալու երկու աղբյուր, բայց փոքր էր մնացել ացետիլենից մոնովինիլացետատի ստացման 1—8 արտադրամասի հզորությունը։ Ահա այստեղ, նույն տարածությունում, առանց նոր կառուցումների, մոնտաժվեց տեխնոլոգիական հոսքային մի գիծ, որի շնորհիվ նույն պայմաններում աշխատող մեկ հերթափոխությունը կարող էր տալ 1,5—2 անգամ ավելի արտադրանք։

Շահութաբերության ավելացման ավելի արդյունավետ քայլեր կատարվեցին 1—9 արտադրամասում. գործող սարքավորումների մոդեռնացմամբ ստեղծվեց երրորդ հոսքային գիծը, զգալի չափով բարձրացավ մոնովինիլացետիլենից քլորոպրենի ստացման տեխնոլոգիական պրոցեսների արդյունավետությունը և ավելացավ կիսաֆաբրիկատի արտադրությունը։

Նաիրիտի ու լատեքսների ստացման հիմնական հումքը քլորոպրենն է։ 1—10 արտադրամասի քիմիագործները, փորձված ինժեներ Հ. Շավոյանի ղեկավարությամբ, առանց կապիտալ ներդրումների, հնգամյակի երկրորդ տարում արտադրամասի հզորությունը հասցրին հնգամյակի վերջին տարվա համար նախատեսված մակարդակին ու նախագծային կարողությանը։

1—11 արտադրամասում շահագործման հանձնվեց քլորոպրենից նաիրիտի ստացման պոլիմերացման մի նոր դահլիճ՝ բարձր արտադրողականություն ունեցող սարքավորումներով. այն իր հզորությամբ գերազանցում է մինչ այդ գոյություն ունեցող դահլիճներին։ Այսպես, կաուչուկի արտադրամասերը տեխնիկական կատարելագործման, նույն տարածությունների վրա արտադրությունն ընդլայնելու շնորհիվ ժամկետից 2—2,5 տարի շուտ հասան հնգամյակի վերջին տարվա՝ 1970 թ. համար նախատեսված հզորությանը։

Քլորի խմբի 1—3 արտադրամասի Վ. Եղիշյանի ղեկավարած էլեկտրոլիզի (աղաջրի էլեկտրատարրալուծման) բաժանմունքում նոր ռեզերվների կիրառմամբ (առանց կապիտալ ծախսումների), սարքավորումների արդյունավետությունն ավելացավ 8—10 տոկոսով։ Նմանօրինակ վերափոխումներ ու վերակառուցումներ են կատարվել նաև կարբիդի ու մյուս արտադրամասերում։

1968 թ. երկրորդ կեսից ձեռնարկությունն անցել է պլանավորման ու տնտեսական խթանման նոր եղանակին։ Կոմբինատի աշխատանքի համաչափությունն է ցույց տալիս 82-րդ էջի վերջում բերվող աղյուսակը.

| | I տասնօրյակ | II տասնօրյակ | III տասնօրյակ | ընդամենը |
|---|---|---|---|---|
| Հուլիս 1968 թ. | 32,2 | 34,0 | 33,8 | 100,0 |
| Օգոստոս 1968 թ. | 33,1 | 34,3 | 32,6 | 100,0 |
| Սեպտեմբեր 1968 թ. | 39,4 | 21,3 | 39,3 | 100,1 |

Տնտեսական տարում սեպտեմբերի II տասնօրյակում հիմնական նորոգման պատճառով արտադրամասերը չեն աշխատել։

1968 թ. բոլոր տասնօրյակներում արտադրանքի իրացման պլանը համաչափ է։

| | I տասնօրյակ | II տասնօրյակ | III տասնօրյակ | ընդամենը |
|---|---|---|---|---|
| Հուլիս | 30,7 | 32,9 | 36,4 | 100,0 |
| Օգոստոս | 33,8 | 35,2 | 31,0 | 100,0 |
| Սեպտեմբեր | 32,9 | 29,5 | 37,6 | 100,0 |

Այս հաշվումները կատարված են տասնօրյակներով. սակայն կոմբինատն ունի արտադրանքի առաքումների ամենօրյա գրաֆիկ, ուր հաշվի են առնված մեր երկրի ու նրա սահմաններից դուրս գտնվող ձեռնարկությունների պահանջները։

Կիրովի անվան քիմիական կոմբինատում պետական պլանները կատարում ու գերակատարում են արտադրությունում աշխատող բոլոր բանվորները։ Իսկ եթե որևէ օղակում նկատվում են պլանների թերակատարման դեպքեր, ապա համապատասխան բաժինները, կազմակերպությունները բազմակողմանի քննարկում, ուսումնասիրում, հետազոտում և բացահայտում են թերացման պատճառները, մշակում են կազմակերպական կամ տեխնիկական անհրաժեշտ միջոցառումներ։

Կաուստիկ սոդա ստանալու համար մեծ չափերով գոլորշի է ծախսվում։ Դեռ անցյալ տարվա հունվարին Ռ. Ղևոնդյանի ղեկավարած հերթափոխության սոդայագործները խնայեցին 300 տոննա գոլորշի։ Նրա օրինակին հետևեցին Ա. Ավետիսյանի, Ա. Ալեքսանյանի ղեկավարած հերթափոխությունները։ Սոդայագործները 1968 թ. տնտեսել են 4000 տոննա գոլորշի և լրացուցիչ վարձատրվել աշխատավարձի 12—13 տոկոսի չափով։

Խառնուրդի մեջ անցանկալի մնացուկների՝ աղերի պարունակության կրճատմամբ հնարավոր է ավելացնել ստանդարտի խտությունը։ Թափոնները կրճատվել են 0,6 տոկոսով. 2—3 տոկոսով ավելացել է ստանդարտի խտությունը և 1 տոկոսով՝ սոդայի առաքման համար աշխատող երկաթուղային ցիստեռնների բեռնատարողությունը։ Համապատասխանաբար կրճատվել են տրանսպորտային ծախսերը։ Միայն որակի բարձրացումից կաուստիկ սոդայի արտադրամասից ստացած ամենամսյա օգուտները հասնում են 1500 ռուբլու։

Այս դեռ բոլորը չէ։ Արտադրամասը պարբերաբար գերակատարում է պլաններն ու պետական առաջադրանքները։ Օգտագործելով ընձեռած հնարավորությունները, կոլեկտիվը պարտավորվել է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ հնգամյակի ընթացքում պլանից դուրս սպառողներին ուղարկել մեծ քանակությամբ արտադրանք։

Վ. Եղիշյանի ղեկավարած քլորի ու ջրածնի արտադրամասի հումքը սովորական աղաջուրն է. այն պատրաստվում, հավաքվում է վիթխարի բաքերի մեջ, մաքրվում և մղվում հոսքային գիծ։ Երբեմն բաքերում բյուրեղների նստվածքը հասնում է մինչև 400 տոննայի, որը դարձյալ օգտագործվում է աղաջրի պատրաստման համար։ Մի խումբ նորարարներ գտան բյուրեղների օգտագործման ավելի արդյունավետ եղանակ. դրա շնորհիվ հումքի պատրաստման հետ կապված ծախսերը տարեկան կրճատվեցին 735 հազար ռուբլով։ Վերափոխելով քլորատար գծերը, մի քանի անգամ երկարացրել են դրանց ծառայության ժամկետները, կատարելագործել էլեկտրատարրալուծ-



ման վաննաները, նոր հնարավորություններ ստեղծել քլորի որակի բարձրացման համար։ Արտադրամասի քիմիագործները բոլոր պայմաններն ստեղծել են մյուս արտադրամասերի լավ աշխատանքի համար. նրանք ժամկետից 2 ամիս շուտ կատարեցին ռեակտիվ աղաթթվի պլանը, իսկ քլորաջրածնի ու քլորբենզոլի բաժանմունքները, տարվա պլանի գրաֆիկներից առաջ են անցել 10—15 օրով։

Պլանավորման նոր սիստեմին անցնելուց հետո, երկրորդ կիսամյակից, արտադրանքի իրացման պլանն ավելացավ 700, օգուտներինը՝ 543 հազար ռուբլով։ Դեռ ավելին, անցած 11 ամսվա արտադրանքի իրացման պլանը կատարվել է ժամկետից 12 օր շուտ։ 1968 թ. պլանը կատարվել է դեկտեմբերի երկրորդ տասնօրյակում։ Օգուտների հաշվին ավելացան նաև շահագործող ֆոնդերի հատկացումները (հազար ռուբլիներով).

| | հինը | նորը | աճը |
|---|---|---|---|
| Նյութական խրախուսման ֆոնդերը | 689 | 941 | 252 |
| Կուլտուր-սոցիալական և բնակարանային շինարարություն | 30 | 150 | 120 |
| Արտադրության զարգացման ֆոնդերը | 15 | 87 | 72 |
| Ընդամենը | 734 | 1178 | 444 |

Օգուտների (543 հազար) և հատկացումների (444 հազար) տարբերությունը 99 հազար ռուբլի է. նախատեսվում է այն թողնել վճարումների բյուջեի մեջ, որպես ազատ հատկացում։

Կոմբինատի դիրեկցիան, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների հետ, սահմանել է խրախուսանքի միջոցների բաշխման ընդհանուր կարգ։

| | |
|---|---|
| Պարգևատրումներ ինժեներատեխնիկական աշխատողներին, ծառայողներին | 24,1 տոկոս |
| Բանվորներին աշխատավարձի ֆոնդի հաշվին | 50,7 » |
| Բանվորներին աշխատավարձից դուրս՝ վճարումների համար | 5,9 » |
| Հատկացումներ տարվա աշխատանքի ամփոփման համար՝ | |
| ա) բանվորներին | 10,7 » |
| բ) ինժեներա-տեխնիկական աշխատողներին, ծառայողներին | 3,3 » |
| Միջարտադրամասային մրցության համար | 0,5 » |
| Օգնությունների համար | 4,8 » |

Նախատեսվում է տարին մեկ անգամ, հին աշխատողների աշխատավարձի հաշվով, միանվագ վճարել 1—5 տարվա համար՝ 30, 5—10՝ 50, 10-ից բարձր՝ 70 տոկոսը։

Սոցիալ-կուլտուրական և բնակարանային շինարարության ֆոնդերի բաշխումը.

| | |
|---|---|
| Բուժաշխատանքների, դեղորայքների ու կուրորտային ծախսերի համար | 1,5 |
| Հանգստյան տների ու սանատորիաների ուղեգրերի ձեռքբերման համար | 4,4 |
| Ճաշարանների ու առողջարանի կահավորման համար | 2,2 |
| Ֆիզկուլտ միջոցառումներ | 1,7 |
| Մանկական(?) դոտացիաներ | 30,0 |
| Բնակարանային շինարարություն | 58,0 |
| Այլ նպատակների համար | 2,2 |
| Ընդամենը՝ | 100,0 |

Մինչև ռեֆորմի կենսագործումը, ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծառայողների պարգևները 32,8 տոկոս էր. ռեֆորմից հետո այն հասել է 35,5, իսկ բանվորներինը, համապատասխանաբար՝ 39,3-ից 41,8 տոկոսի։

## ՀՐԱՊԱՐԱԿԱԽՈՍԻ ԱՄԲԻՈՆ

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԴՊՐՈՑԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

**Վ. ՍՈՒԽՈՄԼԻՆՍԿԻ**

Սոցիալիստական աշխատանքի հերոս, Մանկավարժական գիտությունների ՍՍՀՄ ակադեմիայի թղթակից անդամ, ՈւՍՍՀ դպրոցների վաստակավոր ուսուցիչ

### *ՄԱՅՐՆ ԱՂՋԿԱՆ ԴՊՐՈՑ ԲԵՐԵՑ...*

*Նա գրեթե չէր փոխվել այն ժամանակվանից, երբ տասը տարի առաջ կանգնեց սեղանի առաջ, վերցրեց քննական տոմսը և առանց նախապատրաստվելու փայլուն հանձնեց պատմության քննությունը։ Օլյա Ներուբայն էր՝ դասարանի պարծանքը։ Կարծես երեկ էր, իսկ հիմա նա արդեն մայր է, աղջկան դպրոց է բերել։ Ասես հասկանալով, որ ցանկանում եմ իր կյանքից որևէ բան իմանալ, Օլյան խոսեց.*

*— Ընդունվեցի ինստիտուտ, բայց ուրիշ բան էր վիճակված։ Ամուսնացա, գնացի աշխատելու։ Աղջիկ ունեմ... Ամուսնուս հետ ապրեցինք ընդամենը կես տարի։ Բաժանվեցինք... Երբ որևէ մեկին պատմում եմ վիշտս, կարեկցաբար լռում, կամ սփոփում է ինչ-որ պատահական բառերով։ Ինձ հարկավոր չեն ո՛չ սփոփանք, ո՛չ կարեկցանք։ Ես շատ հիասթափված եմ պատանեկության տարիների իմ դաստիարակներից։*

*Կինը հառաչեց ու լռեց։ Ես զգացի, որ նրան հուզում են այն մտքերը, որ տարիներ շարունակ ինձ էլ էին հուզել, ու հարցրի.*

*— Ինչո՞ւ եք հիասթափված։*

*— Որովհետև չեն սովորեցրել ապրել։ Դուք կարծում եք մենք բաժանվել ենք միմյանցից որևէ բանից հիասթափվելու կամ, ինչպես այժմ է ընդունված ասել «բնավորությունների անհամապատասխանությա՞ն» պատճառով։ Ո՛չ, մենք պարզապես ապրել չգիտենք։ Չենք կարողանում ամուսին և կին լինել։ Ո՛չ նա, ո՛չ ես։*

*Երիտասարդ կնոջ հետ ունեցած այս զրույցը ընդմիշտ կմնա հիշողությանս մեջ ու սրտումս։ Այս խոսակցությունից հետո հաճախ եմ խորհում. իրոք, դպրոցում մենք չենք սովորեցնում ամենագլխավորը— չենք սովորեցնում ապրել։ Ամեն ինչ սովորեցնում ենք— մեր սաները օգտակար ու պետքական (երբեմն նույնիսկ ոչ այնքան պետքական) շատ բան գիտեն. և՛ այն, թե ինչպիսին է ջուրը 5 կիլոմետր խորության մեջ, ի՛նչ է գրված Համուրաբի թագավորի օրենքներում, միջաստղային տարածություններում 1 fմ նյութի*



*ձագողականությունը... բայց ոչինչ*
*մեջ քանի ատոմ կա, ի՛նչ է տիեզերական*
*ամուսին, չգիտեն ինչ ասել է լինել կին և ամու-*
*չգիտեն ընտանեկան կյանքի մասին,*
*ամուսին, երեխաների հայր ու մայր։ Եթե մի մանկավարժ փորձեր «կնոջ և ամուսնու փոխհարաբերությունները նորակազմ ընտանիքում» թեմայով դաստիա-*
*նու փոխհարաբերությունները նորակազմ ընտանիքում» թեմայով դաստիա-*
*րակչական զրույց կազմակերպել ութերորդ կամ իններորդ դասարաններում,*
*նրան խենթի տեղ կդնեին, մինչդեռ այդ շատ ավելի կարևոր է, քան աստղա-*
*կան թագավորների դամբարանները։ Չէ՞ որ ծնողները բաժանվում են երե-*
*խաների արցունքի ու դժբախտության գնով։*
*Վերջին տասը տարիների ընթացքում ես ուսումնասիրել եմ 200 երի-*
*տասարդ ընտանիքների բաժանության պատճառները։ 189 բաժանություն*
*կատարվել են նորապսակների միմյանց չհասկանալու պատճառով։ Ամուս-*
*նանալիս տղան ու աղջիկը գաղափար իսկ չունեն փոխհարաբերությունների*
*այն բարդ ու նուրբ կուլտուրայի մասին, որը պահանջում է ամուսնական*
*կյանքը։ Նրանց ոչ ոք չի ասել, նրանք չգիտեն, որ ամուսնացած լինելը, շա-*
*րունակ միասին, մի սենյակում ապրելը ժամադրության երջանիկ պահեր*
*չեն, այլ կյանք. որ դա ո՛չ միայն երջանկություն է, ուրախություն, այլև*
*ոչնչի հետ չհամեմատվող դժվարին գործ— հոգեկան աշխատանք, լարում և,*
*միևնույն ժամանակ, հոգեկան ուժերի ծաղկում։ Ինչպիսի՜ կուլտուրա, հոգե-*
*կան ինչպիսի՜ պատրաստականություն, իմաստություն, ինչպիսի՜ դպրոց է*
*հարկավոր դրա համար։*
*Իսկ այդ դպրոցը, որքան էլ զարմանալի է, գոյություն չունի։ Կյանքը*
*պահանջում է, որ միջնակարգ դպրոցի բարձր դասարանի պատանիների ու*
**փոխհարաբերության կուլտուրան ընտանիքում**
*աղջիկների համար ավանդվի փոխհարաբերության կուլտուրան ընտանիքում*
*դասընթացը։ Եվ այն ավանդողը պետք է լինի հոգեպես հարուստ, բարոյա-*
*կան, առաքինի։ Վաղվա մայրերի ու հայրերի առջև համոզիչ փաստերով*
*պետք է բացել այն ճշմարտությունը, որ ամուսնացած լինել, նշանակում է՝*
*ամեն ժամ ներազդել մարդկանց վրա— սկզբում ամուսնու, կնոջ, իր և կնոջ*
*ծնողների, ապա՝ երեխաների վրա և ազդվել նրանցից։ Առանց չափազանցնելու կարող եմ ասել, որ խիստ բարդ ու նուրբ է առաջին հայացքից հասարակ թվացող կենցաղային այս հարցերը բանականությամբ ու սրտով ըմ-*
*նելու կարող եմ ասել, որ խիստ բարդ ու նուրբ է առաջին հայացքից հասա-*
*րակ թվացող կենցաղային այս հարցերը բանականությամբ ու սրտով ըմ-*
*բռնելը։ Կրկնում եմ, դրանք մեծ հմտություն են պահանջում մանկավարժից։*
*Եվ, եթե իսկապես պատանիների ու աղջիկների առջև բանանք կյանքի իմաստով, եթե իսկապես պատանիների ու աղջիկների առջև բանանք կյանքի իմա-*
*ստով, եթե իսկապես պատանիների ու աղջիկների առջև բանանք կյանքի իմա-*
*սով, եթե իսկապես պատանիների ու աղջիկների առջև բանանք կյանքի իմաստ-*
*ներ, կօգնենք նրանց՝ դառնալու հասուն ու շրջահա-*
*տությունն ու բարդությունը, կօգնենք նրանց՝ դառնալու հասուն ու շրջահա-*
*յաց, վերացնելու նրանց հայացքներում ու վարքագծում գոյություն ունեցող*
*այնքան ան-*
*թեթևամտությունը։*
*Եթե ինձ հանձնարարեին կազմել բարձր դասարաններում առարկայի ծրագի-*
*րը, առաջին տեղը ես կտայի մարդկային ցանկությունների կուլտուրային։*
**փոխհարաբերության կուլտուրան ընտանիքում**
*Այդ, ամենից առաջ, ցանկությունները ղեկավարելու, կառավարելու կարողություն է, հանուն ընտա-*
*նիքի, ծնողների, երեխաների բարօրության իր ցանկությունների մի մասից*
*հրաժարվելու կարողություն։ Բաժանվել շտապում են, ամենից առաջ՝*
*էգոիստները, անհատապաշտները— մարդիկ, որոնց համար անձնական*
*ցանկությունները վեր են ամեն ինչից։ Այդ ծրագրում կլիներ Նորակազմ ընտանիքի ցանկությունների ներդաշնակություն բաժինը, որտեղ ես մանրա-*
*կրկիտ կվերլուծեի այն ամենը, ինչ կատարվում է նորակազմ ընտանիքում,*
*ուսանելի օրինակներով ցույց կտայի, թե ինչպես են ծագում մարդկային*
*ցանկությունները, նրանցից ո՞րը և ինչպիսի՜ պայմաններում կարելի է բավարարել, ո՞րը պետք է կարողանալ զսպել և ինչպե՛ս ենթարկել ցանկությունները ընտանիքի ընդհանուր շահերին։*
*վարարել, որո՛նք պետք է կարողանալ զսպել և ինչպե՛ս ենթարկել ցանկու-*
*թյուններն ընտանիքի ընդհանուր շահերին։*
*Փոքրիկ մի գաղտնիք ասեմ. փոխհարաբերության կուլտուրան ընտանիքում դասընթացը կա։ Արդեն մի քանի տարի է, ինչ պատանիներին ու աղջիկներին մենք սովորեցնում ենք՝ ինչպես նախապատրաստվել ամուսնության, ապրել ընտանեկան կյանքով, ինչպիսիք են կուլտուրական փոխհարաբերություններն ընտանիքում, ինչպես դաստիարակել երեխային։ Անտարակույս, այդ շատ կարևոր առարկայի դասավանդումը նման պայմանների*

մահվան են դատապարտել մարդ սպանելու և գրպանից երեք ռուբլի թռցնելու համար։ Ոչ մի հաշվիչ մեքենա չի կարող չափել մեր հոգեկան կորուստները, որոնք հետևանք են երիտասարդ սերնդի հոգու, սրտի, համոզմունքների, դաստիարակության հանդեպ մեր մի քանի դպրոցների անտարբեր վերաբերմունքի։

Մենք իրավունք չունենք մոռանալու և այն, որ երիտասարդության որոշ մասն ամոթալի մի սովորույթ ունի. ակումբ, պարելու, ստադիոն գնալուց առաջ մի բաժակ խմել։ Որքան էլ խիստ լինեն հարբեցողության, խուլիգանության, հանցագործության դեմ մղվող պայքարի միջոցները, դրանք չեն օգնի, եթե չամրապնդվեն դաստիարակչական ծավալուն աշխատանքով։

Էմոցիոնալ և էսթետիկական բիրտություն— ահա հոգեկան շատ արատների աղբյուրը, որի ակունքը հումանիտար առարկաների հաճախ պարզունակ, անշնորհք ավանդումն է։

Մտածենք, ընկե՛ր մանկավարժներ ու գիտնականներ, իմ զրուցակցի այն խոսքերի մասին, որ դպրոցական տարիների ուսումնառության նրա նպատակը եղել է ուսուցչի հարցերին պատասխանելուց հետո գիտելիքներից ձերբազատվելը։ Ուսումնառության նկատմամբ նման հայացք ունենալը վտանգավոր է ամեն մի առարկայի համար, իսկ գրականության և պատմության համար՝ այդ ինքնասպանություն է։

Շատ ուսուցիչներ մոռանում են, որ գրականությունը ուսուցիչ, դաստիարակ է դառնում միայն այն դեպքում, երբ գաղափարները թևածում են գեղեցկության եթերում։ Առանց գեղեցկության, առանց գեղարվեստական զգացմունքների այդ թռիչքը քարի պես ցած կընկնի։

Պատկերացրեք, որ երաժշտության դասերի ժամանակ անընդհատ խոսենք երաժշտության մասին, բայց երաժշտություն չլինի։ Պարզ է, որ այս դեպքում երաժշտական դաստիարակություն լինել չի կարող։ Նման բան ենք նկատում նաև գրականության շատ դասերի ժամանակ։ Անչափ շատ ենք խոսում գրականության մասին, իսկ գրականություն չկա, չկա աշակերտներին հրապուրող կենդանի, թևավոր խոսք, չկա գեղեցկություն, հուզող զգացմունք։

Գրականության դասավանդումը պետք է լինի մարդկային հոգուն ուղղված անմիջական խոսք։ Ավելի քան համոզված եմ, որ գրականության ուսուցումն ամենից առաջ մարդու ինքնաճանաչումն է, կոմունիստական գաղափարների ոգով ինքնադաստիարակության ջանքերի արթնացումը։ Իսկական վարպետ-բանասերը կարող է հասնել այն բանին, որ իր սաները ձգտեն ավելի լավը դառնալ։ Մարդկության ստեղծած հոգեկան հարստություններում պատանի քաղաքացին գտնում է այն, ինչը մեծարում, բացահայտում է մարդուն։ Դպրոցում գրականության ուսուցման հիմնական նպատակն է՝ այնպես անել, որ գիրքը որպես հոգեկան պահանջ մտնի երիտասարդ մարդու կյանքի մեջ, որ դպրոցում ոչ թե վերջանա գրականության ավանդումը, այլ մարդու հոգեկան կյանքը գրքաշխարհում՝ միայն սկսվի։ Առանց դրա գրականության ավանդումն անիմաստ է։

Մեր դպրոցի դասարաններից մեկում երեք տարի շարունակ փորձի համար գրականության ուսուցման հիմքում դրինք տվյալ ստեղծագործության սկզբնաղբյուրների ընթերցումը։ Աշակերտները դասին պատրաստվում էին գեղարվեստական ստեղծագործության միջոցով և ոչ դասագրքով։ Դասարանում անհետացել էին ձանձրույթը, չոր ու ցամաք բառերով արտահայտվող գաղափարները, ծնվեցին գեղարվեստորեն մարմնավորված վառ գաղափարներ։ Միշտ բուռն, ջերմ էր խոսակցությունը մարդու, կյանքի մասին։ Դաստիարակներն ու սաները լիովին սրտաբաց էին։ Աշակերտները իրոք լավ գիտեին գրականությունը, նրանք մեկընդմիշտ սիրեցին գիրքը։

Ես հաստատ համոզված եմ, որ այդպես պետք է ավանդել գրականությունը։ Ինչպես երաժշտության ուսուցիչը ջութակով է մտնում դասարան, և ոչ ջութակի վերաբերյալ գրքով, այնպես էլ գրականության դասերին պետք է հնչի գաղափարը բացահայտող գեղարվեստական խոսքը և ոչ գաղափարի մասին տաղտկալի պատմությունը։



Անտարակույս, մանկավարժական պրոցեսի կատարելագործման այս օրինակը չի նշանակում մերժել դասագիրքը։ Դասագիրքը գիտելիքների կարևոր աղբյուր է, գիտության այբուբեն։ Բայց այն ճշմարտության տրամաբանական ընդհանրացումն է միայն, իսկ գրականության, ինչպես և երաժշտության մեջ մենք գործ ունենք մարդկային հարաբերությունների ամենանուրբ, ամենաբարդ արտահայտությունների հետ— զգացմունքների, գեղեցկության, մարդկային անհատականության։ Աշակերտները գրականության դասագրքերը կարդում են այդ ողջ բարդությունը, ստեղծագործական գեղագիտական հարստությունն ըմբռնելուց, զգալուց հետո միայն։

Ե՛վ միջնակարգ դպրոցի, և՛ բուհերի ուսումնական պլաններում չկա մարդաբանություն առարկան։ Թերևս անհրաժեշտ չէ առանձին ժամեր հատկացնել այդ առարկային։ Մարդաբանությամբ պետք է ներծծված լինի դպրոցի և բուհի ուսումնա-դաստիարակչական ողջ աշխատանքը։ Ուսուցիչների համամիութենական համագումարում մեծ ուշադրությամբ լսեցի Լ. Ի. Բրեժնևի ճառը։ Ինձ խորապես հուզեց այն, որ մեր կուսակցության գլխավոր քարտուղարի սրտաբուխ, մտածված, խորաթափանց խոսքերում ամենահիմնականը աշակերտների, իր ազնիվ գործի հանդեպ ուսուցչի տածած սերն էր։ Իսկ սիրելու համար պետք է ճանաչել, իմանալ պատանու հոգու ամեն թրթիռ։ Իմանալ ում առաջ է բաց նրա սիրտը։ Իմանալ և պայքարել։ Պայքարել խորամանկ, նենգ հակառակորդի դեմ, որի թիկունքում կրոնը հազարամյակներ շարունակ վարպետորեն ջանքեր է գործադրել մարդկային հոգին որսալու համար, պայքարել մեզ օտար գաղափարների դեմ։

Կոմունիզմի անսասան մարտիկ դառնալու համար մեր սաները պետք է կարողանան զինվել գիտելիքներով։ Միայն այն ժամանակ, երբ գիտելիքներն են մարտնչում, կռվում ու հաղթանակում, միշտ հաստատ է մնում գաղափարայնության սյունը։ Երիտասարդությանը զինել մարտնչող գիտելիքներով— այս է դաստիարակության յուրահատուկ, կարևորագույն խնդիրներից մեկը։

«КОММУНИСТ УКРАИНЫ», № 10, 1968 г.



Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

# ՌՈՒՍԱԿԱՆ ԿԼԱՍԻԿՆ ԵՎ ՀԱՅ ՄՇԱԿՈՒՅԹԸ

(Ի. Ս. ՏՈՒՐԳԵՆԵՎԻ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

1883 թվականին Ի. Շիշկինն ավարտեց իր **Հարթ հովտում...** հանրահանաչ նկարը: Հարթ, անծայրածիր, բազմերանգ հովիտ և վիթխարի, խորարմատ մի կաղնի... Նույն թվականին վախճանվեց ռուս գրականության ամենալիրիկ արձակագիրը՝ **Իվան Սերգեևիչ Տուրգենևը:**

Հանճարեղ նկարչի այդ նկարով հիացողներից շատերն այն համարել են գույների լեզվով դարերին ընծայված տաղանդավոր գրողի այլաբանական կերպարը, գրող, որի չխամրող հրապույրը նույն ուժով առինքնում է աշխարհի շատ ժողովուրդների: Իպոլիտ Տենը նրա մասին ասել է. «Տուրգենևն ամենակատարյալ արվեստագետներից մեկն է, որպիսին ունեցել է աշխարհը հույն արվեստագետներից հետո»: Ողջ Սովետական Միությունում, ինչպես և նրա սահմաններից դուրս— Գերմանիայում, Ֆրանսիայում, Անգլիայում, նրա տաղանդը նվաճել է նույնքան երկրպագուներ, որքան իր հայրենիքում: Ուր էլ եղել, ապրել է նա, հայրենիքում թե հայրենիքից դուրս, իր ազդեցությունն ու հմայքը սփռելով ամենուր, նա մնացել է ռուս մարդ և ռուս գրող, ինչպես ինքն է ասել՝ «Թեկուզ յոթ ծովում էլ մեզ լվանաս, ռուսական էությունը մեզնից չես հանի»:

Տուրգենևը համաշխարհային գրական դեմք է: Նրա երկերը թարգմանված են երկրագնդի տասնյակ ժողովուրդների լեզուներով:

Եվրոպայի հռչակավոր գրողներ՝ Գ. Ֆլոբերը, Ա. Դոդեն, Գի դը Մոպասանը, Անատոլ Ֆրանսը, Ջոն Գոլսուորսին, Հենրի Ջեյմսը հիացմունքով են խոսել ռուս վիպասանի մասին: Եվրոպական գրականության մեջ կնոջ ազատագրության մեծագույն պաշտպանը՝ Ժորժ Սանդը, խոստովանել է, որ Տուրգենևը եղել է իր և շատերի ուսուցիչը: Անհնհայտ է նրա ազդեցությունը սլավոնական, չեխական, լեհական, բուլղարական և ռուս հետագա ողջ գրականության վրա: Վ. Գարշինը, Վ. Կորոլենկոն, Ա. Չեխովը, Ի. Բունինը, Ա. Տոլստոյը, Կ. Ֆեդինը, Կ. Պաուստովսկին, սովորելով Տուրգենևից՝ բարձրացրել են իրենց ստեղծագործությունների գեղարվեստական որակը:



Հայ, վրաց, ադրբեջանական գրողները նույնպես շատ բան են պարտական ռուս մեծ վիպասանին:

Ինչո՞վ բացատրել Ի. Ս. Տուրգենևի ստեղծագործությունների նկատմամբ համաշխարհային այդ մեծ հետաքրքրասիրությունը:

Տուրգենևը, ինչպես ամեն մի խոշոր գրող, իր դարի որդին է, իր դարի ոգին: Նա միշտ արծարծել է ժողովրդին հուզող ամենաէական հարցերը: Ահա թե ինչու նրա՝ լույս տեսնող ամեն մի վեպ հարուցում էր բուռն վիճաբանություն, իրարամերժ կարծիքներ, որոնք բխում էին դարի անտագոնիստական հակասություններից: Այդ հակասություններով են բացատրվում նաև Տուրգենևի ստեղծագործություններում առկա հակասությունները: Գրողի աշխարհհայացքը և գեղագիտական պատկերացումները ձևավորվեցին XIX դարի 30—40-ական թվականներին, ճորտատիրական, միապետական Ռուսաստանում: Մի բուռ ազնվականներ յուրացնում էին տասնյակ միլիոնավոր ճորտ գյուղացիության աշխատանքի պտուղները, զրկում նրանց ամենատարրական իրավունքներից, պատվից, ազատությունից: Դեռ մեծ Պուշկինը «դաժան դար» էր անվանում իր ժամանակաշրջանը: Անարդար հասարակարգի դեմ բողոքում էին գյուղացիները և նրանց լավագույն երազանքներն արտահայտող գրողները, հրապարակախոսները— ռազնոչինեցներից՝ Բելինսկին, Դոբրոլյուբովը, Չեռնիշևսկին, առաջադեմ ազնվականներից՝ Գերցենը, Սալտիկով-Շչեդրինը: Այս բոլորը մեծ ազդեցություն ունեցավ ազնվական մտավորականության որոշ խավերի, առանձնապես Տուրգենևի վրա:

Իվան Սերգեևիչ Տուրգենևը ծնվել է 1818 թ., Օրյոլ քաղաքի ազնվական ընտանիքում: Մանկության և պատանեկության տարիներում թե՛ իր ընտանիքում, թե՛ կալվածատիրական շրջապատում անձամբ նա տեսել է ճորտերի գազանակոծումներ, սպանություններ... և պատանու հոգում ծնվել է ատելությունը կալվածատիրական բռնապետության հանդեպ:

Տուրգենևը սովորել է Լազարյան ճեմարանի հայկական պանսիոնում, ապա ուսանել Մոսկվայի, Պետերբուրգի, Գերմանիայի համալսարաններում: Նա քաջատեղյակ էր ռուսական, եվրոպական գրականությանը: Լինելով դարի ամենակրթված մարդկանցից մեկը, նա արձագանքում էր ռուսական ու եվրոպական հասարակական կյանքին: Տուրգենևը կարողացավ օգտագործել այն ամենը, ինչ վեհ, արժեքավոր էր ռուս գրականության մեջ, Կոլցովի, Ժուկովսկու, Գրիբոեդովի, հատկապես Պուշկինի, Լերմոնտովի, Գոգոլի ստեղծագործություններում, որոնք համաշխարհային ճանաչման հասցրին ռուսական բանաստեղծությունը, արձակը, դրամատուրգիան:

Քառասնական թվականներին, երբ Տուրգենևն իր գրական առաջին քայլերն էր կատարում, ռուս հասարակության առաջ ծառացած ամենաէական հարցը ճորտատիրության վերացումն էր: Ժամանակի հեղափոխական դեմոկրատական մամուլը թե՛ հայրենիքում, թե՛ արտասահմանում «Современник»-ը, «Колокол»-ը առավել սրությամբ էին դնում այդ ամոթալի բիծը՝ ճորտատիրությունը վերացնելու հարցը: Ճիշտ է, Տուրգենևը չկարողացավ հասնել Գերցենի, Բելինսկու, Նեկրասովի դեմոկրատիզմին, նա մնաց լիբերալ և, ինչպես Լենինն է նշել, «60 տարի սրանից առաջ ձգտում էր չափավոր միապետական և ազնվական կոնստիտուցիայի...» (Երկեր, հ. 27, էջ 330): Բայց արդարությունը պահանջում է ասել, որ մինչև 1861 թվականը նա որոշակի առաջադիմական դիրք գրավեց: Միշտ ունկնդիր դարի ձայնին, Տուրգենևը հանդես եկավ **Որսորդի հիշատակարանը** պատմվածքներով, որոնք լի են գյուղացիության հանդեպ տածած սիրով ու կարեկցությամբ, ագահ ու դաժան կալվածատիրության հանդեպ տածած ատելությամբ: Դրանով հեղինակը նետվեց գաղափարական պայքարի կենտրոնը, արժանացավ Բելինսկու բարձր գնահատականին: Միաժամանակ նա կարողացավ Պուշկինից, Գոգոլից, իր այս մեծ ուսուցիչներից հետո բարձրացնել պատմվածքի գեղարվեստական որակը, դառնալ բնանկարի չգերազանցված վարպետ, ողջ խորությամբ և բազմակողմանի հասկացավ հասարակական կյանքի ներքին հակասությունները, շիշկինյան գեղագիտությամբ տեսավ ռուսական բնությունը, անծայրածիր անտառներն ու տափաստանները: Տուրգենևի այս պատմվածքները բնության գեղեցկության հիմնն են՝ բնապաշտի հիմնը և ժողովրդի վերքերի ողբը: **Խոր և Կալինիչը, Բուրմիստրը, Մումուն, Բիրյուկը** պատմվածքներում Տուրգենևը ցույց տվեց, թե ինչպես գյուղացիության որոշ տարրեր հետզհետե գիտակցության են գալիս, և ոտնձգում է նրանց ատելությունը տերերի դեմ:

Հիսունական թվականների կեսին, երբ ամենքին հուզում էին երիտասարդության դաստիարակության հարցերը, Տուրգենևը գրեց իր **Ռուդին** վեպը: Թեև հարյուր տարուց ավելի է անցել այս վեպի լույս տեսնելուց, բայց այն չի կորցրել իր այժմեականությունը: Երիտասարդությունը խոր գիտելիքներ ձեռք բերելուց, հայրենասեր լինելուց բացի պետք է ունենա նաև գործնական հատկություններ, կարողանա ներգործել կյանքի վրա, այն գեղեցիկ, կատարյալ դարձնելու համար: Այլ կերպ

ասած, հարկավոր է դաստիարակել ոչ թե Ռուդինի, Պիգասովի, այլ Պոկրովսկու նման մարդիկ, որոնք հզոր լինեն թե՛ տեսության մեջ, թե՛ գործնական կյանքում:

Անցյալ դարի երրորդ կեսում հրատապ դարձավ բուլղար ժողովրդին սուլթանական արյունարբու լծից ազատագրելու խնդիրը: Եվ ահա 1860 թ. լույս տեսավ Տուրգենևի **Նախօրեին** վեպը: Ռուս և բուլղար ժողովուրդների դարավոր բարեկամության գեղարվեստական արտահայտությունն է այդ, փառաբանությունը: Բուլղարացի Ինսարովն ամեն ինչ նվիրում է ամենասուրբ գործին՝ իր ժողովրդի ազատագրությանը: Նրա գաղափարներով համակված և գործով տարված ռուս աղջիկը՝ Ելենա Ստախովան հրապուրվում է Ինսարովով, ինքն էլ նվիրվում սիրած մարդու մեծ գործին:

Ճիշտ է, Տուրգենևը ներկայացրեց միայն նախօրեին: Պատմական օբյեկտիվ ու սուբյեկտիվ բարդ պայմաններում նա չկարողացավ պատկերել, թե ինչպես բուլղարացիները ռուս ժողովրդի հետ մեկտեղ կենաց ու մահու կռիվ են մղում հայրենիքն օտարի լծից ազատելու համար: Այդ պատճառով Դոբրոլյուբովը, այդ հանճարեղ պատանին, հարց դրեց՝ **Ե՞րբ կգա իսկական օրը:** Այսինքն՝ ե՞րբ կգա ժողովրդի իսկական ազատագրումը: Ցարական Ռուսաստանում հանդես գալ այդպիսի պրոբլեմներով, այն էլ ճորտատիրության վերացման նախօրեին, իսկական գրական սխրանք էր: Իսկ այսպիսի համարձակություն բնորոշ է Տուրգենևին: Հիշենք նաև 1852 թվականը: Ն. Վ. Գոգոլի մահվան առթիվ ցարական կառավարությունն արգելել էր դրական խոսք ասել իրականությունը մերկացնող հանճարեղ գրողի հասցեին: Տուրգենևն այդ օրերին բարձր գնահատեց Գոգոլի դերը ռուս գրականության մեջ: Դրա համար թեև նա բանտարկվեց, բայց որպես հայրենասեր ու քաղաքացի սիրվեց և հարգվեց ռուս առաջադեմ հասարակության կողմից:

Տուրգենևի **Նախօրեին** վեպի լավագույն կողմերից մեկը ազատագրական վեհ գաղափարներով տարված աղջկա՝ Ելենա Ստախովայի՝ ռուս կնոջ կատարելատիպերից մեկի, գեղարվեստական կերտումն է: Ուշագրավ է, որ Լենինի լավագույն հետևորդը՝ Ստեփան Շահումյանը, 1901 թվականին իր կնոջը խորհուրդ էր տալիս կարդալ **Նախօրեին** վեպը և նմանվել Ելենային:

XIX դարի 60-ական թվականների սկզբին պայքարն ազնվականների և նոր բարձրացող ռազնոչինեցների միջև առավել փոթորկալի դարձավ: 1859—1861 թթ. Ռուսաստանում ընտեղծվել էր հեղափոխական իրադրություն: Դոբրոլյուբովը, Չեռնիշևսկին, Նեկրասովը ողջունեցին այդ իրադրությունը: Սակայն որոշ գրողներ ընկրկեցին, վախեցան և տեղի ունեցավ պառակտում «Современник» ամսագրում: Գոնչարովը, Դոստոևսկին, Տուրգենևը հեռացան «Современник»-ից, համախմբվեցին «Русский вестник» ամսագրի շուրջը: Ծավալվեց կատաղի բանավեճ քաղաքական, գեղագիտական հակոտնյա դիրքերի վրա կանգնած այս երկու պարբերականների միջև: Այդ իրադրության մեջ Տուրգենևը հրապարակեց իր **Հայրեր և որդիներ** վեպը:

Ողջ մի էպոխա ընդգրկող այս երկում արտացոլված է ժամանակակից ռուս կյանքն իր դիալեկտիկական հակասություններով, դասակարգային սուր պայքարով: Լենինը նշել է, որ այս շրջանում ռազնոչինեցները հետզհետե ասպարեզից դուրս էին մղում ազնվականներին: Մեծ ռեալիստ Տուրգենևը, հավատարիմ իրականությանը, **Հայրեր և որդիներ** վեպում պատկերեց թե ինչպես ռազնոչինեցներից (տարաստիճան) Եվգենի Բազարովը օրհասական գաղափարական կռիվ է մղում պահպանողական ու լիբերալ ազնվականության (կիրսանովների) դեմ: Ուշագրավ և ժամանակակիցների համար ուսանելի է այն, որ երբ Տուրգենևը չէր կարողանում ճիշտ կողմնորոշվել քաղաքական բարդ հարցերում, ենթարկվում էր, Հեգելի խոսքերով ասած՝ «կյանքի ճնշմանը», այսինքն՝ մնում էր վիպասանական արվեստի բարձունքում, ինչպես՝ Դոստոևսկին, Տոլստոյը: Դրա արդյունքն է հենց այն, որ **Հայրեր և որդիներ** վեպի հեղինակը սուբյեկտիվորեն գուցե ցանկացել է մտրակել երիտասարդ սերնդին, նիհիլիստներին, որդիներին, բայց այդ մտրակը (ինչպես սրամտորեն նկատել է Գերցենը), իջել է հայրերի՝ հին սերնդի, ազնվականների գլխին: Չպետք է մոռանալ, որ վեպը նվիրված է Վիսարիոն Բելինսկուն: Ահա թե ինչու անհեթեթ պետք է համարել նարոդնիկության պարագլուխ Միխայլովսկու այն կարծիքը, թե **Հայրեր և որդիներ**-ը ոստիկանական վեպ է, այսինքն՝ նպատակ ունի մատնել հեղափոխականներին: Տուրգենևը արդարացի էր՝ Գերցենին հայտնելով, թե վեպի հիմնական կոնֆլիկտը «դեմոկրատիզմի հաղթանակն է ազնվականության նկատմամբ»:

Տուրգենևի ողջ ստեղծագործությունը ռուս հասարակական կյանքի գեղարվեստական տարեգրությունն է: 60—70-ական թվականներին, այսպես կոչված «արևմտականների» և «սլավոնասերների» բախումը և նոր ձևավորվող նարոդնիկների որոնումներն արտացոլվեցին նրա **Ծուխ** և **Կորդ** (Новь) վեպերում:

Ակնհայտ է որ, երբ Տուրգենևը համաքայլ է պատմության առաջադիմական ուժերին, նրա գեղարվեստական տաղանդը վերելք է ապրում, իսկ երբ փորձում է ետ մնալ, երբեմն հակադրվում է առաջադեմ ուժերին, նրա տա-



ղանդը կորցնում է իր փայլը, իջնում է նրա ստեղծագործությունների գեղարվեստական որակը: Ինչ խոսք, **Ծուխ** և **Կորդ** վեպերը հեռու են **Ռուդին, Նախօրեին, Հայրեր և որդիներ** վեպերի գեղարվեստական մակարդակից:

Այնուամենայնիվ, Պուշկինի, Լերմոնտովի, Գոգոլի վեպերից հետո Տուրգենևը կարողացավ ռուսական ռեալիստական վիպասանությունն առաջ մղել, նպաստել նրա համաշխարհային ճանաչմանը: Նրա վերոհիշյալ վեպերը, ինչպես նաև **Ազնվականական բույնը, Գարնանային ջրերը, Հաղթական սիրո երգը** մարդկությանը կգրավեն իրենց լավատեսությամբ, մարդասիրությամբ, գեղարվեստական ռեալիզմով, մերթ քնարական, մերթ փիլիսոփայական երանգներով, անմոռանալի տիպերի և բնավորությունների հոգեբանական խոր ապրումների վարպետ արտացոլմամբ: Նրա վեպերը մեզ հմայում են իրենց մեղմությամբ, նրբությամբ, առանց ցավ պատճառող ներվային այն լարվածության, որ բնորոշ է Դոստոևսկու վեպերին: Տուրգենևի գրեթե բոլոր վեպերը, անտառների ու դաշտերի ծաղիկների արբեցնող բույրն ունեն, հեզանազ զեփյուռի շունչը... Սրանով է հեղինակը սիրելի դառնում բոլոր ժողովուրդներին:

Կյանքի վերջին տարիներին, 70-ական թըվականների վերջից մինչև 1883 թ. Տուրգենևը գրեց արձակ բանաստեղծություններ: Արձակ բանաստեղծությունը մարդկության գեղարվեստական մտքի բարձրագույն արտահայտություններից է, որը գնալով ավելի ու ավելի կզարգանա: Արձակ բանաստեղծություններ գրելը հեղինակից պահանջում է լինել ոչ պակաս բանաստեղծ քան Պուշկինը, ոչ պակաս իմաստուն և պերճախոս, քան Գերցենը, ոչ պակաս վարպետ արվեստագետ, քան Տոլստոյը և ոչ պակաս հակիրճ և հստակ գրող, քան Չեխովը: Արձակ բանաստեղծություններում Տուրգենևը զուգակցում է այս հատկությունները. արձակ բանաստեղծության հիմնադիրն ու չգերազանցված վարպետն է նա Ռուսաստանում: Համաշխարհային գրականության մեջ Տուրգենևի արձակ բանաստեղծությունների տրադիցիան զարգացրեց հնդիկ բանաստեղծ Ռաբինդրանաթ Տագորը: Տուրգենևն ու Տագորը այդ գեղեցիկ ժանրի գագաթնակետն են:

Իր արձակ բանաստեղծություններում Ի. Ս. Տուրգենևը թեմատիկորեն ամփոփեց գրեթե այն ամենը, ինչ արտահայտված էր XIX դարի ռուս գրականության մեջ:

Ահա ռուսական գյուղի խաղաղ բնության անդորրը **(Գյուղը)**, մարդասիրական վերաբերմունքը դեպի թշվառները **(Մուրացիկը)**, բնության հզորագույն ուժերից մեկի՝ մոր անձնուրաց սիրո հաղթանակը **(Ճնճղուկը)**, հեղափոխական գործիչների նկատմամբ անմիտ, բութ անտարբերությունը **(Սևագործը և փափկասունը)**, հեղափոխական գործին անձնազոհ նվիրվածությունը **(Շեմքը)**, պոեզիայի հավիտենական հրապույրը **(Ի՜նչ լավն էին, ինչ թարմ էին վարդերը...)** և, վերջապես, գրողի՝ ժողովրդի կյանքում լեզվի կենսական նշանակության հավաստումը **(Ռուսաց լեզու)**:

1882 թ. Տուրգենևը գրել է. «Տարակուսանքի օրերին, հայրենիքիս վիճակի մասին ծանր խոհերի օրերին, դու ես իմ միակ նեցուկն ու ապավենը, ո՜վ մեծ, հզոր, արդարախոս և ազատ ռուսաց լեզու: Առանց քեզ ինչպե՞ս կարող էի չվհատվել, տեսնելով այն ամենը, ինչ կատարվում է տանը: Բայց չի կարելի չհավատալ, որ այսպիսի մի լեզու մեծ ժողովրդին չի շնորհված»: Եվ իրոք, ռուսաց լեզուն մեծ է իր ժողովրդի մեծությամբ, հզոր՝ Լոմոնոսովի և Տոլստոյի երկերում, արդարախոս՝ Պուշկինի և Շչեդրինի ռեալիստական գրվածքներում, ազատ՝ Գերցենի ու Չեռնիշևսկու գործերում:

Շատ քիչ հեղինակներ կան, որ կարող են, իրավունք ունեն այսպես արտահայտվել: Տուրգենևը ռուսաց լեզվի մեծագույն երախտավորներից է: Պուշկինից հետո նա էր, որ ռուսաց գրական լեզուն ավելի մշակեց, հղկեց, կատարելագործեց և փոխանցեց Չեխովին:

Պուշկին, Տուրգենև, Չեխով— ահա այն երեք գրական դյուցազները, որոնք հերկուլեսյան սյուների պես իրենց ուսերի վրա են պահել աշխարհի ամենահարուստ, գեղեցիկ լեզուներից մեկը— ռուսաց լեզուն:

Տուրգենևն իր ժամանակի ամենազարգացած մարդկանցից մեկն էր: Հաճախակի լինելով արտասահմանում, նա ծանոթ էր ժամանակի գիտական, գրական, երաժշտական մտքի ամենափայլուն ներկայացուցիչներին: Նա տեսել է 1848 թ. հեղափոխությունը Փարիզում: Նա մտերիմ էր աշխարհահռչակ Գունոյին, Լիստին, Սեն Սանսին: Ռուս կոմպոզիտորներից Տուրգենևն առանձնապես բարձր էր գնահատում Չայկովսկուն, Ռիմսկի-Կորսակովին: Երաժշտական աշխարհի լավագույն գիտակներից էր նա:

Ահա թե ինչու քիչ չեն Տուրգենևի այն երկերը, որոնց մեջ փառաբանվել են երաժշտության հմայիչ ազդեցությունն ու վիթխարի դերը մարդկանց կյանքում: Հիշենք Տուրգենևի **Երգիչները, Ազնվականական բույնը, Երեկոն Սորենտոյում, Հաղթական սիրո երգը** ստեղծագործությունները: Անժխտելի է Տուրգենևի կյանքում իսպանական երգչուհի Պոլինա Վիարդո Գարսիայի դերը, որին սիրում էր վիպասանը:

Խանդաղատանքով հիշելով գրողի այս մաքուր, վսեմ զգացումը, չմոռանանք ասել, որ

թերևս այդքան մոգական ու մեծ չլիներ նրա տաղանդի բարոյական ներգործության ուժը, եթե նրա ոգևորության աղբյուրը այդ բոլորանվեր, հավերժական սերը չլիներ։

Տուրգենևը միաժամանակ տաղանդավոր քննադատ էր, ռուս գեղագիտական մտքի ներկայացուցիչներից մեկը։ Նրա **Համլետ և Դոն-Քիշոտ** թեմայով դասախոսությունն ամենաինքնատիպ խոհերից է այն վիթխարի գրականության մեջ, որ նվիրված է Շեքսպիրին և Սերվանտեսին, անգլիական և իսպանական վերածննդի այդ հանճարներին։

Հայ ժողովրդին միշտ էլ հետաքրքրել է ռուս մեծ վիպասանը։ Չկա քիչ թե շատ նշանակալի մի հայ թերթ կամ ամսագիր, ուր թարգմանաբար զետեղված չլինեն նրա պատմվածքները, արձակ բանաստեղծությունները։ Տուրգենևի մասին հոդվածներ են գրել Գրիգոր Արծրունին, Հովհաննես Հովհաննիսյանը, Տիգրան Հովհաննիսյանը, Լևոն Բաշալյանը և շատ ուրիշներ։ Ճիշտ է, ռուս վիպասանի երկերը գնահատելիս նրանք ունեցել են տարբեր դիրքավորում։ Բայց միշտ և ամենուրեք արտացոլված են նրա հանդեպ տածած մեծագույն սերն ու հարգանքը։ Տուրգենևի երկերի լավագույն թարգմանիչներից են՝ Րաֆֆին, Հովհ. Թումանյանը, Ալեքսանդր Ծատուրյանը, Մուշե Վարդապետը, Երվանդ Ղազարյանը, իսկ սովետական շրջանում՝ Հակոբ Հակոբյանը, Գարեգին Բեսը, Հարություն Հարությունյանը և ուրիշներ։ Նրա ստեղծագործությունների շուրջ բանավեճ է ծավալվել նաև հայ պարբերական մամուլում։

1883 թ. Տուրգենևի մասին ծավալվեց բուռն բանակռիվ «Մշակի» և «Մեղու Հայաստանիի» միջև։ «Մշակը», Տուրգենևին բարձր գնահատելով հանդերձ, համեմատում էր նրան Րաֆֆու հետ։ «Մեղու Հայաստանին» (որը ձգտում էր ժխտել իր հակառակորդ «Մշակի» ամեն մի միտք), այս անգամ էլ տվյալ համեմատությունը համարում էր տգիտություն, անգամ անամոթություն, որ «Մշակը» համարձակվել է «Հսկա ստեղծագործողի անվան հետ հավասարելու յուր Րաֆֆիի անունը»։

Տուրգենևը հիացմունքով է խոսել մեր հեղափոխական դեմոկրատ Միքայել Նալբանդյանի մասին։ Տուրգենևը և Նալբանդյանը ծանոթացել են Գերցենի հանձնարարականով։ 1862 թվականին Գերցենը Լոնդոնից Փարիզ է ուղարկում մի նամակ, հասցեագրված Տուրգենևին։ Այդ նույն նամակում, ներփակ զետեղված էր Գերցենի մի այլ նամակը՝ ուղղված Միք. Նալբանդյանին։ Գերցենն այսպես է վարվել, հավանաբար, քաղաքական զգուշավորությունից։ Տուրգենևին ուղղված իր նամակում Գերցենը հետևյալ կերպ է բնութագրել Նալբանդյանին. «Նալբանդովը շատ և շատ ազնիվ և լավ մարդ է» (տե՛ս Արամ Ինճիկյան, «Մ. Նալբանդյանի կյանքի և գործունեության տարեգրություն», Երևան, 1954 թ.)։

Փարիզում 3—4 անգամ իրար հանդիպելուց և զրուցելուց հետո Տուրգենևն շտապում է Գերցենին հայտնել. «N N-ը (այսինքն՝ Նալբանդյանը— Ռ. Հ.) իրոք հիանալի երիտասարդ է» (М. Лемке **«Очерки освободительного движения 60-х годов»**, стр. 75—76)։ Տուրգենևի այս վերաբերմունքը հայտնի էր Մ. Բակունինին։ Վերջինս Նալբանդյանին գրել է. «Մենք բոլորս ուրախ ենք, որ դուք արժանացել եք ծերուկ Տուրգենևի սիրուն և, որովհետև այդպիսի զգացմունքը փոխադարձ են լինում, ապա նա ևս ոչ պակաս սիրված է ձեր կողմից» (նույն տեղը)։ Հետաքրքրական է Մ. Բակունինի հետևյալ համեմատական բնութագիրը.

«Տուրգենևը խելոք է և սիրալիր, բայց չի մոռանում իրեն և չունի այն սուրբ պարզությունը, որ բնորոշ է Նալբանդյանին, որը գրավում է ոչ թե խելքով այլ սրտով, թեև որպես իսկական հայ շատ խորամանկ է, երբ այդ անհրաժեշտ է» (նույն տեղը, էջ 124—125)։

Շուտով Մ. Նալբանդյանը բանտարկվում է. Բակունինը Տուրգենևից է հարցնում Նալբանդյանի մասին։ Ցարական կառավարությունը, իմանալով Փարիզի հանդիպումների մասին, հարցաքննել է Ի. Ս. Տուրգենևին և պահանջել գրավոր ցուցմունք իր և Նալբանդյանի զրույցների բովանդակության մասին, նախօրոք ծանոթացնելով Նալբանդյանի տված ցուցմունքներին։ Տուրգենևն իր ցուցմունքներում հայտնում է. «Նալբանդյանի բոլոր ցուցմունքները ճիշտ են։ Այդ 3—4 հանդիպումների ժամանակ Փարիզում խոսել ենք բացառապես Բակունինի կնոջը Սիբիրից Տվերի նահանգը տեղափոխելու մասին»։ Այդ նույն ցուցմունքը Տուրգենևը տվել է նաև 1864 թ. հունվարի 31-ին, սենատում։

Տուրգենևի և Նալբանդյանի միջև սկսված այս բարեկամությունն ընդհատվեց հայ հեղափոխականի բանտարկության և ապա մահվան պատճառով։

Տուրգենևի երկրպագուն էր և մեր մեծ վիպասան Րաֆֆին։ Ակադեմիկոս Ա. Տերտերյանը ճիշտ է գրել. «Րաֆֆին համակրանք ուներ միաժամանակ թե՛ դեպի Վիկտոր Հյուգոն, թե՛ դեպի Տուրգենևը» (**Հայ կլասիկներ**, Երևան, 1944, էջ 412)։

Տուրգենևը և Րաֆֆին արձագանքում էին ժողովրդին հուզող հարցերին, համակցում էին հրաշալի ռոմանտիզմը մերկացնող ռեալիզմի հետ։ Նրանք պատկերել են այն հերոսներին, որոնք ժողովրդի ազատագրության, երջանկության ուղիներ են որոնում։ Այս ընդհանուր կողմերն ունեն Տուրգենևը և Րաֆֆին։ Բնական է, որ հայ վիպասանը, ծանոթ լինելով իր ժամանակի ռուս գրականությանը, պետք է որ բարձր գնահատեր, հատկապես, Տուրգենևին։ Իր **Հայ կինը և հայ երիտասարդությունը** հոդվածում Րաֆֆին գրել է. «Անհնար է ժխտել, որ ներքին կապ կա մեր և ռուս մտավոր զարգացման մեջ։ 40—60-ական թվականները տըվել են Ռուսաստանին ամենաերևելի գրողներին»։ Իսկ այդ երևելի գրողների մեջ ամենապայծառ դեմքերից մեկն էր Տուրգենևը։

1883 թ. Տուրգենևի մահվան տարում Րաֆֆին թարգմանեց իր ռուս գրչակցի արձակ բանաստեղծություններից մեկը՝ **«Աղավնիները»**։ Թարգմանության համար ընտրած այդ արձակ բանաստեղծությունը վկայում է հայ վիպասանի բարձր ճաշակի մասին։ Րաֆֆին բացառիկ սիրով ու վարպետությամբ է թարգմանել այն։ Ստացվել է բնագրին համազոր մի թարգմանություն։

Ռուս նարոդնիկները Տուրգենևի մահվան կապակցությամբ հրապարակեցին մի թռուցիկ, որի մեջ ընդգծվում է Տուրգենևի ստեղծագործությունների նշանակությունը հեղափոխական շարժման համար։

Հայ իրականության մեջ եղել են թե՛ Տուրգենևին, թե՛ նարոդնիկներին հետևողներ։ «Արձագանք» շաբաթաթերթում 1883 թ. տպագրվեց մի հոդված Տուրգենևի մասին, որի հեղինակն է ռուս մեծ վիպասանի հուղարկավորությանը մասնակցած հայ գյուղագիր Գաբրիել Մաճկալը (Մնացականյան)[1]։ Հոդվածագիրը նկարագրում է. մոտ 50 հազար մարդ էին մասնակցում Տուրգենևի թաղմանը, որը տեղի ունեցավ Պետերբուրգի Վոլկովո գերեզմանատանը։ Այս բոլոր մարդկանցից ամեն մեկը երևի իրեն որևէ բանով պարտական է զգում գրողին։ «Ես էլ,— գրում է հոդվածագիրը,— շատ բան եմ նրան պարտական։ Նա իմ առաջին ուսուցիչն էր։ Ես երազում էի հայրենիք գնալ, գործել մեր ժողովրդի հետ։ Բայց երբ ձեռքս ընկավ նրա **Հայրեր և որդիները, Ռուդինը**, ես սթափվեցի և գիշերը քնիս մեջ տեսա Իվան Սերգեևիչին։ Նա բարձր էր ու գեղեցիկ, որպես հսկա կանգնած էր իմ առաջ և ինձ ասում էր. «Տես, եթե առանց անհրաժեշտ պատրաստության կմտնես ժողովրդի մեջ, այս հերոսների պես կլինես ծիծաղելի և վնասակար»։ Նա ինձ ցույց տվեց իմ թերությունները, նա դարձավ իմ լավագույն բարեկամը» («Արձագանք», 1883, № 41)։

Գեղարվեստական երկերի թարգմանության որակը, բնականաբար, լուրջ զբաղեցրել է հայ մշակույթին։ Ուշագրավ է բանաստեղծ Հովհաննես Հովհաննիսյանի հոդվածը Տուրգենևի արձակ բանաստեղծությունների անհաջող թարգմանությունների մասին (թարգմանիչ Գասպար Յաղուբյան) «Հայ ընթերցողը դըժվարությամբ կկարողանա կռահել, որ դրանք Տուրգենևի հիանալի արձակ բանաստեղծություններն են։ Յաղուբյանի թարգմանությամբ, — եզրափակում է Հովհ. Հովհաննիսյանը,— Տուրգենևի բանաստեղծական մարգարիտները դարձել են հասարակ գյուղական ուլունքներ» («Պսակ», 1883, № 4)։ Հայ քննադատությունը բարձր գնահատեց Ալ. Ծատուրյանի **Արձակ բանաստեղծություններ,** Մուշե Վարդապետի **Հայրեր և որդիներ** թարգմանությունները։

Տուրգենևի երկերի հայերեն թարգմանությունները լավագույն դպրոց են եղել թարգմանիչների համար։ Հետաքրքրական է, որ Տուրգենևի ստեղծագործություններում մեր տարբեր բանաստեղծներ կարողացել են գտնել իրենց սրտին մոտ և գեղագիտական ճաշակին հարմար գործեր ու թարգմանել. այսպես՝ Հովհ. Թումանյանը թարգմանել է Տուրգենևից միայն մի արձակ բանաստեղծություն— **Ի՜նչ լավն էին, ինչ թարմ էին վարդերը...** Պրոլետարական բանաստեղծ Հակոբ Հակոբյանը թարգմանել է միայն նրա **Շեմքը,** որը հեղափոխությանը նվիրված աղջկա փառաբանությունն է։

Հայ գրողները ևս այս կամ այն չափով ազդվել, սովորել են Տուրգենևից։ Հովհաննես Թումանյանը, Վահան Տերյանը, Նար-Դոսը, մեծ սիրով ու հարգանքով են խոսել Տուրգենևի և հայ գրականության վրա նրա թողած ազդեցության մասին։ Նար-Դոսը գրել է. «Կասկած չկա, որ ես շատ եմ պարտական ռուս գրականությանը, հատկապես նրա վիպասանությանը, որի լավագույն օրինակները ես ավելի բարձր եմ համարում, քան այդ ժանրի երկերը մյուս ժողովուրդների մոտ։ Ինձ վրա չորս գրող են ամենաուժեղ ազդեցություն թողել՝ Տուրգենևը, որին ես պաշտում եմ, այնուհետև Գոնչարովը, Տոլստոյը, Դոստոևսկին»։

Հովհաննես Թումանյանը Տուրգենևին համարում էր այն ռուս գրողներից մեկը, որի առաջ ինքը խոնարհվում է։ Վահան Տերյանը, որը մայրենի գրականության չափ գիտեր ռուս գրականությունը, առաջարկում էր պարբերաբար թարգմանել ռուս գրողների երկերը։ Տերյանն ընդգծել է, որ ազգերն իրավունք ունեն պարծենալու իրենց լեզվով, և զուր չէ, որ Տուրգենևն այնպիսի սիրով և հիացմունքով փառաբանում էր ռուսաց լեզուն։

Սովետահայ մի շարք գրողներ, որքան շատ ջուր են խմել Տուրգենևի ստեղծագործության կենարար աղբյուրից, այնքան ավելի կատա-

1 *Տե՛ս Արամ Բաբայան— Կեղծանունների բառարան։*

րելագործվել է նրանց արվեստը:

Սովետահայ արձակագիր Լեոնիդ Հուրունցի թե՛ վեպերում, թե՛, հատկապես, արձակ բանաստեղծություններում զգացվում է Տուրգենևի ազդեցությունը:

Հայ իրականության մեջ Նալբանդյանի ժամանակներից (60-ական թվականներից) մինչև մեր օրերը, հարյուր տարվա ընթացքում, թարգմանվել և հրատարակվել են Տուրգենևի վեպերը, պատմվածքները, արձակ բանաստեղծությունները: Ռուս մեծ գրողի հանդեպ տածած սիրո վառ արտահայտությունն է այդ: Գրվել են տասնյակ հոդվածներ մեր ողջ պարբերական մամուլում (թե՛ արևելահայ, թե՛ արևմտահայ) Ի. Ս. Տուրգենևի կյանքի և ստեղծագործության, առանձին երկերի, դրանց հաջողված և չհաջողված թարգմանությունների մասին: Բանավիճել են Տուրգենևի անվան շուրջ, լուսաբանել նրա ստեղծագործությունների ազդեցությունը հայ հասարակական կյանքի, գեղարվեստական գրականության վրա: Այս ամենը հնարավորություն է տալիս ասելու, որ մեր իրականության մեջ ծագել, ձևավորվել և զարգացել է հայ տուրգենևագիտությունը:

Տուրգենևի ստեղծագործությունները գրավում են նրանով, որ դրանք գեղարվեստական խոսքի մի սքանչելի սիմֆոնիա են, գեղարվեստական հանույքի մշտահոս և առատ աղբյուր. ինչպես ռուս, այնպես և շատ այլազգի գրողների ուսուցիչն է եղել նա իր հյութեղ, մեղմանուշ մեղեդու նմանվող լեզվի կատարելությամբ: Տուրգենևը թանկ է մարդկությանը, գյուղացիությանը պաշտպանելու, հանուն ժողովրդի, հայրենիքի ազատության կյանքը զոհաբերող մարդկանց փառաբանելու համար: Նա մոտ էր Բելինսկուն, Գերցենին, Նալբանդյանին, հեղափոխական դեմոկրատական շարժման՝ ցարիզմից հալածված հսկաներին: Ահա այս բոլորով Ի. Ս. Տուրգենևը սիրելի է ողջ առաջավոր մարդկությանը:

Մեծ գրողները մեծ աշխարհակալներ են: Աշխարհը նրանք նվաճում են իրենց վեհ գաղափարներով, արվեստի հմայքով, մոտեցնելով, եղբայրացնելով ժողովուրդներին: Դրանով նրանք հավերժ կենդանի են ժողովուրդների հիշողության մեջ և մասնակից մեր մեծ պայքարին:

**Ի՜նչ լավն էին, ինչ թարմ էին վարդերը...** Հոգեկան աշխարհի, անցած ջահելության հուզաթաթավ նկարագրություն... Գլուխգործոցային այս արձակ բանաստեղծության ոգով գեղեցիկ վարդ համարելով տուրգենևյան վեպերը, պատմվածքներն ու բանաստեղծությունները, այժմ և միշտ կարող ենք ասել՝ ի՜նչ թարմ, ի՜նչ գեղեցիկ են այս մշտաբույր վարդերը...

**Ռ. Գ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների**
**դոկտոր-պրոֆեսոր**



# ԵՐԵՎԵԼԻ ԲՈԼՇԵՎԻԿ ՀՐԱՊԱՐԱԿԱԽՈՍԸ

## (Բ. ԿՆՈՒՆՅԱՆՑԻ ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Բոգդան Կնունյանցը լենինյան հեղափոխական գվարդիայի ականավոր գործիչներից է, կուսակցության բոցաշունչ հրապարակախոսներից մեկը: Նա իր ամբողջ եռանդը, ունակությունները, կրակոտ տեմպերամենտը, անձնական ձգտումները ի սպաս դրեց աշխատավորության սոցիալական ազատագրման գործին: Իր հրապարակախոսական գրավոր ու բանավոր ելույթներում մերկացրեց ռուսական միապետությունում տիրող անհավասարությունը, շահագործումը և կամայականությունները, որոնց վերացման համար աշխատավորությանը կոչ արեց, սոցիալ-դեմոկրատական կուսակցության գլխավորությամբ, պայքարի դուրս գալ ինքնակալության դեմ: Նա համոզված էր, որ տիրող ցարական կարգերն ըստեղծել են ոստիկանական պետություն, որտեղ ո՛չ օրենք կա, ո՛չ անաչառ դատ ու դատաստան, ուր գործում է միայն բռնի ուժը: Այդ վիճակն ավելի սրվեց ռուսական առաջին հեղափոխության նախօրեին, երբ երկիրը կանգնեց տնտեսական ճգնաժամի առջև: Միապետության ֆինանսական քաղաքականությունը,— գրում էր Կնունյանցը,— տանում էր երկիրը դեպի լրիվ սնանկացում: Մշտական անբերրիությունը, ուժից վեր հարկերը, ամեն կարգի միապետական անձանց շորթումները, որ պաշտպանում էր կառավարությունը, տգիտությունը՝ լիովին քայքայեցին գյուղացիությանը (տե՛ս **Б. М. Кнунянц, Избранные произведения, Айпетрат, Ереван, 1958, стр. 68—69**):

Ռուսական միապետության «բաժանիր, որ տիրես» քաղաքականության փորձված միջոցներից էր ազգային խտրականությունը, ժողովուրդների միջև փոխհարաբերությունների սրումը: Ցարական ինքնակալության այդ նենգ դավերին հակառակ, ազգային հարցի գիտակ Բ. Կնունյանցը, ելնելով լենինյան դիրքորոշումից, կոչ էր անում բոլոր ազգերի աշխատավորության համերաշխությունը՝ ընդդեմ տիրող կարգերի: II համագումարում ունեցած իր ելույթներում, Բունդի վարքագծի դեմ կուսակցության ծրագրի ազգային հարցը քննարկելիս, *«Նոր Թալան»*, *«Մեր տակտիկայի և կազմակերպության մի քանի հարցեր»* հոդվածներում, *«Դատի դեմ»*՝ դատարանում արտասանած իր հայտնի ճառում, բրոշյուրներում նա հանդես է գալիս որպես բոցաշունչ ինտերնացիոնալիստ, շովինիզմի գաղափարախոսության ոխերիմ հակառակորդ: Ս. Շահումյանի և մյուս հեղափոխական գործիչների հետ, Բ. Կնունյանցը (ցարական կառավարության 1903 թ. հունիսի 12-ի) հայ եկեղեցու կալվածները բռնագրավելու մասին հրովարտակը նշավակեց, որպես մեծապետական, ազգատյաց քաղաքականության դրսևորում:

Ստ. Շահումյանն իր *«Հայ իրականությունից»* հոդվածում հունիսի 12-ի օրենքը ծայրամասերի նկատմամբ համարեց ցարական կառավարության «ավազակային» քաղաքական արտահայտություն, որը, մի կողմից՝ նպաստեց հեղափոխական շարժման վերելքին, մյուս կողմից՝ նացիոնալիստների ձեռքը զենք դրեց՝ շովինիստական կրքեր բորբոքելու համար (տե՛ս, ԸՆՏԻՐ ԵՐԿԵՐ, Հայպետհրատ, 1948, էջ 22—26):

Նույն դիրքից ելնելով Բ. Կնունյանցը *«Նոր Թալան»* հոդվածում փաստորեն քննադատեց ցարիզմի ազգային քաղաքականությունը: «Կուլտուրական խաղաղ հիմնարկների սիստեմատիկ հետապնդումը,— գրում էր նա,— «ռուսացման» չարաբաստիկ քաղաքականությունը, ավելի քան 300 հայկական դպրոցների փակումը, բարեգործական հիմնարկների ճնշումը, հրատարակչական ընկերությունների փակումը և նման մի շարք այլ միջոցառումներ հետզհետե առաջացրին

սուր հակամարտություն հայ ազգաբնակչության և կառավարության միջև» («Искра», № 49, 1 (14) X, 1903 г.): Հիշյալ օրենքը բռնկվող կայծ էր շիկացած քաղաքական մթնոլորտում: Սկսվեցին մասսայական ելույթներ, որոնց մեջ ներգրավվեցին տարբեր խավերի, նույնիսկ ազգերի ներկայացուցիչներ: Կովկասյան միութենական կոմիտեն, կուսակցական տեղական կազմակերպությունները մեծ հաջողությամբ օգտագործեցին այս իրավիճակը՝ մասսաների մեջ հեղափոխական պրոպագանդա մղելու, իրենց շարքերը կազմակերպորեն ամրապնդելու և շարժումն ընդլայնելու համար: «Искра»-ի խմբագրական հոդվածը, ամփոփելով ղեկավար գործիչների, մասնավորապես Բ. Կնունյանցի, դիրքավորումը և Կովկասի իրավիճակը, գոհունակությամբ նշեց, «որ Կովկասի մեր ընկերները միանգամայն ճիշտ գնահատեցին հայ եկեղեցական կալվածների վրա ցարական արշավանքի քաղաքական նշանակությունը և իրենց օրինակով ցույց տվին, թե սոցիալ-դեմոկրատներն ընդհանրապես ինչպես պետք է վերաբերվեն ամեն տեսակ նման երևույթների նկատմամբ: Կուսակցությունը ձգտում է խոսքի, խղճի, միությունների ազատության: Ցարիզմի դեմ պայքարի ընթացքում, ասված է խմբագրական հոդվածում, մենք պետք է պաշտպանենք նույնիսկ եկեղեցական միությունները: «Հենց եկեղեցական միությունների ազատության համար այդ պայքարի օրինակով մենք կարող ենք առավել հասկանալի կերպով պարզաբանել, թե գործնականում ինչպես պետք է կիրառել մեր ծրագրի այն կետը, որը պահանջում է ճանաչել յուրաքանչյուր ազգի ինքնորոշման իրավունքը» (նույն տեղը): Ազգային հարցի նրբությունը, նրա լուծման բարդությունը խորապես զգում էր Բ. Կնունյանցը, նշելով, որ բուրժուազիան հիշյալ հարցը օգտագործում է, որպես հզոր զենք պրոլետարիատի աճող դասակարգային ինքնագիտակցությունը մթագնելու, դասակարգային պայքարը թուլացնելու համար: Նա ցույց է տալիս, թե ինչպես տիրող դասակարգերի ձեռքին այդ զենքը դառնում է առանձնապես ուժեղ և հատու, «երբ տնտեսական շահերի անտագոնիզմը բարդացվում է քաղաքական գործոնի միջամտությամբ, երբ երկու կամ մի քանի ազգեր գտնվում են հաղթողների և հաղթվողների փոխհարաբերության մեջ: Սահմանափակող օրենքները, բռնի ներխուժումը ժողովրդի կուլտուրական զարգացման խնդիրների մեջ, հավատի, լեզվի հետապնդումները և մի շարք նման բռնություններ վերաբերում են ազգի բոլոր խավերին...»: Եվ ահա, այս պայմաններում, նացիոնալիզմը դառնում է ավելի վտանգավոր: Տիրող դասակարգերն աշխատում են «բանվորական մասսաներին ներշնչել, թե «ազգային» շահերը բարձր են դասակարգային շահերից, որ միևնույն ազգի տարբեր դասակարգերի միջև կապն ու ազգակցությունն ավելի սերտ է, քան տարբեր ազգությունների պրոլետարիատի շահերի համերաշխությունը...» (Кавказец, Некоторые вопросы нашей тактики и организации, «Искра» № 51, 22 октября, 1903 г.):

Անենկուն ինտերնացիոնալիստը խիստ քննադատում է այն կուսակցություններին ու կազմակերպություններին, որոնք սեպ են խրում պրոլետարիատի դասակարգային միասնության մեջ: Մեղադրելով դաշնակցականներին՝ նացիոնալիստական գաղափարախոսության ակտիվ տարածողներին, նա գրում է, որ «նրանք բոլոր միջոցներով ձգտում էին արգելակել սոցիալիստական շարժումը կովկասահայերի մեջ...»:

Բ. Կնունյանցը մինչև վերջ պաշտպանեց մարքս-լենինյան տեսակետը, որ ազգային սահմանափակությունը, նեղամտությունը վնաս է տվյալ ժողովրդի, մանավանդ նրա աշխատավորական խավերի շահերին: Կուսակցության երկրորդ համագումարի բազմաթիվ նիստերում լենինյանների շարքերում նա պայքարում էր Բունդի անջատողական քաղաքականության դեմ, համարելով այն անհեթեթ, անհիմն ու վնասակար: Կնունյանցը հպարտությամբ է նշում, որ Անդրկովկասի խոշոր քաղաքներում «գոյություն ունեն կուսակցական կոմիտեներ, որոնք գործում են մի քանի լեզուներով...»: Այս հանգամանքը, սակայն «շարժման հաջողությունը Կովկասում չի թուլացրել»: Նա գտնում է, որ կուսակցության յուրաքանչյուր անդամ պետք է ներկայացնի «համայն Ռուսաստանի ամբողջ պրոլետարիատին»: Ցարական կառավարությունը, նրա տեղական օրգանները բանվորական շարժման մեջ աշխատում էին գտնել տեղայնության, փոքր ազգերի դժգոհության փաստեր ռուսների նկատմամբ: Բ. Կնունյանցը ամենայն կրքոտությամբ ապացուցում էր հակառակը: *«Դատ դատի դեմ»* ճառում նա նշում է, որ, մեղքերը թվարկելիս, դատախազը կանգ առավ նրա այլազգի լինելու հանգամանքի վրա: Ժխտելով դատարանի անհիմն մեղադրանքները, բոլշևիկ հրապարակախոսը հայտարարեց. «...մենք մեր ձգտումներում չենք ելնում այս կամ այն ազգային մոտիվներից, այլ պրոլետարիատի ճիշտ հասկացած դասակարգային շահերից, որոնք, մեր համոզմամբ, միասնական են ամբողջ աշխարհի պրոլետարների համար» (Ընտիր երկեր, էջ 83):

Միևնույն ժամանակ նա գտնում էր, որ կուսակցության ծրագիրը պետք է արտացոլի Ռուսաստանի ժողովուրդների կենցաղային պայմանների և ազգաբնակչության կազմի բազմազանությունը, առաջ քաշի դրանց համապատասխանող հիմնարկների հիմնադրումը, պաշտպանի ազգային ինքնավարության լենինյան գաղափարը:



Կնունյանցին շատ է հետաքրքրել հարազատ ժողովրդի բախտը: Այդ են վկայում Շուշիից գրած նամակները, որոնք տպագրվել են «Մշակի» էջերում: Հոդվածագիրը քննադատում է թերթը՝ կյանքից ետ մնալու, հասարակական նոր տեղաշարժերը չարտացոլելու համար:

Բ. Կնունյանցը հատուկ անդրադառնում է արևմտահայության խնդիրներին, օսմանյան կայսրության վիճակին ու քաղաքականությանը: Վերլուծելով իրադրությունը Արևմտյան Հայաստանում, նա ցույց է տալիս, որ այստեղ մոտ երեք միլիոն հայեր ենթարկվում են քաղաքական հետապնդման ու հալածանքների: Հաճախակի կրկնվող մասսայական ջարդերը և կոտորածները չէին կարող չգրավել ռուսահպատակ հայերի, հատկապես մտավորականության արմատական մասի ուշադրությունը: Դեռևս 20—25 տարի սրանից առաջ ստեղծվում են կազմակերպություններ, որոնց նպատակն էր *ազատագրել թուրքահայերին քաղաքական ստրկությունից:* (Ընդգծումը մերն է—Հ. Հ.): Հայկական լեգալ լավագույն ողջ գրականությունը գովերգում էր թուրքահայերի քաղաքական ազատագրության գաղափարը (տե՛ս II համագումարի արձանագրությունները, էջ 530):

Այնուհետև նա նշում է, որ ազգայնական կուսակցությունների անդամների մի մասն այս խնդրին հակադրում էր ցարիզմի դեմ ընդլայնվող շարժումը, մյուս մասը՝ ձգտում էր համատեղել երկու բռնապետությունների դեմ աճող պայքարը: Նման անորոշակիությունը և հեղափոխական շարժման աճը Ռուսաստանում, ամրապնդեցին մասսաների մեջ սոցիալ-դեմոկրատների դիրքերը և թուլացրին ազգայնականների ազդեցությունը, որը, սակայն, մնաց տիրապետող Արևմտյան Հայաստանում:

*«Թուրքիայի իրադարձությունների առթիվ»* հատուկ հոդվածում, Կնունյանցը, շատերի հետ, ողջունում է երիտթուրքերի պայքարը Աբդուլ Համիդի արյունոտ ռեժիմի դեմ: «Գերեզմանային լռության երկրում,— գրում է նա 1909 թ. մայիսին,— որի վրա այնքան դարեր բարձրանում էր միայն սուլթանական նշանավոր ցիցը՝ ազատ մտածողների գլուխները վրան, այժմ ամեն օր տեղի են ունենում դեպքեր, որոնք ժողովրդական մասսաներին դուրս կհանեն անտարբերությունից և թմրությունից» («Бакинские вести», № 1, 4 мая, 1909 г.): Այդպիսին էին առաջին շրջանի տպավորությունները: Բ. Կնունյանցը վերլուծելով երիտթուրքերի շարժման հետագա ընթացքը, տեսնում է նրա մեջ սոցիալական խավերի բախումը, արձանագրում, որ «հին կարգերը կործանվում են»: Սակայն նա ընդգծում է, որ շարժումը Թուրքիայում ընթանում է «ավելի պարզ իրադրության մեջ», որ սոցիալական հակասությունները այնքան խոր չեն և «Թուրքիայի հասարակական կյանքում ամենալուրջ հակասությունները մինչև այժմ առաջ են եկել ազգային բախումներից»: Հեղինակն այդ բացատրում է կապիտալիստական հարաբերությունների թույլ զարգացմամբ, նրանով, որ «կապիտալիզմը դեռ նոր է անցկացնում իր առաջին շառավիղները», և երկրում իշխում է բնատնտեսությունը: Ահա թե ինչու շարժման ղեկավարությունն անցնում է թուրք աստիճանավորության ու սպայության ձեռքը, որը. «կանգնած է ազգի միակ կազմակերպված ուժի՝ զորքի գլուխը»: Այս հանգամանքը, հենց սկզբից, հեղափոխական շատ գործիչների մոտ կասկած է հարուցել շարժման հետևողական զարգացման վերաբերյալ: Կնունյանցը ևս նշում է, որ երիտասարդ թուրքերը «հենվում են անհուսալի ուժի՝ զորքի վրա, որը կարող է հենց վաղը ոչինչ չթողնել նրանց պառլամենտարիզմի խաղաթղթային շենքից» (նույն տեղը): Դժբախտաբար այս կանխատեսումն իրագործվեց, որով չափազանց սրվեց ազգային հարցը: Ռեակցիան հաղթանակեց: Նա ուժեղացրեց ճնշումը փոքր ազգերի վրա և Թուրքիայում հասցրեց զենքի քաղաքականության: Ռուսաստանում ևս հետադիմական ուժերը հարձակման անցան, աշխատելով խեղդել ժողովրդական բոլոր շարժումները, օգտագործելով բռնի ուժը և ազգամիջյան հակասությունների սրման փորձված միջոցը:

Քննադատելով ցարական կառավարության համախոհ օկտյաբրիստների, կադետների կուսակցությունների վարքագիծը՝ դեմոկրատական ազատությունների, մասնավորապես, ազգային հարցի վերաբերյալ, հեղինակը նշում է, որ նրանք հանդուրժում են ազատությունները միայն ուրիշ երկրներում, իսկ երբ խոսքը վերաբերում է ռուսական կայսրության հպատակության տակ գտնվող երկրներին, նրանք անում են ամեն ինչ, որպեսզի «գիտականորեն հիմնավորվեն և իրավաբանորեն ձևակերպվեն» իրենց իրավունքները («Бакинская почта», № 9, 22 марта, 1910):

Բոլշևիկյան հրապարակախոսության փայլուն նմուշներից է Բ. Կնունյանցի հայտնի ճառը, արտասանած ՌՍԴԲԿ Մոսկվայի կոմիտեի ղեկավար գործիչների՝ Մոսկվայի դատական ատյանի փակ նիստերից մեկում, 1905 թ. մարտի 31-ին: Ինչպես հայտնի է, Լենինի ցուցումով ճառը տպագրվում է ապրիլի 17-ին, որպես «Вперед» բոլշևիկյան թերթի № 16-ի հավելված: Այնուհետև Բաքվի, Մոսկվայի կոմիտեի հրատարակությամբ *«Դատ դատի դեմ»* խորագրով ռուսերեն և այլ լեզուներով տարբեր վայրերում, բրոշյուրներ են լույս տեսնում:

Բ. Կնունյանցի ճառը իրապես մեղադրական

փաստաթուղթ է, որտեղ անողոք քննադատվում են ցարիզմը, երկրում տիրող օրենքն ու կարգը: Ճառի ամենաբնորոշ կողմը այն խոր հավատն է, որ միապետությունը կանգնած է անդունդի եզրին, որ բարձրացող հեղափոխության ալիքները «վերջնականապես կսրբեն... բարբարոսական անցյալի այդ մնացուկը» (Ընտիր երկեր, էջ 79):

Դիմելով դատավորներին նա իր նշանավոր ճառը եզրափակում է հետևյալ խոսքերով. «Դուք ուզում եք դատել մի հեղափոխականի այնպիսի ժամանակ, երբ դրսում հեղափոխություն է, դուք ուզում եք պաշտպանել այն իրավակարգը, որին պատմությունը մահվան է դատապարտել:

Դատեցեք, պարոնայք դատավորներ, իսկ մեզ ձեզ հետ միասին կդատի հեղափոխությունը» (տե՛ս նույն տեղը, էջ 84):

1905 թ. հեղափոխության վերելքի շրջանում կուսակցական մամուլի էջերում լույս են տեսնում Բ. Մ. Կնունյանցի (Բոգդան Ռադինի) հրաշալի, բոցաշունչ հոդվածները: Բ. Կնունյանցի աշխատություններում հատուկ տեղ են գտել բանվոր դասակարգի, նրա կազմակերպությունների, հատկապես բոլշևիկյան կուսակցության տեղն ու դերը մարդկային պատմության, մասնավորապես ռուսական կայսրության իրականության մեջ:

Նրա ելույթները, ճառերը, հոդվածները, թղթակցությունները, նամակները տոգորված են գալիք սոցիալիստական հեղափոխության, պրոլետարիատի մերձավոր ու հեռավոր խնդիրների խոր գիտակցությամբ: Իր ամբողջ կարճատև ու թունդ կյանքի ընթացքում, հեղափոխության մակընթացության, թե տեղատվության պայմաններում, նա կուսակցության աննկուն զինվորն էր, հրապարակախոս մարտիկը:

Կնունյանցը հավատարիմ, հետևողական լենինյան էր, այդ են վկայում նրա ելույթները Բունդի դեմ հանուն տերիտորիալ, բնույթով ինտերնացիոնալ տեղական կուսակցական կազմակերպությունների, կենտրոնական օրգանների դերի, կապերի ու պարտականությունների մասին: ՌՍԴԲԿ II համագումարում, ինչպես ասված է կուսակցության պատմության ձեռնարկում, «բազմազան օպորտունիստական տարրերից ստեղծվող միավորման դեմ... կուսակցության շահերը եռանդուն կերպով պաշտպանում էին խոշորագույն կոմիտեների ներկայացուցիչները. Պետերբուրգինը՝ Ս. Վ. Շոտմանը, Մոսկվայինը՝ Ն. Է. Բաումանը, Բաքվինը՝ Բ. Մ. Կնունյանցը...» (**История КПСС, М., 1963, стр. 65**):

Բոլոր նրանց, ովքեր ուզում էին իմանալ կուսակցության պառակտման պատճառները, Լենինը խորհուրդ էր տալիս *«Կարդալ և վերստին կարդալ* ընկ. Ռուսովի ճառը» (Երկեր, հ. 7, էջ 399—400): Սակայն, մեր կարծիքով անհրաժեշտ է անդրադառնալ՝ կանոնադրության առաջին կետի քվեարկման հարցին, որտեղ Կնունյանցը քվեարկեց Մարտովի ձևակերպման օգտին: Ելնելով հիշյալ փաստից, որոշ հեղինակներ նրան կազմակերպական հարցերում տատանվող են համարում: Այս սխալ որակումը հետևանք է Լենինի հայտնի տեսակետի անտեսմանը. ամենից հայտնի էր միայն *«Համառոտ դասընթացի»* գնահատականը, այն, որ կազմակերպական հարցերում կուսակցության II համագումարը չի գտնվել իր բարձրության վրա:

Մինչդեռ Լենինը բազմիցս ընդգծել է, որ կանոնադրության առաջին կետը չէր կարող վճռական ազդեցություն ունենալ կազմակերպության բախտի վրա, եթե նրա անդամները ճիշտ գործեին և մենշևիկները չքանդեին պառակտման ուղին: Ի մի բերելով քվեարկության արդյունքները, Լենինը գրել է, որ «Այստեղ ևս կան առանձին ձայներ, որոնք խախտում են պատկերի լիակատար ներդաշնակությունը,— մի այնպիսի մեծ ժողովում, ինչպես մեր համագումարն է, անխուսափելիորեն մի մասը կազմում են «վայրենիները», որոնք պատահաբար, մերթ այս կողմն են ընկնում, մերթ մյուս կողմը, մանավանդ մի այնպիսի հարցում, ինչպես առաջին կետը, որտեղ տարամտության իսկական բնույթը դեռևս ուրվագծվում էր միայն և շատերն ուղղակի *«ժամանակ չէին ունենում հասկանալու»* (հարցը գրականության մեջ նախապես քննված չլինելու պատճառով) (հ. 7, էջ 349):

Բ. Կնունյանցի բոլոր ելույթները համագումարում՝ քվեարկությունից առաջ, թե հետո նամակը Բաքվի կոմիտեին II համագումարի արդյունքների մասին՝ գրված 1903 թ. աշնանը (տե՛ս Ընտիր երկեր, էջ 57—66), կազմակերպության մասին հոդվածը բոլշևիկյան **«Новая жизнь»** թերթում (նույն տեղը, էջ 93—96), թռուցիկները՝ «Կազմակերպվեցեք», «Բանվորին պե՞տք է արդյոք քաղաքական կռիվ», մի շարք ելույթներ ու նամակներ աներկբայորեն ապացուցում են, որ նա ո՛չ միայն ճիշտ է հասկացել բանվորական կուսակցության կազմակերպական հիմունքները, այլև ակտիվ պայքարել նրանց կենսագործման, տեղական կազմակերպությունների ստեղծման և ամրապնդման համար:

Ավելորդ չի լինի հիշել, որ նա մեկն էր տասնինը այն սոցիալ-դեմոկրատներից (Ե. Ստասովա, Ֆ. Լենգնիկ, Ն. Բաուման և ուրիշներ), որոնք Մոսկվայի կոմիտեի անունից ՌՍԴԲԿ անդամներին հղեցին հայտնի կոչը, այն ուղարկելով տեղական կազմակերպություններին, պահանջելով նրանցից անհապաղ միանալ Լենինի առաջարկին՝ հրավիրելու կուսակցական III համագումար, քանի որ այլևս չէր կարելի հանդուրժել մենշևիկների պառակտողական գործունեությունը (տե՛ս **Ленинский сборник, т. XV, стр. 158—166, 215, 223—224:**

Որպես ՌՍԴԲԿ Կենտկոմի գործակալ, Կովկասյան միութենական, Մոսկվայի, Պետերբուրգի կոմիտեների անդամ, Բ. Կնունյանցը ղեկավարել է տեղական կազմակերպությունների աշխատանքն ու բանվորական շարժումները: 1905 թ. աշնանը նա, որպես բոլշևիկների ներկայացուցիչ, ընտրվում է Պետերբուրգի բանվորական սովետի և նրա գործկոմի անդամ: Վիթխարի հեղափոխական շարժման կենտրոններից մեկում, նա, բոլոր նրբություններով, ընկալում և վերարտադրում էր բանվորական հեղափոխության խնդիրները և օգնում, որ դրանք հասնեն մասսաներին:

Բ. Կնունյանցը, բանվոր դասակարգի, նրա ավանգարդային դերի ջատագովն է: Համարելով նրան Ռուսաստանի բոլոր խավերի մեջ ամենաառաջավորը, հեղափոխական վերելքի շրջանում ամենաուժեղը, նա իր հոդվածներում, թռուցիկներում, ճառերում ցույց է տալիս բանվորների դերը դասակարգային բախումների ժամանակ:

Բ. Կնունյանցը նկատում է, որ պրոլետարիատը կարող է կանգնած մնալ իր բարձրության վրա, եթե կազմակերպված լինի, ունենա իր դասակարգային կազմակերպությունները, որոնք պետք է ղեկավարի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը: Նա կանգ է առնում նաև բանվոր դասակարգի պայքարի ձևերի վրա, նախընտրելով ընդհանուր գործադուլը և զինված պայքարը, խոսում նրա դաշնակիցների և վերջիններիս հետ քաղաքական աշխատանք տանելու մասին:

Բ. Կնունյանցը Վ. Ի. Լենինի այն զինակիցներից էր, որոնք հեղափոխության պարտությունից հետո չհեռացան պայքարի առաջագծից և նոր պայմաններում աշխատանք ծավալեցին, օգտագործելով բոլոր հնարավորությունները: Նրա ընտիր երկերում զետեղված են «Ինչպիսի՞ ընտրական իրավունք է պետք բանվոր դասակարգին», «Պետական դումա՞, թե՞ սահմանադիր ժողով» աշխատությունները և մասսայական ընթերցողին տակավին անծանոթ գիտական արժեք ներկայացնող *«Քաղաքական կուսակցությունները և պետական կառուցվածքի ձևերը»*, *«Պետական կառուցվածքը Ֆրանսիայում»*, *«Գիտակից բանվորներն ընտրական կամպանիայում»* ուսումնասիրությունները: Այդպես վերլուծման են ենթարկվում՝ բացարձակ միապետություն, կոնստիտուցիոն միապետություն, հանրապետություն հասկացությունները, կոնկրետ օրինակներով ցույց տրվում այն քաղաքական պայմանները, որոնք ստեղծվում են՝ կապված պետական այս կամ այն կարգի հետ: Հեղինակը պրոպագանդում է բուրժուա-դեմոկրատական կարգերի առավելությունները միապետության հանդեպ, որոնք հնարավորություն են տալիս բանվորներին իրենց պայքարի նպատակների համար օգտագործել լեգալ պայմանները. դրանք միայն կազմակերպված պայքարի արդյունք կարող են լինել: Նա կոչ է անում բանվորներին և ժողովրդական մասսաներին ամեն ջանք գործ դնել ապահովելու իրենց ազդեցությունը պետական ապարատի վրա: Դրան հասնելու միջոցներից մեկը, ասում է նա, պետք է լինի պայքարը հանուն *«Ընդհանուր հավասար ընտրական իրավունքի, ուղղակի և գաղտնի քվեարկության հիման վրա:* Իսկ որպեսզի ժողովուրդը կարողանա օգտվել իր այդ իրավունքից, անպայման անհրաժեշտ է *խոսքի և մամուլի լիակատար ազատություն, ժողովների և միությունների անսահմանափակ ազատություն, քաղաքացիների անձի և բնակարանի անձեռնմխելիություն»* (Ընտիր երկեր, էջ 167): Այս բոլորը հեղինակը դիտում է բարիք, որ կարող է տալ բուրժուա-դեմոկրատական հասարակարգը կամ հանրապետությունը և լրջորեն բարելավել պրոլետարիատի դասակարգային պայքարի պայմանները և հնարավորություն ընձեռի վերջնական նպատակին հասնելու: «Այսպիսով՝ դեմոկրատական հանրապետության միջոցով դեպի սոցիալիզմ,— ամփոփում է իր միտքը Բ. Կնունյանցը՝ *«Քաղաքական կուսակցությունները և պետական կառուցվածքի ձևերը»* բրոշյուրում:

Կնունյանցն ակտիվ մասնակցել է միջազգային բանվորական շարժմանը: *«Նոր ինտերնացիոնալի 7-րդ կոնգրեսը»* հոդվածը նրա նոթերն են՝ նվիրված կոմունիստների համաժողովին, որտեղ պատվիրակության կազմում նա ներկայացնում էր բոլշևիկների կուսակցությունը: Հոդվածում Կնունյանցը ցույց է տալիս «միջազգային բանվորական պառլամենտի», ինտերնացիոնալի անհրաժեշտությունը ժամանակակից միջազգային կյանքի, իմպերիալիզմի ստեղծած փոխհարաբերությունների և բանվորական շարժման վերելքի պայմաններում: Հոդվածում կան կոնկրետ տվյալներ, թե որ երկրներից քանի պատգամավոր է ուղարկված և Ռուսաստանի որ արհմիությունների ներկայացուցիչներն են եկել կոնգրես: Բոլշևիկյան դիրքերից տրվում են մեկնաբանություններ գաղութատիրության, միլիտարիզմի, բանվորական շարժման ուղղությունների վերաբերյալ:

Բազմաթիվ են այն պրոբլեմները, որոնք լուսաբանվում են Բ. Մ. Կնունյանցի աշխատություններում, հոդվածներում, նամակներում և ճառերում: Նրանք մարքսիստական-լենինյան հրապարակախոսության փայլուն նմուշներ են:

Հ. Գ. ԻՆՃԻԿՅԱՆ



ՀԼԿԵՄ գործունեությունն արտացոլված է գրքի չորրորդ գլխում (հեղ.՝ Հ. Ա. Ավետիսյան, Շ. Ա. Պողոսյան)։ Այդ շրջանում սկսվեց երկրի սոցիալիստական ինդուստրացումը։ Կոմերիտմիությունն աչքի ընկավ առանձնապես էլեկտրիֆիկացման, պղնձարդյունաբերության, ջրանցքների կառուցման բնագավառներում։ Կոմերիտականները, «թեթև հեծելազորային» արշավները զուգակցելով բանգյուղտեսչության օրգանների հետ, գործնական պայքար մղեցին հնի մնացուկների, հատկապես բյուրոկրատիզմի դեմ, դրանով իսկ նպաստելով պետական ու տնտեսական ապարատի աշխատանքների բարելավմանը։ Կոմունիստական կուսակցության անմիջական ղեկավարությամբ կոմերիտմիությունը ակտիվ մասնակցեց սոցիալիստական մրցության կազմակերպմանն ու տարածմանը, գյուղի սոցիալիստական վերակառուցմանն ու կուլտուրական հեղափոխության իրագործմանը։ Միաժամանակ կոմերիտմիությունը կազմակերպորեն ամրապնդվում էր, գաղափարապես կոփվում, աճում։ Հայաստանի լենինյան կոմերիտմիությունն արժանի հակահարված տվեց «ձախ» տրոցկիստական և «աջ» թեքումներին։

Գրքի հինգերորդ գլուխը (հեղ.՝ Հ. Մ. Պողոսյան) նվիրված է Հայաստանի կոմերիտմիության պատմությանը՝ սոցիալիզմի հաղթանակի և երկրի պաշտպանունակության ամրապնդման տարիներին (1933—1940)։ Այստեղ վերհանված է կոմերիտմիության և ողջ երիտասարդության մասնակցությունը Հայաստանի խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների և ջրանցքների կառուցմանը, II և III հնգամյա պլանների իրագործմանը, ստախանովյան և երիտասարդ միչուրինականների շարժմանը, տեխնիկային տիրապետելու և գյուղատնտեսության վերելքի համար մղվող պայքարին, երկրի պաշտպանունակության ամրապնդմանը։

Սկսվեց Հայրենական մեծ պատերազմը։ Այդ ժամանակաշրջանին (1941—1945) է նվիրված գրքի վեցերորդ գլուխը (հեղ.՝ Կ. Ժ. Միրզախանյան)։ Պատերազմի ընթացքում ՀԼԿԵՄ շարքերից սովետական բանակ են զորակոչվել 70 հազարից ավելի կոմերիտականներ. միայն Հայաստանից 20 հազար կոմերիտականներ կամավոր մեկնել են ռազմաճակատ։ Սխրագործության վառ օրինակներով հարուստ է կոմերիտմիության՝ պատերազմի տարիների պատմությունը։ Սովետական Միության կրկնակի հերոս Նելսոն Ստեփանյանը, հերոսներ՝ Հունան Ավետիսյանը, Սերգեյ Բուռնազյանը, Գրիգոր Փալանջյանը և շատ ուրիշներ անթառամ փառքով պսակեցին կոմերիտմիության անունը։

Այս ժամանակաշրջանի պատմությունը դրսևորում է կոմերիտականների ու ողջ երիտասարդության աշխատանքային անձնվեր հերոսությունը, թիկունքում կրած նրա ծանր զրկանքները պատերազմի դժվարին պայմաններում։ Կոմերիտական—երիտասարդական աշխատանքային բրիգադների անդամները արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ փոխարինում էին ռազմաճակատ մեկնած իրենց եղբայրներին, ծավալում սոցիալիստական մրցություն. այստեղ արտացոլված է այն ողջ իրադարձությունը, երբ սովետական ժողովուրդն ամեն ինչ անում էր ռազմաճակատի համար, ամեն ինչ՝ հանուն հաղթանակի։

Յոթերորդ գլուխն (հեղ.՝ Գ. Մ. Գեղամյան) ընդգրկում է Հայաստանի կոմերիտմիության 1945—1950 թթ. պատմությունը. ժողովուրդն զբաղված էր տնտեսության վերականգնմամբ ու զարգացմամբ։ Կրկին սկսվում էր խաղաղ աշխատանքը. պետք էր հաղթահարել նորանոր դժվարություններ. կոմերիտականները դարձյալ առաջավոր դիրքերում են թե՛ արդյունաբերության, թե՛ գյուղատնտեսության բնագավառում, Սևանի, Գյումուշի էլեկտրակայանների շինարարությունում։

Ժողովրդական տնտեսության հետագա վերելքի ժամանակաշրջանում (1951—1958) Հայաստանի կոմերիտական կազմակերպությունները լայն գործունեություն ծավալեցին երիտասարդության կոմունիստական դաստիարակության, նրա հանրակրթական մակարդակի բարձրացման, արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացման ասպարեզներում։ Այդ մասին է գրված ութերորդ գլխում (հեղ.՝ Մ. Ս. Թութխալյան)։

Հայաստանի կոմերիտմիության դերը կոմունիստական շինարարության համաժողովրդական պայքարում 1959—1965 թթ. տրված է գրքի իններորդ գլխում (հեղ.՝ Հ. Ռ. Սիմոնյան, Լ. Մ. Կրոյան)։ Ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում ծավալվել են կոմունիստական աշխատանքի շարժումը, կոմերիտականների պայքարը կոմունիստական աշխատանքի բրիգադայի պատվավոր կոչման արժանանալու համար։

Գրքում կան նաև ՀԼԿԵՄ մամուլի պատմությանը, Հայաստանի մանկական՝ պիոներական կազմակերպության ծննդին ու գործունեությանը, առանձնապես նրա վաղ շրջանին նվիրված էջեր։ Ընթերցողները կվերհիշեն, կծանոթանան կոմերիտական շարժման շատ անվանի, շարքային անդամների և գործիչների, կտեսնեն լուսանկարներն այն մարդկանց, ովքեր իրենց կյանքը նվիրաբերեցին սովետական իշխանության նվաճման և սոցիալիզմի հաղթանակի գործին։

Գիրքն ավարտվում է Մեծ պատմությանն ընդառաջ գլխով և եզրափակումով (հեղ.՝ Հ. Կարապետյան), ուր նկարագրված են Հայաստանի կոմերիտմիության գործունեությունն ու անելիքները 1966—1970 թթ. հնգամյակի ընթացքում։ Հայաստանի կոմերիտականներն ամեն ինչ անում են կոմունիզմի կառուցման համար։ Մեծ են Սովետական Հայաստանի զարգացման հեռանկարները, բարդ են ՀԼԿԵՄ խնդիրները, որոնք յուրաքանչյուր կոմերիտականից պահանջում են մտքի, ստեղծագործ ուժերի և ընդունակությունների լարում։ Եզրափակիչ մասում արտացոլված են Հայաստանի լենինյան կոմերիտմիության փառապանծ տրադիցիաները։

Հեղափոխական գաղտնի խմբակներից Հայաստանի կոմերիտմիությունն այժմ հասել է 220 հազարանոց բանակի, որը կատարել է կոմունիստական կուսակցության հավատարիմ օգնականի և մարտական ռեզերվի իր դերը. այժմ նույնպես, համախմբված նրա շուրջը, հաջողությամբ կենսագործում է Լենինի պատգամները. նա իր քրտինքով է վաստակել Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանը՝ վեցերորդ շքանշանն իր դրոշի վրա։

Խոշոր է Հայաստանի կոմերիտմիության պատմություն գրքի գաղափարական, դաստիարակչական նշանակությունը։

Գիրքը վերահրատարակելիս, մեր կարծիքով, այն պետք է որոշ չափով վերամշակել և վերացնել եղած թերությունները. այսպես՝ 1920-ական թթ. Հայաստանի կոմերիտմիությունը երիտասարդության շրջանում եռանդուն ջանքեր է գործադրել դաշնակցության, մասնավորապես, դաշնակցական երիտասարդական կազմակերպության՝ «դաշմոլների», բուրժուա-նացիոնալիստական ազդեցությունը թոթափելու ուղղությամբ։ Սակայն գրքում ՀԼԿԵՄ պատմության այդ կարևոր էջերն անտեսված են։ Հայտնի է, որ Անդրկովկասյան Ֆեդերացիայի շրջանում (1922—1937) ՀԼԿԵՄ-ը մտել է Անդրկովկասյան միացյալ կոմերիտական կազմակերպության մեջ և սերտորեն կապված է եղել Վրաստանի ու Ադրբեջանի կոմերիտմիությունների հետ։ Սակայն այդ կապերը և անդրկովկասյան ընդհանուր ղեկավարության հարցերը ինչպես հարկն է լուսաբանված չեն գրքում։

Պատշաճ չափով չի լուսաբանված նաև կուլտուրական հեղափոխության հարցը. այստեղ Հայաստանի կոմերիտմիությունն ունի իր զգալի լուման, մինչդեռ այդ արտացոլված է մինչև 1932 թ., անտեսված է նաև այն հանգամանքը, որ Սովետական Հայաստանը II հնգամյակում դարձավ համատարած գրագիտության հանրապետություն։ ՀԼԿԵՄ 1945—1968 թթ. պատմությունը որոշ չափով կրում է հաշվետվության բնույթ։ 171—173 էջերում խոսվում է Հունաստանից եկած կոմունիստ պատվիրակ Պետրոս Կոկինոսի մասին, բայց խիստ թերի, այնպես որ չի հասկացվում թե ով է նա։ Մինչդեռ խոսքը Հունաստանից քաղաքական էմիգրանտ, ԿԻՄ-ի աշխատակից Պետրոս Կոկինոսի (Կոկոյանի) մասին է։ Կան և այլ մանր սխալներ ու թերություններ, բայց դրանք չեն նսեմացնում գրքի արժանիքները։ Այն՝ Հայաստանի լենինյան կոմերիտմիության պատմության առաջին ամբողջական ուսումնասիրությունն է։

Ս. Վ. ԽԱՐՄԱՆԴԱՐՅԱՆ



## ԹՎԵՐ ու փաստեր

ՍՍՀՄ 1969 թվականի պետական բյուջեի եկամուտները նախատեսված է 134.097.776 հազար ռուբլի՝ ծախսեր՝ 133.898,408 հազար ռուբլի:

●

1969 թվականին ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների ծավալը նախատեսված է 65,2 միլիարդ ռուբլի, որն անցյալ տարվա համեմատությամբ մոտ 4 միլիարդ ռուբլով ավելի է:

●

Հայկական ՍՍՀ 1969 թվականի պետական բյուջեի եկամուտները նախատեսված է՝ 832.602 հազար ռուբլի, իսկ ծախսեր՝ 832.602 հազար ռուբլի: Դրանից սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար՝ 393.919 հազար ռուբլի:

●

Նախատեսված է 1969 թվականին ՍՍՀՄ-ում իրացնել 317.7 միլիոն ռուբլի արդյունաբերական արտադրանք: Այս տարի, 1968 թվականի համեմատությամբ, արդյունաբերության արտադրանքը կաճի 7.3 տոկոսով, իսկ 1965 թվականի համեմատությամբ՝ 40 տոկոսով:

●

Այս տարի Սովետական Միությունում արդյունահանվելու է 326.5 միլիոն տոննա նավթ, այսինքն այնքան, որքան արդյունահանվել է 1960—1961 թվականները միասին վերցրած:

●

1969 թ. ՍՍՀՄ-ում մանկամսուրներում և մանկապարտեզներում ընդգրկված երեխաների թիվը կաճի կես միլիոնով, հիվանդանոցային մահճակալներինը՝ 87 հազարով, բժիշկներինը՝ 28 հազարով:

●

Այս տարի Սովետական Միությունում ձուլվելու է 112 միլիոն տոննա պողպատ, 1967 թվականի 100 միլիոն տոննայի դիմաց:

●

Երկրի գյուղատնտեսությունը 1968 թվականին արդյունաբերությունից կստանա հանքային պարարտանյութ 38,5 միլիոն տոննա, տրակտոր՝ 306 հազար հատ, բեռնատար ավտոմեքենա՝ 155 հազար հատ, հացահատիկի կոմբայն՝ ավելի քան 100 հազար հատ:

Գյուղատնտեսության արտադրանքը կհասնի մինչև 85 միլիարդ ռուբլու, այսինքն 6,1 տոկոսով աճ:


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԳՈՅԱՆ Ս. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԴԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции. — Ереван-33 Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

ՎՖ 03316 Պատվեր 806 Թղթի չափսը $70 \times 108^1/_{16}$: Տիրաժ 11.300: Գինը 25 կոպ:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 31/I-1969 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյանի փող. № 28:


## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի 1844—1883 թթ. նամակագրության կոնսպեկտ, *Մ., Քաղհրատ, 1968, 519 էջ:*

ԿԱՐՊԻՆՍԿԻ Վ. Ա.— Վլադիմիր Իլյիչ Լենին— Ղեկավարը, ընկերը, մարդը, *Մ., Քաղհրատ, 1968, 86 էջ:*

Մոլորակի լենինյան գվարդիան: *Պատմվածքներ Վ. Ի. Լենինի զինակիցների ու ժամանակակիցների մասին: Երևան, Հայաստան հրատ., 1968, 704 էջ:*

ՊՈԴԿՈՒՅԶԻՆ Ա. Մ.— *ՍՍՀՄ տնտեսության զարգացման պատմություն, Մ., 1968, 344 էջ:*

ՍՄԿԿ պատմության ուրվագծեր: *Ուսումնական ձեռնարկ մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցների համար: Երևան, «Հայաստան» հրատ., 1968, 607 էջ:*

ՎՈԼԿՈՎ Գ. Ն.— Գիտության սոցիոլոգիան: *Գիտատեխնիկական գործունեության սոցիոլոգիական ուրվագծեր: Մ., Քաղհրատ, 1968, 328 էջ:*

ՊԼԱՏՈՆ— Երկեր: *Երեք հատորով. հատոր առաջին, Մ., «Мысль» հրատ., 1968, 623 էջ:*

ՍՍՀՄ լենինյան քաղաքականությունը Չինաստանի նկատմամբ, *Մ., 1968, 257 էջ:*

Մարքսիզմ-լենինիզմը պատերազմի և բանակի մասին, *Մ., Զինհրատ, 1968, 391 էջ:*

ԳՐԵՆԻԵ ՖԵՐՆԱՆ— Սովետական Միությունը դարաշրջանի ռիթմում, *Մ., «Прогресс» հրատ., 1968, 183 էջ:*

Քաղաքական գիտելիքների հիմունքներ: *Ուսումնական ձեռնարկ կուսակցական ուսուցման սիստեմի տարրական քաղաքական դպրոցների համար: Երևան, «Հայաստան» հրատ., 1968, 462 էջ:*

ՊԵՏՐՈՊԱՎԼՈՎՍԿԱՅԱ Լ. Ի.— Լուսիկ Լիսինովա, *Մ., Քաղհրատ, 1968, 143 էջ:*

ՊԵՏՐՈՍՅԱՆ Տ. Վ.— Շախմատը և փիլիսոփայությունը, *Երևան, «Միտք» հրատ., 1968, 62 էջ:*

Ծնողը և երեխան *(գիրք ծնողների համար): Երևան, «Լույս» հրատ., 1968, 266 էջ:*

ԽԱՉԱՏՐՅԱՆ Գ. Մ.— Հայաստանի սոցիալիստական ինտելիգենցիայի կազմավորումն ու զարգացումը, *Երևան, «Հայաստան» հրատ., 1968, 253 էջ:*

Երևանը թվերով *(վիճակագրական ժողովածու): Նվիրված է Երևանի հիմնադրման 2750-ամյակին: Երևան, ԿՎՎ հրատ., 1968, 223 էջ:*

ԼԵՈՆՏԵՎ Ա. Ն.— Հոգեկան զարգացման պրոբլեմները, *Երևան, «Լույս» հրատ., 1968, 571 էջ:*

ՓԱՇԻՆՅԱՆ Ռ. Խ.— Հողի արդյունավետ օգտագործումը, *Երևան, «Հայաստան» հրատ., 1968, 207 էջ:*

ՄԱԹԵՎՈՍՈՎ Է. Դ.— Ազգային եկամուտը և նրա օգտագործումը Հայկական ՍՍՀ-ում: *Երևան, ԳԱ հրատ., 1968, 193 էջ (ռուսերեն):*

ՄԱԹԵՎՈՍՈՎ ՅՈՒ. Դ.— Հաստոցաշինական արդյունաբերության զարգացման տնտեսական պրոբլեմները Անդրկովկասում: *Երևան, ԳԱ հրատ., 1968, 160 էջ (ռուսերեն):*

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Ա. Ա.— Հասարակության զարգացման տնտեսական պրոբլեմները, *Ընտիր աշխատություններ, Մ., «Наука» հրատ., 1968, 626 էջ:*

ԶՈՒԲՈՎ Վ. Տ.— Արտադրության մեքենայացման ու ավտոմատացման հիմունքները, *Երևան, «Լույս» հրատ., 1968, 224 էջ:*

ՄՈՒՐԱԴՅԱՆ Հ. Ս.— Կապույտ համազգեստով մարդիկ: *Երևան, «Հայաստան» հրատ., 1968, 123 էջ:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՐԴԱՐ ՀՍԿԻՉԸ

*Մետաղյա մակերեսի անհարթությունն ստուգելու համար օպտիկական սարքեր շատ կան։ Սակայն դրանք հաճախ օբյեկտիվ չեն։ Այդ թերությունից զերծ է Նովոկուզնեցկի ձեռնարկություններից մեկի ունիվերսալ նոր սարքը, որը գործում է ամենաբարձր ճշգրտությամբ։ «Հսկիչը» կարող է ստուգել մինչև —10 ×10 միլիմետրանոց մակերեսը։*

*Մասսայական արտադրության ձեռնարկություններում սարքը կարելի է օգտագործել որպես թողարկվող արտադրանքի ավտոմատ հսկիչ։*

## ԱՆԶԱՏԻ՛Ր ԱԳՐԵԳԱՏԸ

*Վտանգի դեպքում ձայնային ազդանշանի հետ միաժամանակ այսպիսի մակագրություն է հայտնվում Մորշանի քիմմաշ գործարանի ռացիոնալիզատորներ Ա. Սմիլինի ու Վ. Լոսևի էլեկտրական ագրեգատների լուսային ցուցանակի վրա։ Վտանգավորն այն է այդտեղ, որ աղեղնային զոդման դեպքում էլեկտրոդների պահպանիչները սառեցվում են ջրով։ Եթե ջրի մղումը նվազում կամ հանկարծ ընդհատվում է, ագրեգատը փաստորեն շարքից դուրս է գալիս։ Այժմ զոդող բանվորն ունի հուսալի օգնական, հենց որ նվազում է ճնշումը ջրմուղ սիստեմում, վայրկենապես տագնապի ազդանշան է երևում լուսային ցուցանակի վրա։*

## ՆՈՐ ՀԵՐԲԻՑԻԴ

*Շաքարի ճակնդեղի և կարտոֆիլի ցանքադաշտերում «Աֆալոն» նոր հերբիցիդի կիրառման դեպքում աշխատատար մեխանիկական մշակության կարիք չի զգացվում։*

*Աֆալոնը ներգործում է 4-5 ամսվա ընթացքում, ոչնչացնում բոլոր տեսակի մոլախոտերը, զգալիորեն խթանում բույսերի աճը, բարձրացնում այդ կուլտուրաների բերքատվությունը։ Նոր հերբիցիդը բնավ չի վնասում բուսականությանը (Լեհաստան)։*

## ԿԱԲԵԼԸ ՍԱՌԵՑՎՈՒՄ Է ՋՐՈՎ

*Հունգարիայում արտադրվում են էլեկտրական ուժային կաբելներ՝ ջրային սառեցուցիչով։*

*Հայտնի է, որ ինտենսիվ սառեցմամբ բարձրանում է մետաղների էլեկտրահաղորդականությունը. հաղորդալարերի ու կաբելի պատյանի միջև եղած տարածությունը լցվում է ջրով։ Որպես կանոն պատյանը շփվում է հողի հետ՝ վերջինիս փոխանցելով տաքացնող ջրի ջերմության մի մասը*

## ՆՈՐ ԱՎՏՈԱՄԲԱՐՁԻՉՆԵՐ

*Շվեդական «HiAB» ֆիրման 20 տարուց ավելի է, ինչ աշխատում է վերամբարձ մեխանիզմներ ստեղծել։ Ֆիրմայի ինժեներները կառուցել են մի շարք վերամբարձ կռունկներ, որոնք տեղակայված են բեռնատար ավտոմեքենաների վրա։*

*Այդ ավտոամբարձիչների հիմնական առավելությունն այն է, որ բեռնատարի վարորդը ինքը մենակ կարող է բեռնաթափել և բարձել՝ գործի դնելով հիդրավլիկ բեռնամբարձիչը և օժանդակ հարմարանքը։ Դրանով զգալիորեն կրճատվում են կորուստները, աշխատաժամանակը և տնտեսվում է բանվորական ուժ։*

## ԼԱՅՆԷԿՐԱՆ ՇԱՐԺԱԿԱՆ ԿԻՆՈՍԱՐՔԱՎՈՐՈՒՄ

*Նովգորոդի կինոմեխանիկական գործարանում թողարկվում է նոր շարժական լայնէկրան կինոսարքավորում՝ ГАЗ—53 ավտոմեքենայի շասսիի վրա։ Էկրանը 6 մետր է։ Ավտոմեքենայում տեղադրված են փոքր էլեկտրակայան և ծալովի նստարաններ՝ 200 հոգու համար։ Այսպիսի շարժական կինոսարքավորմամբ կինոնկար կարելի է ցուցադրել ամեն տեղ։ Ավտովարորդն ինքը կինոմեխանիկն է։*